1913 թի Մարտի 20 ին

Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆ.

# ԺՈՂՈՎԱԾՈՒ ԵՐԿԵՐԻ

## ՀԱՏՈՐ ԱՌԱՋԻՆ



(պատկերներ)

Բ- ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ



Ս.-ՊԵՏԵՐԲՈՒՐԳ
«ՊՈՒՇԿԻՆԵԱՆ ՏՊԱՐԱՆ»
1904

## „ՊՈՒՏ-ԸՄ ԿԱ՞Թ“

Աշնան սկիզբն էր, մի պարզ, լուսնկայ գիշեր: Սուրմալուի գաւառում տարուայ այդ ժամանակ գիշերները բաւական ցուրտ է լինում: Իզուր չէ գիւղացին ասում. «Աստուածածնին իջի՛ր բակը, Սուրբ Խաչն արա՛, մտի՛ր ծակը»:

Բ... գիւղում այնքան ցուրտ էր արդէն, որ դրսում քնած մի մարդ էլ չը կար: Նեղ, ծուռ ու մուռ փողոցներում երթեւեկութիւնը դադարել էր: Այս ու այն դրան մօտ, կտուրի վրա, դէզերի ծայրին գամփռները գլուխն ու մռութը ահագին թաթերի վրա դրած՝ շնթռկել, նստել էին, սպասելով կասկածաւոր ստուերի կամ ուշացած անցուորականի, որ վրա վազեն: Արթուն էին և բոստանչիները և՛ դեռ չը քաղած այգիների պահապանները, որոնք իրանց ողորմելի չարդախների վրա կուչ եկած, չռած աչքերով աշխատում էին որոշել մի հեռաւոր կասկածելի առարկայ, որ դողի

նմանութիւն ունենար: Երբեմն նրանք, իրանց ներկայութիւնը և պգաստութիւնը ցոյց տալու համար, կամ գուցէ և վախից, «հայ-հո՜ւյ» էին կանչում: Եւ ամէն անգամ, երբ դաշտից գալիս էր այդ ձայնը, գիւղի շները հաչոց ու ոռնոց էին բարձրացնում: Եւ ապա, մի կարճ միջոցից յետոյ, դարձեալ համատարած լռութիւն էր տիրում:

Կէս գիշերը մօտ էր, օդն աւելի և աւելի ցրտանում էր:

Այդ ժամին արթուն էր միայն մի բնատնից, երեք հոգուց բաղկացած: Դրանք Բ... գիւղացի չէին, այլ գաղթականներ, որոնք նոյն օրն էին հասել այդ կողմերը: Իսկապէս գաղթական անուանել էլ չէր կարելի: Գաղթական ասելով հասկանում ենք մի այնպիսի վիճակ, երբ հեռուից եկողներն ունեն գոնէ մի պարկ, մի վերմակ, մի փալաս, հագած են գոնէ մի պատառոտած վերարկու, ծակծկոտած տրեխներ: Բայց սրանք բոլորովին զուրկ էին այս ամենից: Սրանք մերկ էին, այս բառի բուն նշանակութեամբ, եթէ զգեստ չը համարենք շորերի այն ծուէնները, որոնք կախկախուած էին նրանց վտիտ մարմինների վրա, անկարող լինելով ծածկել նրանց մերկութիւնը: Դուք տեսե՞լ էք գայլի բերանից զօրով խլած գառը, առանց դմակի, հիւանդ, արիւնոտ և կիսա-

մեռ... Այսպէս էին այդ գաղթականները, գերեզմաններից դուրս քաշած դիակներ և ոչ կենդանի մարդիկ։

Նրանց բնակարանն է մի մարագ՝ ծուռ, ոլորուած պատերով, որոնցից մէկը փլել է, թողլ տալով, որ լուսնի լոյսը ներս թափանցի։ Բորբոսնած գարմանը, որ կպած է խոնաւ պատերին, մի անախորժ հոտ է տարածել. փլած պատերի կողմը գերանները քաշ են ընկել և ամէն մի րոպէ սպառնում են վայր թափուել։ Առաստաղից քաշ ընկած սարդի ոստայնները՝ գարմանի հետ խճճուած՝ մի զզուելի ծածկոցով պատել են որմերը և գերանները։ Եւ երբ խեղճերը ողորմութիւն ստացած, այս անկիւնը իրանց պատսպարան են համարում։ Գոնէ լուսինը իր պաղ արծաթի շիթերի ցնցուղներով արար աշխարհի հետ լուսաւորում է այս մարագի ներսն էլ և այնտեղ ծուարածները տեսնում են միմեանց դէմքերը...

Խոնաւ ու բորբոսնած յատակի վրա դըրդըզուած ցնցոտիների մէջ նստած է մի միջահասակ կին, գլուխը կրծքին կախած։ Դէմքի վրա միս չը կայ. ամէն ինչ—յոգնածութիւն, սարսափ, վիշտ, հիւանդութիւն նկարուած է այդտեղ։ Նրա չորացած, կիսամերկ ծնկների վրա հոգեվարքի մէջ պառկած է 4—5 տարե-

կան մի երեխայ, նոյնպէս մաշուած, նոյնպէս կիսամերկ։ Մահն արդէն կնիքը դրել է նրա վրա։ Սրանց կողքին, ձեռքերը թեւերի տակ դրած՝ ծնկների վրա ընկած է մի տղամարդ, որ ուշադիր, անթարթ աչքերով դիտում է երեխայի դէմքը, հետեւում է նրա հետզհետէ նուազող շնչառութեանը, երբեմն խոր հառաչանքի հետ տրորելով ծնկները։ Քաղցր է, իհարկէ, զաւակը ծնողների համար։ Մի օր նա կը մեծանայ, իրանց սեւ օրերի նեցուկը, պահապան հրեշտակը կը դառնայ. եւ այն ժամանակ կը մոռացուեն դառն հոգսերը, անքուն անցկացրած գիշերները։ Բայց որչափ թանկ է այն զաւակը, որի կեանքը փրկելու համար անբաղդ ծնողը ստիպուած է եղել իբրեւ մի անգին բեռ վերցնել նրան իր ուսերի վրա եւ փախչել հարիւրաւոր վերստեր, ձորեր կտրել, լեռներ բարձրանալ, ահաւոր այրերում գիշերել։ Այսպէս էր այդ փոքրիկը Բ... գիւղը հասել։

Գիշերուայ սառն հովը փլած պատի բացուածքից առատ հոսանքով փչում է դէպի այս մարագի ներսը։ Ցուրտ է, մրսում են խեղճերը։ Մայրն աշխատում է իր հագի ծուէններով ծածկել հիւանդ եւ մերկ մանուկի վտիտ մարմինը. երեւի նա էլ մրսում է, գուցէ կարելի լինի դրանով տաքացնել նրա

հետզհետէ սառչող արիւնը… Բայց իզո՜ւր. Ծուէնները իրար վրա չը հաւաքուեցին, և խեղճը յուսահատուած, ամբողջ մարմնով կռացաւ երեխայի վրա, յուսալով քամու առաջն այսպիսով փակել: Հայրը, որ մինչև այդ ժամանակ ապուշ կտրած աչքերով դիտում էր այդ բոլորը, յանկարծ ուշքի եկաւ, հանեց իր վրայից գզգզուած միակ արխալուղը և գցեց երեխայի վրայ, իսկ ինքը մնաց համարեա մերկ, որովհետև կեղտոտ շորի այն կտորը, որը որպէս թէ նրա շապիկն էր, ծածկում էր խեղճի միայն մէջքը, բաց թողնելով մազոտ կուրծքն ու թևերը: Իսկ երբ քամին շարժում էր մէջքի այդ շորը, այն ժամանակ թշուառը ամբողջապէս մերկանում էր: Անսահման վիշտը բթացրել էր մրսելու զգացողութիւնը:

Լուռ էին.

— Մարէ՜, պուտ-ըմ կա՜թ, յանկարծ կոչեց երեխան, լայն բանալով աչքերը, որո՛նք կրկին փակուեցին:

Մարդ ու կին իրար երես նայեցին ակամայ և երկուսի աչքերն էլ լցուեցին արտասուքով:

— Եաման մա՜րդ,—ասաց կինը,—էլի էսա տան դուռ զարկ, խայ քրիստոնեայ են, պուտըմ կաթ ուզի՛ր, ասա խիւրնատի խըմար ի, մի՛ թորգ իմ ճիժ թամարզու մեռնի:

— Վա՜խ, վա՜խ կնիկ, ես ինչ էնիմ, ես դոր էրթամ, կէս գիշեր ի, ըմմէն քնուկ են, ընծի վո՞վ դուռ կը բանայ։

Կրկին տիրեց լռութիւն, միայն ճպուռը պատի ճեղքից ծղրտացնում էր, և մուկը մի ինչ որ խոռոչում կրծում էր իր պաշարը մի անախորժ խռռոց հանելով. իսկ մրսեցնող քամին փչում էր ու փչում, թեթև սլլոց առաջացնելով առաստաղից կախկախուած եղէգների և սարդի ոստայնների մէջ։

— Պուտ-ըմ կա՜թ, նորից կանչեց երեխան, կրկին բաց արեց աչքերը, մի վայրկեան յառեց մօր երեսին և էլի փակեց։

Մի անգամ էլ մարդ ու կին արտասուալից աչքերով միմեանց նայեցին։ Մարդն այս անգամ ոչինչ չասաց, չորացած ձեռքերով սրբեց այտերի վրա կախուած արտասուքի երկու խոշոր կաթիլները, «վա՜խ, վա՜խ» կանչեց, վեր կացաւ տեղից, վերցրեց պատի մօտ դրած իր մահակը, իր միակ զէնքը, վերցրեց և այն խեցատը, որ ծառայում էր նրանց իբրև ջուր խմելու աման։ Այդպէս նա դուրս թռաւ մարագի փլած պատից։ Նա գլխաբաց էր։

Ո՞ւր գնալ։ Լուսինը իր պաղ ճառագայթներով ողողել էր ամբողջ գիւղը։ Բայց կա՞յ մէկը, որ նրան հասկանայ։ Մի բոպէ նա մօ-

ռացաւ թէ ինչու է այդտեղ կանգնած։ Վերացաւ այս աշխարհից, տարուեց այնտեղ, ուր նրա տունն էր, նրա արտերը։ Տեսաւ նա իր պստիկ Մարտօին, կարմրաթուշ Նազօին… Դրանց դիակները մնացին այնտեղ…

— Պուտ-ըմ կա՜թ, կրկին հնչուեց նրա ականջին։

Նա ցնցուեց. պէտք էր կաթ ճարել։ Նա շարժուեց դէպի առաջին տունը, ուր ապրում էր մի պառաւ այրի կին։ Նա կանգ առաւ դռան մօտ, մտածում էր՝ արդեօք խփի՞, թէ ոչ։ Իսկ եթէ դուրս գան, հայհոյանքներով ճանապարհ դնե՞ն իրան… Չէ՞ որ նա մի տկլոր ղարիբ է։

— Պուտ-ըմ կա՜թ…

Այս ձայնը նրա ականջի մէջ է։ Դա նրա երեխայի օրհասական վերջին ցանկութիւնն է։ Նա մոռացաւ երկիւղ, ամօթ։ Մահակը նրա ձեռքում բարձրացաւ և մի ահագին հարուածով իջաւ դրան վրա։ Դուռը ահաւոր գզրդոց հանեց, և շների ընդհանուր հաչոց բարձրացաւ։ Դարձեալ հարուած, կրկին ճռընչոց։ Վերջապէս բակում յայտնուեց պառաւը։

— Ո՞վ է, ձայն տուեց նա։

— Ես եմ, մա՛րէ, — պատասխան եղաւ դրսից. — խաչ քրիստոնեայ եմ, գաղթական.. դուռը բա՜ց։

Պառաւը բաց արեց դուռը, և տեսնելով գլխաբաց ու մերկ մարդուն առաջը կանգնած, սարսափեց ու զարհուրելի ճիչ արձակելով, փախաւ տուն, դուռը չետևից փակելով։

Նոր միայն խեղճ մարդը նկատեց իր մերկութիւնը, իր սարսափելի տեսքը։ Նրա մարմնով մի սարսուռ անցաւ, մի՞թէ այժմ ցուրտն ազդեց։ Մի կարճ ժամանակ նա մնաց քարացած կանգնած, բայց յանկարծ ուշքի եկաւ, և վախենալով՝ որ մի գուցէ աղմուկի վրա մարդիկ հաւաքուեն և իրան գողի տեղ ընդունեն, նա սկսեց փախչել դէպի մի ուրիշ կողմ։ Սոսկալի էր նրա դրութիւնը։ Քամին ծածանում էր նրա թիկունքի վրա ընկած շորի կտորը և դիզացած մազերը. չորս կողմից վրա յարձակուեցին շները և շրջապատեցին նրան։ Նա հազիւ էր կարողանում մահակով պաշտպանել իր մերկ մարմինը կատաղի գազաններից։ Մէջքը դէմ տալով մի պատի, նա կանգ առաւ և շարունակելով պաշտպանուել շներից, առանց այլ ևս երկար մտածելու ծեծեց մի դուռ։ Մի տղամարդ դուրս եկաւ, բաց արեց դուռը։

— Եաման ախպէր, քեզի մեռնիմ, խաչ քրիստոնեայ եմ, էն երկրի մարդ եմ, էրէխայ մը ունիմ, հոգեվարքի մէջ է, պուտ-մը կաթ կուզի. մէկ ճար արա քո էրէխու սաղլղէն,

Աժո՜ւ սիրուն... Խէրու էսօր իրեք խարէր օչխար Թասլիմ էրի իմ չօբընին, մըկայ իմ ճիժ պուտ-ըմ կաթ ուզելով կը մեռնի։

Աղաչանքը սրտաշարժ էր, տեսարանը յուզիչ։ Գիւղացին բերեց կաթը, ածեց նրա խեցատի մէջ և ճանապարհ դրեց։

Նա շտապեց դէպի մարագը, աչքի լոյսի պէս տանելով այն չնչին հեղուկը, որ այնքան դժուարութեամբ էր ձեռք բերել։ Նա առաջ էր սլանում, գործ դնելով իր թուլացած ոտների վերջին ույժը։ Բայց դեռ տեղ չէր հասել, երբ մի սրտամորմոք ձայն լսեց գիշերային լռութեան մէջ.

— Եամա՜ն լաօ, եամա՜ն լաօ...

Նա ցնցուեց ամբողջ մարմնով։ Այլ ևս կասկած չը կար, որ թշուառութիւնը սարսափելի հարուածը իջեցրել էր... Նա աւելի արագացրեց իր քայլերը, և ահա մարագի դրանն է...

— Եամա՜ն լաօ, եամա՜ն լաօ, գոչում էր կինը՝ մազերը փետելով։

Նրա գրկում պառկած էր յաւիտենական խաղաղ քնով այն փոքրիկ արարածը, որ այնքան քիչ ապրեց այս անիրաւ աշխարհում, բայց այնքան շատ տեսաւ, շատ կրեց, շատ տանջուեց։

Թշուառ հայրը կանգ առաւ մարագի դրանը, անհուն վշտով նայեց չարաբախտ կնոջը

և մեռած երեխային։ Ձեռքը դողաց, խեցատը վայր ընկաւ ձեռքից և սպիտակ հեղուկը թափուեց խոնաւ, բորբոսնած յատակի վրա։ Նա դէն շպրտեց իր մահակը, ընկաւ անշնչացած դիակի վրա և մի այնպիսի աղաղակ արձակեց, որից ամենասրտոտ մարդն անգամ կը դողար։ Կուտակուած զայրոյթի և յուսահատութեան պոռթկումն էր դա, որ որոտագին դուրս թռաւ վշտերով լի կրծքից։

Իսկ լուսինը շարունակում էր պայծառ փայլել և լուսաւորել թշուառութեան այդ զաւակներին։

Է՜հ, ինչե՞ր չի լուսաւորել նա…

1896 թ.

---

## „ՖԱԼԱԳ ՎՈՒՐՂՈՒՆԻ" *)

Գեղեցիկ է Բարթողեան լեռնաշղթան։ Ալէ-զարդ Մասիսի փէշերից կախուած են այդ լեռները, որպէս անհոգ, ծիծաղկոտ մանուկ-ների մի ահագին խումբ, որոնք բռնել են ի-րանց պառաւ ու հսկայ մօր փէշերից, պատ-րաստուելով մի մանկական զուարճալի պար սարքել. բայց ծերունի մօր սառն անտարբե-րութիւնը, մռայլ ու ահաւոր տեսքը կարծես բևեռել է նրանց իրանց տեղերում և խեղճե-րը կտրուած, ընկճուած նրա սառցային հայեացքի ճնշող ուժի տակ, քարացել են մնացել իրանց մի անգամ բռնած դիրքի մէջ, մէկը միւսի պոչից բռնած, մէկը միւսի ուսին կռթնած, թևերին բարձրացած, սպասելով դաժան մօր բարեհաճ, քաջալերող ժպտին, որ մէկէն ի մէկ շարժուեն, ցատկեն և պար

*) «Ֆալագ վուրղունի» նշանակում է բախտի դառն հա-րուածին ենթարկուած մարդ։

գան։ Բայց անցնում են տարիներ և դարեր, նրանք մնում են մի և նոյն դիրքի մէջ, իսկ մայրը, ալեզարդ գլուխն ու ճակատը դէմ տուած երկնքի շանթ ու կայծակներին, շա-րունակում է պահպանել խորհրդաւոր լռու-թիւն։ Ե՞րբ պէտք է ժպտայ...

Ձմեռը, երբ Մասիսը իր մարմնի բիւրաւոր խոցերն և ու.ռոյցքները ծածկում է ձիւնի սպիտակ սաւանով, Բարթողեան լեռների ա-լիքաւոր և գեղանկար բարձրութիւնները, հետեւելով իրանց զառամեալ մօրը, նոյնպէս ծածկւում են ձիւնի հաստ շերտով։ Բարդ-բարդ իրար վրա անկանոն ձեւով դիզուած ճերմակ ամպերի մի շարք են ներկայացնում նրանք, կամ յոգնած ուղտերի մի ահագին կարաւան, որ երկար ճանապարհից յետոյ հանգիստ է առնում։ Բազմաթիւ կիրճեր և արահետներ կան այդ շղթայի զանազան տե-ղերում, որոնցով տարուայ միւս ժամանակնե-րում երթեւեկում են մենաւոր ճանապարհորդ-ները, բազմաթիւ աւազակներ և մաքսանենգ մարդիկ։ Բայց ձիւնի հաստ ծածկոցը լցնում է այդ բոլոր կիրճերն ու շաւիղները և կազ-մում է մի դաւաճան, կորստաբեր հարթու-թիւն, որ ամէն րոպէ իր տակ կարող է բա-նալ ահաւոր անդունդներ, անսպասելի խոռոչ-ներ, և կուլ տալ այն յանդուգն ճանապար-

հոգին, որ սիրտ է արել մէն մենակ ձմեռ ժամանակ կտրել, անցնել այս լեռնաշղթան։

Սոսկալի է ձմեռն այդ լեռներում։ Քանի՜ քանի թշուառներ են իրանց գլուխը մատաղ տուել նրա մթին խորխորատներում, քանիսին բուքն է խեղդել կամ ցրտատար արել, քանիսն են խորասուզուել ձիւնապատ վիհերի մէջ և իրանց սառը գերեզմանը գտել ձիւների կոյտերի տակ։ Իսկ աւազակների գնդակներով տապալուածնե՞րը։ Ահա թէ ինչու՝ տարուայ այդ ժամանակում ոչ ոք սիրտ չի անում երեւալ այդ չաժան վայրերում, ոչ ոք չի կամենում կեանքը վտանգի ենթարկել, անցնել այդ շղթան։ Ոչ մի կենդանի շունչ չի խանգարում այդ զարհուրելի տեղերի սպանիչ խաղաղութիւնը, բացի սոված, թափառական գայլերից, որոնք իրանց ոռնոցը խառնում են բքաբեր քամիների վշվշոցին։

Ահա Սինակայ սարերը. գագաթից մինչև փէշերը նրանք ծածկուած են ձիւնի հաստ շերտով։ Սինակա՜յ սարեր... Բարթողեան լեռնաշղթայի մէջ ամառ ժամանակ գեղահրաշ դրախտ են ներկայացնում սրանք իրանց հարուստ բուսականութեամբ և հազարաւոր կաթնահամ աղբիւրներով, որոնք կազմում են սքանչելի վտակներ ծաղկաւէտ հովիտներում։ Իսկ այժմ... ձմեռնամուտի արեգակը մոտ է

մայր մտնելու և նրա վերջին ճառագայթները երկչոտ, անվստահ կերպով զարկուելով ճերմակ ձիւնի սառոյց կորած մակերևոյթին՝ բեկբեկւում և ակնախտիղ փայլ են արձակում. խղճուկ, մեռելային փայլ. մեռնող բնութեան տխուր ժպի՞տն է սա... Երեկոյեան քամին խաղում է ձիւների հետ և կամաց-կամաց ցուրտը սաստկանում է։

Այդ իսկ րոպէին լերան կատարին ձիւնի սպիտակութեան վրա յայտնւում են մի քանի շարժուն, սև ստուերներ։ Սոված գայլերի մի վոհմա՞կ է դա արդեօք, որ ցած է գալիս դէպի դաշտի գիւղերը գիշերային յարձակումով կատաղի քաղցը յագեցնելու համար։ Ստուերները, թէև խիստ դանդաղ, բայց ցածանում են անդադար։ Ահա նրանք արդէն լերան կրծքին են և զարմա՜նք. դրանք ոչ թէ գազաններ, այլ մարդիկ են, մի խղճալի, մի թշուառ ընտանիք։ Ո՞վ կարող էր երևակայել անգամ, որ այսպիսի ժամանակ, այն էլ օրուայ այս պահուն, որ և է մարդ սիրտ կանի երևալ այդ լեռներում։

Առջևից գնում է մի նորատի կին, բռնած տաս տարեկան մանուկի ձեռքը, իսկ դրանց յետևից դանդաղ ու վախկոտ քայլերով իջնում է մի տղամարդ, հիւանդ, վիրաւոր։ Բարբարոս թշնամու գնդակը ջախջախել է

նրա աջ ուսը, և այդ պատճառով աջ ձեռքը կողքից անշարժ կախուած է մնացել, մինչդեռ ձախ ձեռքով անդադար աշխատում է փակել արեան հոսանքը։ Բայց իզո՜ւր... լերան կատարից մինչև վիրաւորը սպիտակ փայլուն ձիւնի վրա ձգւում է մի կարմրագոյն ժապաւէն, որ արեան կաթիլներից է կազմուած։ Վիրաւորի թշուառ կեանքի մնացորդն է սա, որ կաթիլ կաթիլ քամւում է Սինակայ սարերի մէջ, բայց չը նայելով դրան, նա գերմարդկային ճիգեր գործ դնելով իր վրա, յուսահատ քայլում է։

Արեգակն արդէն մայր մտաւ. Նրա վերջին ճառագայթներն էլ քաշուեցին լեռների ձիւնապատ գագաթներից։ Վերջալոյսի փայլն էլ հետզհետէ պակասեց և վերջապէս, երեկոյեան մռայլը, որպէս մի համատարած քօղ, եկաւ պարուրելու լեռներն ու ձորերը, ու մի դժոխային վիճակ ստեղծեց այս թշուառ ճանապարհորդների համար։ Քամին սաստկացաւ. ցուրտն անտանելի է, իսկ խեղճերը մերկ են, շա՜տ մերկ, քանի՜ անգամ թալանուեցին։ Նրանց ոտները վաղուց են դադարել ցուրտ զգալուց. ոտներ չեն դրանք, այլ մի զոյգ փայտեր, որոնք թոյլ կերպով դիմահար տալով՝ քաշում են իրանց խղճուկ բեռները։ Եւ այդպէս շարունակում են իջնել։ Լուռ են. միայն

ձիւնն է անդադար սարսռեցնող ճռճռոց հանում նրանց ուժասպառ ոտների տակ։

Եւ դեռ ինչե՜ր են քաշել նրանք մինչև այստեղ հասնելը։ Ահա թշուառ վիրաւորի ոտները յանկարծ թաղուեցին ձիւնապատ խոռոչի մէջ և նա երեսի վրա վայր ընկաւ՝ մի սոսկալի հառաչ արձակելով իր վէրքի ցաւից։ Ձիւնի մէջ թաղուած, նա անզօր ճիգեր է գործ դնում ոտքի կանգնելու, թրպրտում է, որպէս վիրաւոր թռչուն, մինչև որ խեղճ կինը յետ է դառնում, բարձրացնում է նրան, և կրկին քայլում են...

Երկինքը հետզհետէ ծածկւում է թուխպերով. խաւարը տիրում է ամեն կողմ։ Ահա կինը կանգ առաւ, մէկ վերև նայեց երկնքին, ուր ամպերի ճեղքերից երևում էին մի քանի աստղեր, նայեց իր շուրջը տիրող խաւարին, նայեց դէպի լեռան ստորոտը և մի ծանր ախ քաշեց... Նա գիշերելու տեղ էր փնտրում։ Անհնարին էր այդպէս հասնել մարդկային բնակութեան։ Բայց ո՞ւր գիշերել...

— Կարապետ, ի՞նչ էնենք,—դարձաւ նա դէպի իր ամուսինը մի խղճալի, յուսահատ ձայնով,—մութն ընկաւ, կը վախենամ բուք էլ էղնի, էսա ճիժ չը գինայ քէլել, ես լէ չեմ գինա էսօր շլկել, ծնկներս կը ծռին։

Ամուսնու պատասխանն եղաւ մի վշտալից և երկար «ա՜խ»։ Իսկ քամին շարունակում էր սաստկանալ, ամպերը կուտակւում էին։ Բոլոր նշաններից երևում էր, որ բնութիւնը մի արտասովոր բան է պատրաստում, մի այնպիսի բան, որը ամեն մի կենդանի արարած բնազդումով նախազգում է, սարսափում և շտապում է թագնուել ուր և լինի։

— Կարապետ, ապա ի՞մալ կեղնի, կրկնեց կինն իր հարցը։

Անյոյս, սարսափելի վիճակը նրա աչքերի վաղուց ցամաքած աղբիւրակներից մի քանի կաթիլ արտասուք քամեց, որոնք կախուեցին արտևանունքներից և իսկոյն սառցային փոքրիկ գնդակներ դառան։ Խե՜ղճ... Նա գիտէր որ իր վիրաւոր ամուսինը ուժասպառ է և անզօր, բայց դարձեալ կոչումն էր անում դէպի տղամարդի խելքն ու կարողութիւնը։

— Իմա՞լ կեղնի, կնի՜կ, — կոչեց նուաղած ձայնով թշուառ ամուսինը, — աղաչենք Աստծուն, որ էսա տեղ մեր խօքին առնի, մէ խետ փրթինք... Ես ի՞նչ էնիմ, ո՞ր ջուրն ընկնիմ, ես լէ չիմ գինա քելել, չեմ տայ ի՞նչ տի էնենք։ Եամա՜ն Աստուած, մէկ ճա՜ր։ Վերջին խօսքին նա աչքերն ուղղեց դէպի երկինք։

Բայց երկինքն անողոք էր. նրա վրա մի ժպտուն կտոր չէր մնացել։ Ահարկու ամպերը կամաց-կամաց ժողովուեցին և ծածկեցին ամբողջ երկնակամարը։ Հսկայ Մասիսի թիկունքից լուսինը ամօթխած հարսի պէս ցոյց տուեց իր դէմքը, փորձեց իր պաղ, կաթնային ճառագայթներով լուսաւորել ձիւնապատ լեռների կատարները, բայց իզուր. նրա լոյսի պաղ ցնցուղները կորան, անհետացան մթին ամպերի անհուն խաւարի մէջ և նա մի անթափանցիկ շղարշով շտապեց քողարկել իր փայլուն դէմքը։ Իսկ քամին փչում է այնպիսի կատաղութեամբ, կասես ուխտել է այս հսկայ լեռները փուլ բերել, և գետնին հաւասարեցնել։ Լուսինը մէկ էլ փորձեց իր ճառագայթները թափել ահաւոր վայրերի և թշուառ ճանապարհորդների վրա. ահա նա յետ քաշեց իր երեսի քօղը, մի տխուր մեռելային լոյս սփռեց ահաբեկուած բնութեան և մոլորուած թշուառների վրա, կրկին թաքնուեց չարաճճի մանկան պէս, դարձեալ նայեց ամպերի պատառուածքից և ապա խիպառ ծածկուեց՝ համատարած խաւարի, փոթորկալից ամպերի, ցրտաշունչ հողմերի իշխանութեանը յանձնելով զարհուրած բնութիւնը և նրա հետ միասին այն դժբախտ արարածներին, որոնց ճակատագրին հաճելի

է եղել այս ահաւոր ժամին մէն մենակ ձգել այս անծանօթ լեռների մէջ իրանց անհուն վշտի, անսահման թշուառութեան հետ։ Սկսուեց Բարթողեան լեռների զարհուրելի բուքը։ Երեք հոգիներն արդէն մի ձորակի մէջ են. այլ և ոչ մի հնար չը կայ շարժուելու, նրանք հեշտութեամբ կարող են կորցնել իրար. ճանապարհը չը գիտեն։ Երեքն էլ բըռնում են միմեանց ձեռքից, փորձում են դարձեալ մի քանի քայլ անել, բայց երեխան քաշ է ընկնում.

— Մարէ՛, ոտներս փետցան, եաման, չեմ գինայ քէլել, մարէ — մրմնջում է երեխան, կծկուելով մօր կողքին։

Կանգ են առել, վիրաւորը նոյնպէս անկարող է առաջ գնալ։ Նա երերում է, աչք է ածում ձորակի շուրջը, մինչդեռ կատաղի քամին շաչում է, ոռնում, ձիւնի հսկայական պտոյտներ է կազմում երկնքում։ Այսպիսի դէպքերում ճանապարհորդները սովորաբար տեղն ու տեղը նստում են, թաղւում են ձիւնի տակ՝ կամ ապրելու, կամ մեռնելու համար։ Այդպէս վճռեցին անել և այս ճանապարհորդները, երբ յանկարծ նրանց աչքովն ընկաւ մի հսկայ ժայռ, որ ձիւների ընդհանուր մակերևոյթից դուրս ցցուած էր մնացել։ Յոյսի մի նշոյլ ծագեց խեղճերի սրտում.

ով գիտէ, գուցէ հնարաւոր լինի նրա տակը մի խոռոչում կծկուել մինչև լոյս։ Երեքն էլ միաժամանակ վերջին ճիգերն են հաւաքում, իրար քաշքշելով դիմում են դէպի այդ ժայռը։ Ահա նրանք վերջապէս իրանց ցանկացած տեղումն են, զգուշութեամբ անցնում են ժայռի յետևը, քամու հակառակ կողմը, և անսպասելի կերպով կանգ են առնում մի այրի բացուածքի առաջ։ Ո՞վ կը սպասէր. սա արդէն մի երկնային պարգև, մի փրկութիւն էր։ Առանց մտածելու, առանց տատանուելու երեքն էլ մտնում են այդ այրը և ուժասպառ վայր են ընկնում հէնց այրի բացուածքի առաջ։

Խաւար է այրի ներսը, խաւա՜ր, որպէս այնտեղ ապաստան գտած թշուառների սև սրտերը։ Ամէն մի ձայն, ոտքի մի թեթև շարժում սարսեցուցիչ արձագանք է հանում այրի խորքերում և հազար ու մի այլանդակ ձայներով կրկնւում է, ասես այնտեղ, ներսերում, դևերը ճիւաղային քրքիջ են բարձրացնում թշուառութիւնը ծաղրելով։ Ապաստանուածները կծկւում են իրար մօտ. երիտասարդ վիրաւորը պառկում է ուժասպառ, երեխան կպչում է մօրը։ Տիրում է մի ահաւոր լռութիւն, որ էլ աւելի սոսկալի է դառնում ճնշող խաւարի մէջ և որ երբեմն-երբեմն մի-

այն վրդովւում է վիրաւորի ցաւալի հառաչանքներով և ցրտահար մանկան մրմունջներով: Իսկ դրսում կատաղի քամին ոռնալով զարկւում է այրի ժայռին և այնտեղից երբեմն-երբեմն ձիւնի մանր փոշին շփում է, ներս է ածում խեղճերի վրա:

Քամու ահաւոր ձայների մէջ մանաւանդ մի տխուր, նուաղած, սրտամորմոք հնչիւն առանձնապէս սոսկում է պատճառում կնոջը: Ա՜խ, այդ ձայնը, այդ ձայնը... Արդեօք երբ և իցէ նրա ականջում կը լռի՞ այդ սպանիչ նվվոցը: Ինչե՞ր չէր տայ նա՝ այդ ձայնը չը լսելու համար... Այդպէս էր տնքում նրա փոքրիկ Սաթօն, հինգ տարեկան երեխան, երբ անօրէնները նրան հորի մէջ գլորեցին և հողով ծածկեցին: Օ՜, մի ամբողջ օր այդ ձայնը հնչւում էր գետնի տակից: Ա՜խ ինչեր էր անում զարհուրած երեխան, երբ նրան խլելով մօր գրկից, քաշ տուին դէպի հորը. քարերն անգամ կարտասուէին նրա ճչից, բայց նրանք անողոք մնացին: Իզո՜ւր խեղճ մայրը վազում էր դէպի հորը, իզո՜ւր դահիճների ոտներն էր համբուրում, նրա հոգու հատորը հողի տակ փչեց իր վերջին շունչը, իսկ նրա ձայնը դեռ լսում է լսում է...

Ցուրտ է, շա՜տ ցուրտ: Դողում են խեղճերը. կամաց-կամաց նուաղում են վիրաւորի

հառաչանքները և մանուկի մրմունջները. Մենակ կինն է հսկում սրանց վրա, պահպանում է, որպես իր աչքի լոյսը: Նա ականջ է դնում նրանց ձայներին, ամեն մի հևքին շնչառութեանը, հառաչանքներին: Արդեն կես գիշերը վաղուց անցել է, դրսի բուքը հրեշաւոր չափեր է ընդունել. վիրաւորն ու երեխան վերջապես խսպառ լռում են: «Երևի քնեցին», մտածում է կինը և աշխատում է աւելի մօտ կպչել իր զաւակին, որ գոնէ իր մարմնով տաքացնի նրա սառած մարմինը: Յանկարծ նա յիշում է, որ քնած մարդը հեշտութեամբ է ցրտահար լինում: Այս միտքը նրան սարսափեցնում է, և նա վճռում է քնածներին զարթեցնել, կամացուկ հրում է վիրաւոր ամուսնուն, որ զարթնի: Բայց նա միայն ցնցւում է և հազիւ լսելի ձայնով տնքում է ու լռում: Երեխային է ցնցում, նա էլ անշարժ, անձայն է: Տէր Աստուա՛ծ, ի՞նչ պէտք է անել: Ճարը կտրած՝ նա մթութեան մէջ խարխափելով գտնում է երեխայի ձեռները. ա՜խ, ի՜նչ սառն են: Նա մօտեցնում է իր բերանին և աշխատում է իր շնչով տաքացնել մանուկի սառած անդամները. փչում է ու փչում, բայց ինքն էլ ուժ չունի, ինքն էլ մօտ է սառչելու, և երեխայի ձեռները մնում են առաջուայ պէս սառած, փետացած: Ամուսնու

ձեռքն է դանում, նա էլ է սառած։ Ապա իր ամբողջ մարմնով կռանում է Թանգագին մարմինների վրա՝ մէջքը դէմ տալով քամու հոսանքին... Խե՜ղճ, նա աշխատում է ինչպէս լինի, փրկել սրանց և այդ հոգսի մէջ նա չի էլ զգում անտանելի ցուրտը, չի էլ լսում քամու կատաղի ոռնոցը, բացի այն ողորմելի, այն սրտաճմլիկ հնչիւնից, որ այնպէս նման է իր Սաթօի մահամերձ նվվոցին։

Նա էլ աւելի մօտ է կծկւում պառկած մարմիններին, մօ՜տ, աւելի մօտ։ Տէր Աստուած, ի՞նչ սառն են սրանք... Ի՞նչպէս պաղել են սրանց մարմինները... Խաւարի մէջ, առանց ոչինչ տեսնելու, նա շօշափում է նրանց կուրծքը, մէջքը, դէմքը. ամէն տեղ մեռելային սառնութիւն... Յանկարծ նրա մաքում ծնում է մի սոսկալի կասկած, չարագուշակ նախազգացումը տիրում է նրա սիրտին։—«Մի՞ գուցէ իր զոյգ սիրելիները ցրտահար եղած, մեռած լինեն. չէ՞ որ խեղճ Կարօն ամբողջ ճանապարհին արիւնաքամ եղաւ, իսկ փոքրիկ Գրգօն արդէն լերան վրա սառչելու մօտ էր»։ Այդ միտքը յամառ կերպով նստում է նրա գլխում և սարսափը պաշարում է նրան։ Խեղճին թւում է, որ այդ ժամին ինքը ողջ աշխարհից մերժուած, դատապարտուած է և բանտարկուած այս մե-

նաւոր, խաւար, զարհուրելի այրի մէջ։ Նախապաշարմունքները նրա զարհուրած երևակայութիւնը լցնում են հրէշաւոր պատկերներով. դրսում ոռնացող քամին ինչ որ սոսկալի բաներ է պատմում, ինչ որ սպառնալիքներ է կարդում նրան, որից նրա մազերը դիզանում են գլխին, իսկ ներսում, այրի խաւար խորքերից բիւրաւոր դևերի շարժման և սպառնալից փսփսոցի ձայնն է գալիս. ահա նրանք շարժւում են, դիմում են դէպի նրան... Ահա նրանց առաջնորդներն արդէն երևացին մէկ, երկու, երեք... քանի՞սն են... դժուար է նոյն իսկ համարել...

Զարհուրած կինը փակում է աչքերը, բայց իզուր. նրանք դարձեալ նրա աչքի առաջն են. ահա վերջապէս շրջապատեցին նրան և ճիւաղային պար սկսուեց զարհուրելի ծամածռութիւններով։ Ամէնքի գլուխն էլ փաթաթուած է զանազան արիւնոտ լաթերով, ամէնքն էլ կարմիր, արիւնազանգ լեզուները քաշ են ձգել մինչև գետին՝ յոգնած շների պէս, ամէնքն էլ կեռ, փայլուն սրեր ունեն ձեռներին, որ գործ են ածում փայտէ ձիու տեղ։ Ահա դևերի շրջանը կամաց-կամաց նեղանում է, նրանց այլանդակ ոտների ահռելի դոփիւնը աւելի և աւելի մօտ է լսւում, ճիւաղային պարը սղմում է նրան... Ցան-

կարծ ամենքը միասին կեռ թրերը բարձրացրին… Տէ՛ր Աստուած, քանի՜սն են… Նա ճանաչում է սրանց. օ, նա յիշում է շատերին, այդ դէմքերին նա շատ յաճախ է տեսել… Այո՛, այո՛, սա էր, որ Սաթօին գլորեց հորը. ո՜խ, անօրէ՛ն, էլ ի՞նչ ես ուզում… Գրգօիս էլ… չե՛մ տայ… չե՛մ տայ… չե՜մ տայ, ինձ սպանեցէք…

Այսպէս ճչաց խեղճ կինը զարհուրած ձայնով և իր ձայնից ուշքի եկաւ։ Կօշմարը թողեց նրան. «Յիսո՛ւս Քրիստոս, Յիսո՛ւս Քրիստոս», կրկնեց նա իր շուրջը նայելով և երեսը խաչակնքելով։ Այրն այս անգամ նրան աւելի խաւար էր թւում, իր սիրելիները շարունակում էին լուռ մնալ։ Նա կրկին կռացաւ պառկածների վրա, կրկին հրեց նրանց սառը մարմինները, շօշափեց, քաշքշեց։

— Կարօ՛, Կարօ՛, գոչեց նա։

Բայց վիրաւորը նոյն իսկ չը տնքաց։ Թշուառ կնոջ կասկածն էլ աւելի զօրացաւ։

— Կարօ՛, գոռաց նա յուսահատ, լալագին ձայնով. Գրգօ՛, բալա, կը մսիս, մի՜ քնի, դարձաւ նա դէպի զաւակը։

Բայց երկուսն էլ լուռ են, երկուսն էլ անձայն… Խե՜ղճ, անբաղդ կին… խաւարի մէջ նա չի կարողանում տեսնել, որ նրանք քնեցին յաւիտենական քնով, որ երկինքը այս անգամ

գոնէ խղճայ նրանց վրա և մահով վերջ դրեց անտանելի ցաւերին։ Բայց այն, ինչ չը կարողացաւ տեսնել նրա աչքերը, զգաց մոր այն անհանգիստ, թրթռուն կորը, որ սիրտ անունն է կրում։

— Եաման Աստուած, էս ի՞նչ հող տուիր գլխիս, գոչեց նա, անզօր լինելով նոյն իսկ մի կաթիլ անգամ արցունք թափել։

Այրի մէջ մենակ լինելու գիտակցութիւնը կրկին սարսափով պատեց նրան. խաւար և դիւարնակ այր, երկու անշնչացած դիակներ, դրսում կատաղի, բքաշունչ քամի։ Ո՞ւր գնալ, ո՞ւր փախչել, ո՞ւր ապաստան, պաշտպան գտնել։ Բարայրն այլ ևս չէր կարող պարփակել վշտի այդ ծովը, նա այնքան մեծ էր, որ պէտք էր ամբողջ բնութեանը յանձնել, պէտք էր բաժանել այս գոռացող քամու, այդ ահարկու ամպերի, այս անհուն երկնակամարի հետ, որ կրելու հնարաւորութիւն լինէր։

Այրի կամարները խեղդում էին նրան և զարհուրած կինը այնտեղ թողնելով զոյգ սիրելիների մարմինները, դուրս թռաւ, որպէս մի սարսափած ու կատաղի փոթորիկ, չը գիտենալով դէպի ո՞ւր ուղղել իր մոլոր քայլերը։ Մի քանի րոպէ նա կանգ առաւ այդ ահեղ փոթորկի առաջ, նայեց երկնքին, ուր ոչինչ չէր երևում. նայեց իր շուրջը... Օգնութի՞ւն

էր հայցում, բայց ումի՞ց... Ապա ականջ դրեց այրի ներսը, երևի յույս ունէր լսել այնտեղից իր սիրելիների հառաչանքները, բայց փոխարէնը նրա սարսափած լսողութեանը հասան ծանօթ զարհուրելի ձայները և նա վազեց ձորի միջով հեռո՜ւ և հեռո՜ւ, ինքն էլ չիմանալով դէպի ու՛ր, միայն որչափ կարելի է հեռու այդ սոսկալի այրից:

Երկար գնաց նա. քամին ցրիւ է բերում նրա թիկունքի վրա ձիւնապատ ծամերը և բարձրացնում, դիզացնում գլխի վրա. երբեմն նա ընկնում է, գլորւում է ձիւնի կոյտերի մէջ և երբ բարձրանում է, նմանում է մի ձնագնդի, և կրկին փախչում է: Արդէն շատ հեռու է այրից—նա կանգ առաւ վերջապէս, մէկ էլ նայեց իր շուրջը: Արշալոյսը բացւելու մօտ էր. արևելքը շառագունում էր, փոթորիկը դադարում էր. նա այժմ յետ դարձաւ և դիմեց դէպի նոյն այրը: Հասաւ և ներս ընկաւ: Այրի դրան առաջ, ձիւնի փոշիով պատած՝ յաւիտենական քնով քնել էին հայրը և զաւակը գլուխ գլխի տուած: Վերքից թափուած արիւնը լճացել էր և սառել վիրաւորի կողքին: Նրա դէմքը գունատ էր և կրում էր իր վրա տանջանքների կնիք, իսկ մանուկը կամաց-կամաց սառչելով, կարծես խաղաղ քնում էր:

Թշուառ կինը ընկաւ զոյգ դիակների վրա և երկուսին էլ միանգամից գրկեց։ Մի առ ժամանակ նա այսպէս լուռ մնաց, գլուխը ծածկելով սիրելիների կրծքերի մէջ և համբոյրներ դրոշմելով նրանց սառած շրթունքներին։ Ապա երկու չորացած, կապտած ձեռները բարձրացրեց և ծանր հառուած իջեցնելով գլխին գոչեց։

— Խարիր խազար դարդ ունիմ, դուն լէ մի՛ խնայի, զա՛րկ, փալագ *)։

Այլ ևս արցունք չունէր նա, այլ միայն կրկնում էր «զարկ փալագ» և հարուածում գլխին։

Բայց այդ աղաղակները միայն տխուր և անհաւելի արձագանքով կրկնւում էին այրի խորքերում։ Նա նորից ցնցեց դիակները, շարժեց և գոռաց՝ «Կարօ՛, Կարօ՛, Գրգօ՛»։

Վերջապէս նա վերկացաւ, կանգնեց դիակների առաջ, ձեռքերը տարածեց, երկինք նայեց և գոռաց.

— Տէ՛ր, ես էլ զոր էրթամ, փալագ, ինչի ընձի լէ չես սպաներ էսոնց խետ.

Նորից նայեց, նայեց դիակներին շա՜տ երկար, անթարթ աչքերով, և յանկարծ մի անբնական ճիչ արձակեց։ Նա ծիծաղում էր քաամնելի, սպանիչ ծիծաղով։ Որքա՜ն զարհու-

*) Բաղդ։

րելի էին այդ ծիծաղի հետ նրա այլանդակուած դէմքի ջղաձգական շարժումները։ Եթէ այդ դիակների մէջ կեանքի մնացորդ անգամ լինէր, այդ քրքիջը բաւական էր, որ նրանք սրտաճաք լինէին։ Խեղճ կինը խելագարուեց...

Նա մօտեցաւ ամուսնու դիակին, ոտքով հրեց նրան։

— Հիլի վեր, հիլի վե՛ր, քա մարդ, չուն Ե՛փ քնիս, հիլի վեր քէլա՛ արտ, քէլա դաշտ, արտը քաղի, հօրի՞ կը քնիս, հիլի։

Սառած դիակը օրօրուեց նրա ոտքի շարժումից և կրկին անշարժացաւ իր տեղում։

— Լաօ՛ դու հօրի՞ կը քնե՞ս. դուն լէ՞ չես գայ. դէ որ իմալա, ես կեթամ, քնէք դուք։

Ասաց նա, և այրի բացուածքից դուրս թռաւ...

---

Ի... գիւղի գլխաւոր փողոցի ծառուղիում միշտ կարելի է տեսնել մի խեղճ խելագար կին՝ գզգզուած մազերով, ոտաբոբիկ, պատառոտուն շորերով, որոնց տակից տեղ տեղ բաց երևում են նրա վտիտ մարմնի մասերը։ Սա նոյն կինն է։ Նրա աչքերը բորբոքուած են, որպէս տենդով բռնուածի աչքեր, նա վտիտ է և գունատ, ինչպէս գերեզմանից դուրս փախած մեռել։ Անցուդարձ անողներին նա կանգնեցնում է և հարցնում ժպտալով.

— Ինձի չե՞ս ճանչնար, ես Ծալագ Վուրղունին եմ է՜… Հա՛ էնա տեղ զարկեց ընձի փալագ հա՜…

Նա մատով ցոյց է տալիս դէպի հարաւ, դէպի Բարթողեան լեռները և վազում է դէպի այն կողմը մի վայրենի քրքիջ արձակելով։

1896 թ.

---

# ՆՈՐԱԾԻՆԸ

## (ԳԱՂԹԱԿԱՆԻ ՊԱՏՄԱԾԻՑ).

---

*Սև էր էն տարին. սև էր պատել մեր երկրին. ամեն կողմից արեան հոտ էր գալիս: Հայ քրիստոնէի գլուխը դարձել էր ծառի մի տերև: Անօրէնները չորս կողմից, ո՞վ գիտէ ինչի համար, գլուխ էին բարձրացրել և սոված գայլերի նման մեզ վրա էին վազում արեան ծարաւով: Մեր լեռներն ու ձորերը, մեր դաշտերն ու հովիտները ամենն էլ դարձել էին «հարամիների» բուն, գիւղից երկու քայլ հեռանալ չէր լինում, էլ վար ու ցանք, հունձ ու կալ չը կար, կեանքը Թանկ է, ո՞վ սիրտ կանէր գլխից ձեռք վեր առնել դաշտային աշխատանքի գնալ մանաւանդ այն օրից յետոյ, երբ մեր ռէսի տղային անօրէնները դէզի մէջ վառեցին, երբ Եղօի հարսն ու աղջիկը արտից տարան հա՜ տարան, գրնդակահար անելով նրա մաճկալ որդուն:*

Ամեն անգամ՝ երբ արեւը ժամկւում էր մեր լեռների յետևը և գիշերային խաւարը ժամկում էր արար—աշխարհի հետ նաև մեր գիւղը, այդ խաւարից է՛լ աւելի սև, հոգեմաշ խաւար էր տիրում մեր սրտերին և ճնշո՜ւմ, ճնշո՜ւմ... Արդեօք անօրէնները գիշերը սրի և կրակի ճարակ չեն դարձնի մեզ, մտածում էինք մենք, արդեօք վաղը արև ու երկինք կը տեսնե՞նք, թէ՞ այս հէնց յաւիտենական գերեզմանի խաւարն է, որ իջնում է մեր գիւղի վրա: Էլ ո՞վ կարող էր քնել, ո՞վ կարող էր սիրտ անել շորեր հանել. քունը բաժին էր միայն փոքր, շատ փոքր երեխաներին, որոնք դեռ ժանօթ չէին աշխարհի խէր ու շառին, որոնք չը գիտէին թէ ի՞նչ ահաւոր մտքեր են դառնում մեր գլուխներում:

Մեր շրջապատում էլ գիւղ չը մնաց, բոլորը զոհ գնացին անօրէնների չը տեսնուած գազանութեանը. Օ՜, պատմել կը լինի՞, թէ նրանք ինչեր գործեցին այդ գիւղերում. մարդկային լեզուի կարողութիւնից վեր է այդ արիւնոտ անցքերի նկարագիրը: Եւ ո՞վ կը պատմի, երբ ոճիրների ականատեսները, որոնք հրաշքով փրկուել են անօրէնների դնդակներից, խենթացել, սարէսար են ընկել կրած սարսափներից, կամ լեզուները պապանձուել է համր կտրել, կամ մահամերձ հիւանդ ընկած

են այս ու այն աստուածասիրի դռանը: Լուռ, անտարբեր ցցուած ժայռերն ու սարերը, խորունկ ձորերն ու այրերը, իրաւ է, լսեցին մորթոտուած ողամարդկանց վերջին հռնդիւնը, կենդանի թողուած երեխաների ստորերկրեայ ճիչն ու մրմունջները, ղազիի պղծութեան զոհերի, շարան-շարան իրար կապուած կոյս աղջիկների և ջահիլ հարսների ողբն ու կոծը, կործանուած գիւղերի տակաւին ծխացող աւերակների մէջ ուրուականների պէս շրջող խեղճ ու կրակ մնացած թշուառ ծերերի ու պառաւների օրհասական աղաղակները, լսեցին այս բոլորը, յուզիչ, տխուր արձագանքներով կրկնեցին և մնացին դարձեալ լուռ, դարձեալ անտարբեր: Էլ ո՞վ կը պատմի, թէ ինչեր անցան այն գիւղերում, երկի՞նքը... բայց նա էլ շա՜տ է հեռու, շա՜տ բարձր...

Մեր պապերը դարերից ի վեր սովորեցրել են մեզ երանի տալ մեռելներին, որոնք թոթափելով անիրաւ աշխարհի հոգսերն ու ցաւերը, գտնում են յաւիտենական հանգիստ վայելելու. վաղուց ենք սովորել մեր հանգուցեալին հողին յանձնելուց յետոյ ամեն անգամ կրկնել՝ «երանի՜ քեզ». բայց երբէք մահն այնքան քաղցր չէր եղել, երբէք կենդանի մնացածներն այնքան չէին նախանձել յաւիտենական քնով հանգչողներին, ինչպէս այս անգամ:

Քանի՜ քանի՜ երանի տուինք նոյն իսկ այն պլպլացող աւերակների տակ պառկածներին, որոնք իրանց այրուած կրծքերի տակ դէմ յաւիտեան Թաղեցին այն անտանելի ցաւերը, որոնցով մենք դեռ տանջւում էինք օր ու գիշեր։

Տէր Աստուա՜ծ, ինչ օրեր քաշեցինք, ժայռ լինէր՝ կը ճաքէր, սար լինէր՝ փուլ կը գար, բայց մարդը սևերես կը լինի, տարանք, դիմացանք, բայց մինչև ե՞րբ կարող էինք կրել... Մի քանի օր առաջ մի խումբ անօրէններ մեր գիւղը Թափուեցին, սոված գայլերի մի վոհմա՛կ էր այդ, Թէ՞ դևերի մի խումբ, որ արիւն սփռելով անցաւ. քանի՜ քանի՜ անմեղների դիակներ փռեցին փողոցներում. ողջ մնացածներս էլ ամէն բանից զրկուեցինք։ Անօրէնները խլեցին ամէն ինչ, ոչխար, տաւար, ալիւր ու ցորեն, անկողին ու զգեստ, մնաց մի Թշուառ կեանք, այն էլ ամէն րոպէ վտանգի մէջ. էլ ճար չը կար և վճռեցինք Թողնել մեր Թշուառ երկիրը, Թողնել կայք ու ստացուածք, այգի, անդ ու անդաստան, բռնել մեր մերկ ու սոված զաւակների ձեռքից ու փախչել առանց յետ նայելու գոնէ մեր կեանքը փրկելու համար։

Տխուր ու մռայլ գիշեր էր. ամպամած երկինքը մանրամաղ անձրևի կաԹիլները Թա-

փում էր ու թափում, ասես սգաւորի աչքերից: Նա է՞լ էր տխուր, ո՞վ գիտէ, գուցէ չիրաւի այդ արցունք էր, որ կարեկից երկինքը թափում էր ներքեւում տառապող թշուառների մխիթարութեան համար. չէ՞ մեր տէրտէրը մեզ միշտ հաւատացրել է, թէ երկնքից թափուածը ողորմութիւն է. բայց եթէ երկինքը կարեկցել գիտէ, եթէ թշուառն էլ է վայելում նրա ողորմութիւնը, ինչո՞ւ հապա այդ կաթիլները չեն փոխւում շանթերի և թափւում մեր անօրէն դահիճների գլխին, որ մեր տառապանքը վերջ առնի. մարդն էլ արտասուել, երկինքն էլ արտասուել, էլ ո՞վ պիտի կռուէր չարի դէմ, էլ անճարը ո՞րտեղից յուսայ օգնութիւն:

Մեր գիւղը գաղթում էր այդ սեւ օրին, կամ աւելի ճիշտ փախչում էր իր «եսիրն» ազատելու համար. Ծծկեր երեխաները կպան մայրերի կրծքերին, աւելի մեծերը նստեցին ծնողների պարանոցներին և ուսերին, մնացածները՝ որոնք քայլել կարող էին, կախուեցին ձեռներից և մենք շարժուեցինք: Սուգ էր պատել ամենքին. երկնքի անձրեւից աւելի արցունք թափեցինք, երբ անցանք գերեզմանատան մօտով. հեշտ բան է՞, մեր ծնողները, մեր սիրելիներն էին այնտեղ պառկել շարէ-շար... և մենք ձգում էինք նրանց գուցէ յաւի-

տեան. մեզ այնպէս էր թւում, թէ նոքա բոլորն էլ կենդանի են, մենք թողնում ենք նրանց անօրէնների ձեռքին անտէր, անտիրական. ասես լսում էինք նրանց լացի, անտէրութեան աղաղակները, ասես քարերի տակից ճչում էին մեզ սրտապատառ՝ «ո՞ւր էք թողնում մեզ, կացէ՛ք, կացէ՛ք». փակեցինք ականջներս, անցանք շտապով, կրկին երանի տալով նրանց, որ հայրենի հողի տակ են պառկել, մինչդեռ մենք տանում էինք մեր ոսկորները ո՞վ գիտէ ո՞ր օտար հողին յանձնելու:

Ամբողջ գիշեր գնում էինք անձրեւի տակ, թրջուած, յոգնած, երկիւղով:

— Մարէ՛, ցուրտ է, մրսում եմ, կոչում են այս ու այն կողմից մանուկները:

— Լաւ, «խախանտ» կաց, սուս, եաման «նրանք» կը գան քեզ կը տանեն:

«Նրանք» բառը սարսափելի զօրութիւն ունի, մանուկները յետ յետ են նայում խաւարի մէջ եւ աւելի մօտ կպչելով մայրերի փէշերին՝ առաջ են շարժւում առանց ծպտուն հանելու: Քայլում են մինչեւ ուժասպառութիւն, ապա հայրերը շալակում են նրանց եւ կրկին գնում:

Լուռ ենք ամենքս էլ, անօրէնների գիւղերի մօտից ենք անցնում, գազանների բոյն, բորենիների որջեր են չորս կողմներս: Աստուած

չանի եթէ նրանք մեր ոտնաձայնից, մեր աղմուկից զարթնեն և իմանան մեր փախուստը, ամենքս էլ կը կորչենք. քայլում ենք զգոյշ, վախենալով շունչ քաշել, չը հազալու համար մարդիկ իրանց շրթունքներն են կրծոտում: Եւ քայլում ենք առանց կանգ առնելու, սարսափով նայում ենք երկնքին՝ աստղերով որոշելու թէ գիշերուայ ո՞ր ժամն է. թէ արդեօք բաւական գիշեր կա՞յ, որ կարողանանք ահաւոր անցքերի սահմանները կըտրել, անցնել. բայց երկինքը ծածկել է իր երեսը սև, անթափանցիկ քօղով, ո՛չ մի աստղ չի պլպլում այնտեղ, մռայլ, մահաստուեր ամպերը կախուել են մեր գլխի վրա և միայն բարակ, մանրամաղ անձրևը գալիս է ու գալիս: Տէր Աստուած, ինչեր չէինք տայ, որ այդ գիշերն աւելի երկար լինէր, արեգակն աւելի ուշ ծագէր, խաւարը սիրելի էր մեզ, մենք սոսկում էինք լոյսից:

Բարձրանում ենք սարեր, իջնում ենք ձորեր, կտրում անցնում ենք մեծ ու փոքր առուակներ. անօրէնների գիւղի մօտենալիս՝ մեռելային լռութիւն ենք պահպանում և անդադար գնում հա՛ գնում... Վտանգն անցած չէ, ահա մի ուրիշ գիւղ. քար լռութիւնը կրկին տիրեց ամենին. քայլում ենք ոտների

ծայրերով։ Յանկարծ ընդհանուր լռութեան մէջ լսուեց մի երեխայի սուր ճիչը, սարսափը բռնեց ամենին, հիմա ուր որ է, անօրէնները կը զարթնեն և մենք սրի ճարակ կը դառնանք, պէտք է փակել երեխայի բերանը, ինչ և պատահելու լինի, թէկուզ խեղդուի, մահանայ։ «Եամա՜ն բերանը փակի, բերանը փակի» խեղդուած ձայնով, փսփսուկով, բայց սարսափի շեշտով կանչում են չորս կողմից մօրը, սակայն մայրն ասես ոչինչ չի լսում, ախր իր արգանդի պտուղն է, ի՞նչպէս իր ձեռքով խլի իր զաւակի կեանքը։ Երեխան շարունակում է ճչալ, և սարսափած բազմութիւնն ինքնապաշտպանութեան բնազդից դրդուած՝ հասնում է մի կատարեալ անզգայութեան, մի քանի ձեռքեր այս ու այն կողմից մեկնւում են դէպի մանկան փոքրիկ բերանը, խցել են ուզում, զարհուրած մայրը պաշտպանում, փախցնում է ճչացող երեխային. նա յուսահատական ձայներ է հանում, խառնում է երեխայի ճիչին իր աղերսանքները, որ խնայեն զաւակի կեանքը, ի վերջոյ ճարը կտրած, փոքրիկին պինդ պինդ սղմում է իր կրծքին և ընկնում է գետին երեսի վրա իր մարմնով ծածկելով երեխային, որ յանկարծ լռում է, բայց երևի ուշ, որովհետև գիւղում շների հաչոց է բարձրացել։

Կրկին շարունակում ենք մեր ճանապարհը: «Ձեր ոտներին մեռնիմ, շուտ շուտ գնացէք» քաջալերում են հայրերը. մեր առաջն է, մի հսկայ սար ձիւնապատ կատարով: Հաւաքում ենք մեր վերջին ճիգերը, և սարը դէմ տալիս, բարձրանում: Վերելքը դժուար է, բայց բարձրանում ենք շարունակ յետ յետ նայելով դէպի այն կողմը, ուր թողինք քնած գազաններին:

— Սարը որ անցնենք, ազատուած ենք, էլ մեզ չեն կարի, հաւատացնում են փորձուածները, այն կողմը սահմանն է. այս միտքը մեզ սիրտ է տալիս և բարձրանում ենք: Բայց այս ի՞նչ բան է, մեր թողած գիւղերում, ներքև, սարի ստորոտում այժմ ինչ որ շարժում է սկսուած. երեխայի ձայնից և շների հաչոցից երևի նրանք զարթնել են, արդէն հայհոյանքների և սպառնալիքների ձայները հասնում են մեր ականջին. սարսափով ենք յետ նայում. սրատես աչքերը կարողանում են հեռաւոր խաւարի մէջ ինչ որ ստուերներ որոշել, որոնք հաւաքւում, կուտակւում են ինչպէս փոթորկաբեր ամպեր, կամ դևերի ժողով, որ շուտով ճիւաղային պարեր կազմեն մթութեան մէջ: Ահա ձայները աւելի և աւելի մօտենում են, զէնքերի հանած շառաչն էլ ենք լսում, այլ ևս ոչ մի կասկած չը կայ, որ անօրէնները մեր յետևից են գալիս:

«Փախե՛ք, եաման շուտ փախէք» կոչում են այս ու այն կողմից. բայց սարը բարձր է, վերելքը վերջ չունի, սարսափն ու յոգնածութիւնն էլ մի կողմից են արգելք դառնում, կանայք ու երեխաները մօտ են ուժասպառ վայր թափուելու։ Ամենից աւելի տանջուած ու թուլացած է երեւում մանաւանդ Մուրօի կինը. ահա նա ցած դրեց իր շալակի երեխան, որովհետեւ էլ տանել չի կարողանում. ամուսինը ստիպուած եղաւ այդ երեխան էլ շալակել միւսի հետ, որ արդէն նրա թիկունքին նստած էր։ Կինը ջանք արաւ և կրկին քայլում է, բայց ահա նա կրկին թուլացաւ. Ի՞նչ ունի արդեօք, հիւանդ է երեւի. մօտի կինը կարեկցութեամբ բռնեց նրա ձեռքից և առաջ գնացին։ «Մեղքից կուշտ ի» *) ասում են կանայք փսփսալով։

Անօրէնները մօտ են, էլի մի փոքր և նրանք հէնց այս լերան ստորոտում կը լինեն։ Մենք փախչում ենք, քանի ուժ ունենք ոտներում. երեխաների լացից, կանանց ողբ ու կոծից սարերն են դղրդում։ Բայց Մուրօի կինը այս ժանր ճգնաժամին յանկարծ ծնկների վրա ընկաւ մնաց, անկարող նոյն իսկ մի քայլ անելու։ Թշուառութիւնը կատարեալ էր, ո՞վ

*) Ծանօթ. «Մեղքից կուշտ» Արճեշի բարբառով նշանակում է յղի։ Հեղ.

կը սպասէր, թէ բնութիւնն էլ ընդունակ է ծաղրելու. ճակատագրի ձեռքին խաղալիք դարձած թշուառներին — տարաբաղդ կինը երկունքի մէջ էր... խեղճը ժամեր առաջ, գուցէ և ամբողջ գիշերը տանջուելիս է եղել անասելի ցաւերով, բայց հայ կնոջ յատուկ տոկունութեամբ տարել է բոլորն անտրտունջ, կատարեալ մարտիրոսութեամբ, սակայն ո՞վ կարող է բնութեան պահանջներին դէմ դնել, ահա նա ընկած է այժմ ինչպէս մի անկենդան դիակ, դէմքը գունատ, շրթունքներն իրար վրա սղմած ցաւի մեծութիւնից, աչքերը մարած, անշարժ: Սակայն ճար չը կայ, այնուամենայնիւ պէտք է փախչել, պէտք է սարի կատարին, սահմանին հասնել, անօրէններն սկսում են արդէն սարը բարձրանալ: Երկու կին մտնում են կիսակենդան կնոջ թևերի տակ և շարունակում են նրան ոչ թէ տանել, այլ քաշ տալ դէպի վեր, դէպի կատարը: Մօտ է գագաթը, մօտ է փրկութիւնը. սարի այն կողմն անօրէնները չեն համարձակուի անցնել, այնտեղ ազատ երկիր է, յոյսն ինչեր ասես չի անի, իսկ սարսափը հրաշքներ է գործում, յոգնածութիւնը մոռացած՝ մենք ոչ թէ քայլում, այլ աշխատում ենք թռչել:

Եւ այս ընդհանուր շփոթի, այս անասելի տագնապի մէջ երկունքով բռնուած կինը

սոսկալի ճիչ արձակեց և երկու կանանց ձեռ-
քից պրծնելով՝ գետնին ընկաւ. այլ ևս տանել
կարելի չէր. րոպէն զարհուրելի էր, բայց և
հանդիսաւոր, մարդկային կեանքի ամենավսեմ,
ամենանուիրական խորհուրդն էր կատարւում
այդ րոպէին—կնոջ երկունքը մօտենում էր
իր վախճանին: Դիպուածն այն աստիճան
անսպասելի, այնքան տարօրինակ էր ամենքիս
համար, որ չը նայելով վերահաս վտանգին,
չնայելով մեզ ընկերացող սարսափին, մեզանից
շատերը քար կտրած՝ կանգնած մնացին:
Ցաւակցութեան զգացմունք էր այդ, թէ՞ ա-
կամայ պատկառանք, որ մենք ստիպուած
եղանք ինչպէս գերագոյն հարկ մատուցանել
բնութեան մեծ գործին, չը գիտեմ, բայց մենք
կանգ առանք խորին կարեկցութեամբ լցուած
դէպի տառապող կինը. մեզ թւում էր, որ
եթէ նրան ձգենք մենակ ու անտէր մօտեցող
աւազակների ձեռքը, այս լեռը փուլ կը գայ
մեր ոտների տակ, ժայռերը մեր գլխին կը
թափուեն, և մենք մնացինք, թէև բազմու-
թեան մեծամասնութիւնը շարժուեց դէպի
կառքը:

Մի չը տեսնուած տեսարան էր այդ. լե
րան ստորոտում վխտում էին արիւնարբու
աւազակները, շտապելով վեր ելնել շուտով
մեզ յօշոտելու համար, իսկ լերան վրա, բարձր,

կատարին շատ մօտ, խաւարի մէջ մի քանի կանայք շրջապատել են երկնող կնոջը, նրանց մօտիկ կանգնած են տղամարդիկ մտախոհ լռութեան մէջ: Մերթ ընդ մերթ տառապող կնոջ երկունքի ճիչը մինչև հեռաւոր լեռներն է տարածւում և այդ րոպէին մենք ցնցւում, սոսկում ենք, ասես լեռները ճչում, մեզ վրա են վազում: Ամէն մի րոպէն սպանելու չափ հոգեմաշ է և երկար, էլի մի փոքր, երևի մենք ամենքս այս սարսափներով լի, բայց անորոշ վիճակից խելագար կը դառնանք և կը վազենք լեռն ի վար դէպի մեր դահիճները: Եւ յանկարծ այս սոսկալի պայմաններում լսուեց՝ «ընկա՜յ, ընկա՜յ...» Նորածինի մի ողորմելի ճիչ, որ գնաց կորչելու լեռների և ձորերի տարածութեան մէջ. լոյս աշխարհ ընկաւ մի Թշուառ էակ ապրելու, կեանք վայելելու համար այն ժամանակ, երբ ամէն կողմ մահ էր իշխում, երբ ամենքը մահ էին խնդրում: Երեխայի առաջին ճիչը ցնծութեան փոխարէն ցաւ էր աւելացնում մեր ցաւերի վրա, մեր կեանքն արդէն բեռ էր, ի՞նչ անէինք նոր կեանքը: Եւ եթէ այդ էր այս կեանքի առաջին ժամը, ի՞նչ կը լինէր ապագան:

Մերկ երեխան ընկած է խոտերի մէջ: Անձրևը վաղուց դադարել է, երկնքում աստղեր էլ կան, բայց ցուրտ է լերան վրա, լուսաբացի

զով քամին սլսլացնելով բարձր խոտերը անցնում է երեխայի մերկ, Թոյլ մարմնի վրայով. նա դողում է, սարսռում է, ցուրտ է, շատ ցուրտ է նրա համար խոնաւ խոտերի մէջ: Խանձարուր է պէտք, տաք փաթոյթներ են հարկաւոր այդ Թրթռուն մարմինը պարուրելու համար. բայց ո՞վ է տուել մեզ տաք, չոր լաթի մի կտոր, ամենքս էլ ողորմելի ծուէնների մէջ, Թրջուած սարսռում ենք ցրտից: Մի կին շտապով քաշ՛եց շրջապատի խոտերը և այդ փոքրիկ դողդոջուն մարմինը փաթաթեց նրանց մէջ: Հէնց այդ վայրկենին մէկը ճչաց «փախէ՛ք», աւազակների ձայները լսեցինք բոլորովին մօտ, հէնց մեր կողքին. սարսափն ու շփոթը տիրեց, ամեն մարդ շտապեց իր գլուխը փրկելու, հազիւ կարելի եղաւ ծննդկանին շալակած փախցնել. երբ կատարին հասանք, երբ շունչ առանք, այն ժամանակ միայն նկատեցինք, որ նորածինը ընդհանուր տագնապի մէջ մոռացուել էր խոտերի մէջ, ամեն մի փախչող կարծել էր, Թէ միւսը տանում է նրան: «Ընկա՜յ, ընկա՜յ» լսւում էր մեր յետեւից աղեխարշ ճիչը, գայլերի մէջ մոռացուած գառան մայիւն լինէր ասես, որ օգնութիւն էր խնդրում. բայց էլ ո՞վ սիրտ կանէր մի քայլ անգամ վար իջնել. և այսպէս խղճուկ երեխան մնաց մէն մենակ, անտէր, անօգնական ընկած խո-

տերի մեջ. «ընկա՜յ, ընկա՜յ» կոչում էր Թշուառը մԹուԹեան մեջ. երևի ցուրտը նեղում էր նրան, և ոչ ոք չը կար, որ նրան իր կրծքի վրա սղմէր տաքացնէր:

Ամենքս լերան կատարին էինք, փրկուած էինք վերջապէս: Անօրէնների ձայներն այլ ևս չէին լսւում. երևի մեզ հասնելու ջանքերն ապարդիւն համարելով՝ նրանք յետ դարձան: Մենք էլ կանգ առանք, պէտք էր հանգիստ առնել: Ծննդական կնոջը վար դրինք գետին. նա կամաց կամաց ուշքի եկաւ: «Ընկա՜յ, ընկա՜յ» դեռ լսւում էր ներքևից խղճուկ երեխայի արդէն նուաղած ձայնը, որ ինչքան և Թոյլ էր, բայց մօր ականջին էլ հասաւ. նա աչքերը ման ածեց իր շուրջը, կարծես հասկացաւ սարսափելի իրողուԹիւնը, փորձեց վեր կենալ, գուցէ ներքև վազելու համար, բայց կրկին անզօր կերպով վայր ընկաւ: «Սևաբա՜ղդ զաւակս» մրմնջացին նրա շրԹունքները և արցունքի երկու խոշոր կաԹիլներ քաշ ընկան նրա գունատ այտերի վրա:

Արևելքն արդէն շառագունում էր. քիչ յետոյ արևի առաջին ճառագայԹները լուսաւորեցին հեռաւոր լեռների կատարները. անօրէնների գիւղը երևում էր հեռու ծխի և մշուշի մեջ կորած. լերանստորոտում ոչ ոք չը կար, մեզանից մէկը այժմ միայն ցած իջաւ

մանկանը բերելու: Քիչ յետոյ նա վերադարձաւ խոտերի մէջ փաթաթած մի սև բան ձեռքին—թշուառ նորածինը սառել, կապտել էր և փչել իր վերջին շունչը: Փայտերի ծայրերով մի փոքրիկ գերեզման փորեցինք այդ փոքրիկ արարածի համար, որ լերան կրծքի վրա ծնուեց, նրա գագաթում թաղուելու համար:

Որչափ կարճ կեանք, բայց և որքան
թշուառ...

Սակայն մենք նրան էլ ասացինք՝ «Հազար երանի քեզ...»

1896 Թ.

„ՓՇՈՒՐ-ԸՄ-ԽԱ՜Ց"

---

Յունուարի մի ցուրտ, շատ ցուրտ օր էր. Թքէիր, գետին չէր ընկնի։ Սպիտակ էր գետինը, սպիտակ էին տների պատերն ու կտուրները, սպիտակ էին մանաւանդ փողոցների և պարտէզների ծառերը — ձիւնի միատեսակ ճերմակ սաւանը փռուած էր ամեն տեղ, պատել էր ամեն ինչ։ Գիշերը խիստ պարզկայ էր և այժմ սառած ձիւնը անցուդարձ անողների ոտների տակ անախորժ ճռճռոց էր հանում, որից մարդու մարմինը փշաքաղւում էր։ Արև չը կար. մառախլապատ էր երկինքը. սաստիկ ցրտից յանկարծ խտացած գոլորշիները բարակ եղեամներ դարձած, խաղում էին օդի մէջ։ Ազաւներն ու աներես ճնճղուկներն անգամ այսօր, սովորականին հակառակ, ճիչ ու աղմուկով չէին թռչկոտում կտրից կտուր, բակից բակ պաշար թռցնելու. Նրանք նստոտել էին այս ու այն պատի վրա, այս ու այն ծառի

ճիւղերի վրա լուռ, խղճուկ, կծկուած—սաստիկ ցուրտը սրանց էլ էր նեղել: Ամեն մի անկիւնից, ամեն մի տնից, ամեն մի սաքուից, ուր որ կենդանի շունչ կար, ծուխ էր բարձրանում, մարդիկ կռւում էին ցրտի դէմ, ինչով և ինչպէս կարող էին, տաքանում էին:

Թէև արդէն առաւօտ էր, բայց X...-ի փողոցները դատարկ էին և անկենդան. ո՞վ էր դժուել այս կատաղի ցրտին գլուխ դուրս հանել տնից. Հազիւ երբեմն փողոցների այս ու այն ծայրում ստուերների պէս երևում էին մուշտակների, եափունջիների կամ վերարկուների մէջ կոլոլուած մարդիկ, քիթ ու պռունգը փաթաթած, եղեամով ծածկուած. սրանք էլ, ո՛վ գիտէ, ո՞րպիսի անհրաժեշտ կարիքից ստիպուած էին թողնել իրանց տաքուկ բնակարանները, այն էլ ոչ թէ քայլում էին, այլ ակամայից վազում էին համարեա հևալով:

Այդ ժամին փողոցի հեռաւոր ծայրում յանկարծ անսպասելի կերպով երևացին երկու փոքրիկ մանուկներ, 7 և 10 տարեկան: Խեղճերն այնքան վտիտ էին, որ ասես գերեզմանից դուրս քաշած մեռելներ լինէին. դժուար էր առանց սոսկումի նայել դրանց վրա. երկուսն էլ գլխաբաց, գզգզուած մազերով, որոնց վրա առատօրէն Թափուել էին եղեամների

թերթիկներ. յոնքերի և աչքերի թերթերունք-
ների վրա նոյնպէս նստել էին եղեամներ,
տալով մանուկներին մի անօրինակ, մի խղ-
ճալի տեսք: Նրանց մարմինների մերկութիւնը
հազիւ հազ ծածկուել էր ինչ որ կախկխուած
ծուէններով, անհնարին էր նոյն իսկ որոշել,
թէ ի՞նչ է նրանց հագինը կամ ո՞րն է վար-
տիքը, շապիկը, արխալուղը:

X...-եցի չէին նրանք այլ գաղթականներ
հեռու տեղից, տարաբաղդ, արիւնոտ երկրից
էին եկել, անհայր, անմայր, անտէր... կատա-
բեա՜լ որբիկներ... Սրի և կրակի ճարակ դար-
ձած իրանց խեղճ հայրենիքի մասին այս փոք-
րիկ թշուառները շատ քիչ բան գիտէին, կամ
գուցէ և շատ բան գիտէին, բայց քիչ էին
պատմում. ասում էին միայն, որ այն եր-
կրում «զուլում կէնեն, մարդ կը մորթեն, ան-
սուչ տեղը, էսպես սաղ-սաղ կը մորթեն, մեր
խօրն ու մօրն էլման մորթեցին անօրէնները»,
իսկ իրանք երկու թշուառները «էլի» չետ փա-
խան եկան և ընկան այստեղ տարագիր:

Խեղճերը գիշերները քնում էն մի աստուա-
ծասիրի գոմում. այնտեղ շատ անասուններ
կան, տաք է... Առաջ փորձեցին մեծ գոմեշ-
ների մսուրի մէջ քնել, բայց նրանք այս տա-
րօրինակ մարմինները տեսնելով խրտնեցին,
փնչացրին, թշուառները վախեցան և փախան

մտան մի փոքրիկ, խղճուկ հորթուկի մսուրը, որը նույնպես նիհար էր, նույնպես տխուր, նույնպես թշուառ, որպես երկու որբիկները. խեղճի մայրը հենց նոր էր մեռել, նրան ծիծ տուող չը կար, ուստի կերակրում էին չոր խոտով, բայց նա դեռ ուտել չէր կարողանում, անսովոր էր, մէկ-մէկ ծիլ վերցնում էր, ծամլմորում և վեր ածում. Նա միշտ սոված էր, միշտ էլ տխուր, դունչը կախած, օրաուր նիհարում էր ու նիհարում:

«Թշուառին թշուառն է միշտ մխիթար». որբ հորթուկը սիրով հիւրընկալեց որբ մանուկներին, նրանք բարեկամացան և սիրեցին իրար. և երբ գիշերները երկու որբիկները ճիտ-ճիտ արած, իրար պինդ խառնած քնում էին մսուրի մէջ, հորթուկն էլ իր փոքրիկ դունչը դնում էր նոյն մսուրի շրթին, քնում էր, իր տաք շունչը մանուկների երեսին փչելով: Գոհ էին մանուկները, միայն փոքրիկ որբը գիշերները շուտ-շուտ վեր էր թռչում, ճվում, ձչում, լաց լինում, ապա զարթնելով գանգատւում էր մեծին, թէ գալիս են... տանում են... մորթում են... Գոմի խաւարի մէջ նա սարսափում էր դևից, չարքերից: Եղբայրն այդ ժամանակ աւելի պինդ էր գրկում նրան, հանգստացնում էր և նրանք կրկին քնում էին:

Լաւ էր գոմը նրանց համար, շա՜տ լաւ, տաք էր․․ Առաւօտները վաղ զարթնում էին և իրանց վայելած հիւրընկալութեան փոխարէն նախ աւելում, մաքրում, չորացնում էին հորթուկի տակը, գուրգուրում էին նրան, ապա կրում թափում էին մնացած անասունների աղբը և դուրս էին վազում փողոցներում թափառելու... հաց հաւաքելու... Այսպէս էին ապրում նրանք և գոհ էին. «դուլում» չը կար։

Սրանից առաջ էլ համարեա ամէն օր նրանք շրջում էին փողոցներում. տեղացիք տեսնում էին նրանց նոյն ցնցոտիների մէջ, նոյնպէս ոտաբոբիկ, նոյնպէս գլխաբաց, դըրգզուած, որպէս այսօր և ոչ ոքի խիղճը չէր վրդովւում։ Դէ՛ եղանակը տաք էր, «եթէ մին էլ աներես կը լինի, հաց հաւաքելով կապրեն էլի՜», մտածում էին նրանք և խիղճը հանգստացնում. բայց այսօ՞ր... օրերը դարձեալ փողոցումն են. այս լաւ չէ. անտանելի ցուրտ է. օձի ճուտն էլ այս ցրտին թող դուրս չը մնայ, մեղք է, մտածում էին անցորդները... ախր այդ ի՜նչպէս են բոբիկ, դողալով վազում և ի՜նչ կարիք կար այսօր էլ անպատճառ դուրս գալ... Ա՜խ, աներես լակոտներ...

—Վա՜յ, վա՜յ, սրանց մարիկ տուր, սրանց, ասաց մի մուշտակաւոր պարարտ մարմին իր

հետ գնացողին երկու վազող որբերի վրա ցոյց տալով. Օ՜ֆ, հոգիս մղկտաց, կրակ վառուեց գլխիս, կրա՜կ... Ի՞նչպէս են դողում, Աստուած իմ, ախր այս ցրտին ո՞ւր էին դուրս գալիս իրանց բնից... Եւ նա ի սրտէ ցանկացաւ, որ այդ որբերն այսօր դուրս եկած չը լինէին կամ գոնէ ինքը չը տեսնէր նրանց դողդողալիս. հանաք չէ, մարդու հայր հարամ եղաւ... Եթէ ճաշին միտս ընկնէն, դժուարութեամբ կը ճաշեմ, մտածեց նա և դէմքը կնճռեց:

Խօսակիցը հասկացաւ ընկերոջ խղճին հասած վիրաւորանքը և կամեցաւ նրան դուրս հանել այդ անախորժ վիճակից:

— Է՜հ, իզուր ես այդքան անհանգիստ լինում նրանց մասին, բարեկամ, նրանք սովոր են, կը տանեն. այլ բան է, Աստուած չանի, եթէ իմ և քո երեխաներին մի այդպիսի բան պատահի. գիտե՞ս, իմ Օսիկին որ եօրղանով էլ հիմա դուրս հանես՝ տեղն ու տեղը կը սառի, հաւատա կը սառի. սրանց բանն ուրիշ է, սրանք կը տանեն...

Փաստաբանութիւնը խելացի էր, պարարտ մարմինն ու խօսակիցն անցան...

Իսկ որբե՞րը... Նրանք շարունակեցին առաջ գնալ փողոցով և ամենևին չէին էլ զարմանում, որ իրանք այս անտանելի ցրտին փողոցումն են, մինչդեռ իրանց հասակակից

ո՛չ մի ուրիշ երեխայ չի երևում. Նրանք մի բան միայն գիտէին, որ թէև սաստիկ ցուրտ է, թև իրանք էլ մերկ են, ոտաբոբիկ, գըլխաբաց, դողդողում են, բայց և այնպէս պէտք է դռներն ընկնեն, որ հաց ճարեն, շատ են սոված. երէկ ճաշից սկսած բան չեն կերել...

—Վա՜խ, Գա՛լօ, էս իմալ ցուրտ ա եաման, ասաց փոքրիկը իր կծկուած, անզգայացած մատները կապտած շրթունքներին մօտեցնելով և ոտները խշխշացող ձիւնի վրա վերև ներքև անելով:

—Խօ՛, Մրտօ, շատ ցուրտ ա, մռմուռ մարդու չիգեար կուտայ, շուտ արի.

—Ախր փաշեախը (դոմ) տաք էր, շարունակեց փոքրիկը լացակամած, արցունքների խղճուկ կաթիլները կախուեցին արտևանունքներից, բայց առանց ընկնելու սառեցին:

—Տաք էր, ապա որ անօթի ենք, ի՞նչկ էնինք...

Փոքրիկը լռեց, կծեց շրթունքները, փչեց մատներին քո՜ւ, քո՜ւ, քո՜ւ...

Ահա նրանք կանգ առան մի մեծ դարպասի առաջ, որ բաց էր: Բակի ներսում սաստիկ ցրտից կծկուած՝ քնած էր մի մեծ գամփռ. Նա չէր նկատում մանուկներին, որոնք վախվխելով, ձեռք ձեռքի տուած, անվստահ քայլերով ներս մտան բակը և մի փոքր առաջ

գնալով տեսան ահաւոր շունը։ Մեծը կանգ առաւ, չը համարձակուելով աւելի առաջ գնալ։

— Մրաօ, շունը՞ը... կը կծի՞, դառնանք։

— Ախր անօթի եմ, կը մսիմ, էլ զոր երթանք, մրմնջաց փոքրիկը. էս տուն ճոչի, փշուր-ըմ խաց ուզենք, էլ ման վազենք փագեախ, ցուրտ ա փէտցանք...

Նրանք մի փոքր էլ առաջացան, յուսալով անձայն, անշշուկ անցնել շան մօտից և տանը հասնել։ Բայց ձիւնի ճռճռոցը զարթեցրեց շանը, նա գլուխը բարձրացնելով տեսաւ երկու գզգզուած մանուկներին, մի կատաղի ոստիւն գործեց և վրաները յարձակուեց։ Վտանգն զգալով՝ խեղճ մանուկները ճչացին, իրար գրկեցին և վայրկենապէս նստեցին ձիւնի վրա։ Այսպէս են պաշտպանւում շների յարձակումից մուրացիկ մանուկներն ու կանայք։ Ասես իրանց յաղթահարուած ցոյց տալով՝ այդ թոյլ արարածներն ուզում են գազանի սրտում գութ զարթեցնել։ Եւ արդարև, շունը կանգ առաւ, կենդանու կատաղութիւնը զսպուեց ո ր բ ե ր ի անպաշտպանութեան առաջ. նա մի փոքր հեռու պառկեց, գլուխը թաթերի վրա դրած, հսկում էր երկու թշուառների վրա, որ չը լինի թէ վեր կենան փախչեն։ Սրտաճմլիկ, արտասուելի տեսարան էր. երկու ոտաբոբիկ, գլխաբաց, ցնցոտիների

մէջ գողգողացող մանուկներ, կապտած շըրթունքներով, ուռած ձեռներով իրար կպած, կծկուել, նստել էին ձիւնի վրա և լալիս էին. եղեամի թերթիկները խաղում էին ցուրտ օդի մէջ և պտտուելով թափւում էին նրանց գզգզուած մազերի վրա: Կատաղած շունը շնթրկել էր նրանց կողքին մռմռալով, սպասում էր, որ թշուառները վեր կենան թէ չէ, վրա պրծնի, կտոր կտոր անի: Բակում ոչ ոք չը կար: Մանուկները շարունակում էին յուսահատ լալ ու ճչալ. սարսափած աչքերով նրանք նայում էին մէկ շանը, մէկ տան դրանը, այնտեղից օգնութեան սպասելով: Ահա վերջապէս տան դուռը ճռռալով բացուեց և շէմքի վրա երևաց մի կին:

«Փշուր-ըմ-խմ՛ց», պռռացին մանուկները միասին դողդոջուն ձայնով:

—Աներես լակոտներ, ասում էի սրանք կը լինեն, մրթմրթաց նա և ներս մտնելով բերեց մի կտոր հաց, տուեց սարսափած մանուկներին, իսկ ինքը յետ դարձաւ:

Մանուկները խլեցին հացի պատառը և մինչ պատրաստւում էին շտապով դուրս թռչել դռնից, շունը վեր թռաւ նրանց յետևից, վրա պրծաւ, փոքրիկ որբի ոտքից բռնեց, քաշեց կատաղի հափոցով: Սարսափած մանուկը ճչաց և երեսի վրա ընկաւ հացը

ձեռքին, մինչդեռ մեծը շշկլուած՝ չը գիտենալով օգնութեան վազել թէ փախչել, կանգնած մնաց ու լաց էր լինում։ Տանտիկինը վազեց, հալածեց կատաղած շանը և երբ ձեռքից բռնելով վեր բարձրացրեց որբիկին, երեխան ծանր տնքաց. գազանի սուր ժանիքները պատռել էին նրա փոքրիկ ոտքը, կաթկաթ արիւնը ծորում էր վէրքից և թափւում ձիւնի վրա։ Երեխան ձեռք տուեց ոտքին, ձեռքը ներկուեց արիւնով, նա զարհուրած յետ քաշեց ձեռքը, նայեց ափին, նայեց վիրաւոր ոտքին և էլ աւելի բարձր ձայնով լալ սկսեց։ Այնու ամենայնիւ նա կռացաւ, վերցրեց հացի պատառը և կաղալով ու տնքալով հեռւեց իր եղբօրը։ Արիւնը շարունակում էր կաթել նրա ոտքից և երկուսով էլ լալիս էին, տեսնելով կարմիր կաթիլները...։ Բայց և այնպէս քաղցած, դողդողալով մանուկները կիսեցին հացի արիւնոտ պատառը և մի մի կտոր կրծելով՝ առաջ գնացին։

Դեռ երբե՞ք հացի մի պատառն այնքան թանգ չէր գնուել...

1897 թ.

# ԲԱԽՏԻ ԽԱՂԵՐ

## I.

### «ԱՐՑՈՒՆՔԸ ՋՈՒԼՈՒՄ ԿԸ ԾՆԻ»

---

Հարուստ և անուանի էր ուէս Պէտօն. ողորմած երկինքը հաշտ ժպտում էր նրան և ամենատեսակ բարիքներ լիուլի թափել էր նրա տան վրա։ Վիշտն ու տրտմութիւնը ծանօթ չէին ուէսի օջաղին, երկնքի հովանին թևատարած հրեշտակի պէս պահպանում էր փորձանքներից այդ օջաղը, ուր անընդհատ թագաւորում էր կեանքն ու երջանկութիւնը։

Վաթսուն և աւելի գարուն էր բոլորել ուէս Պէտօի գլխով. պատկառելի սպիտակ միրուքը ծածկում էր նրա լայն կուրծքը, որ անցեալ հզօրութեան նշաններն ունէր վրան, սպիտակ ալիքներով զարդարուած էր նրա գլուխը, բայց խելօք աչքերի հայեացքը խրոխտ էր տակաւին և չաղթ իրանը ուղիղ։ «Բոյ ու բուսաթով» հինգ որդիները նրա օջաղի սիւ-

ներն էին։ Բ... գիւղի լայնատարած հանդում նրանց ձեռքով մշակւում էին ռէսի արգաւանդ ընդարձակ արտերը, սիզաւէտ հիւթալի արօտներում օրն ի բուն արածում էին նրա մօտ հազար ոչխարի հօտերը, նրա հարիւրաւոր կթաններն, եզների ու գոմէշների նախիրը։ Բացի հովիտներում ազատ արձակ թափառող տասնեակ «չինս» մատակ ձիերից ու քուռակներից ռէսի խուրաքանչիւր որդին իր առանձին նժոյգ ձին ունէր, որոնց նախամայրը Խնուսից էր բերուած, և նրանից սերուած ձիերը ամբողջ գիւղի «եխլու» մէջ յայտնի էին իրանց գեղահրաշ տեսքով և մրրկանման արշաւով։

Հինգ գեղանի հարսներն իրանց ժրաջան սկեսուրի՝ Խաթուն-Մարէի աչալուրջ հսկողութեան ներքոյ՝ իրանց բազմաթիւ մեծ ու փոքր զաւակների հետ օրն ի բուն մրջիւնի պէս աշխատում էին տան մէջ, բայց և այնպէս հազիւ էին կարողանում «տիրապրտել» տան բարիքները, պատւով ճանապարհ դնել եկող գնացող հիւրերին, որոնք տարուայ ամէն եղանակին անպակաս էին պատկառելի օջաղի օդայից։

Աշունը ռէս Պէտօի տան համար երջանկութեան և անընդհատ աշխատութեան օրեր էր բերում. հասունացած արտերից ամէն

տեսակ բարիքի հեղեղ էր Թափում, կալն ու կուտը վերջանում էր և ռէսի շտեմարանները ու ցորենի հորերը լցւում էին անբաւ հայահատիկներով։ Տարուայ այդ ժամանակ շրջակայ լեռներից մի-մի տապրակ ուսերին, կամ էշերով ու եզներով քաղցած շների պէս ցած էին իջնում վայրենի քրդերը և իրանց սովորական բաժինն ստանալով ռէսի կալից, հեռանում էին։ Բայց և այնպէս արդար մարդու հարստութիւնն անհատնում էր։

«Օ՛րհնած է ռէս Պէտօի օջաղը», ասում էին իրար քրդերը և այդ բանը հաստատում էր նաև շէյխ Աւդին, որը ուխտ էր արել ամեն տարի անպատճառ ռէսի օրհնած ցորենից սերմացու վերցնել ցանել, որ արտերը աչող լինեն, բերքն առատ։ Եւ երբ գարնանը շէյխի ցորենի արտերը մեղմ քամու առաջ օրօրւում էին խոստանալով առատ բերք, շէյխը չէր մոռանում յարմար առիթին ռէսին ցոյց տալ այդ արտերը առանձին բաւականութեամբ ասելով.

— Ավանա խէրէ մալայ տայայ, քիրվայ։ *)

— Նա, նա, ավանա խէրէ խուդայա շէյխ, խէրէ խուդայ **), պատասխանում էր ռէսը համեստութեամբ։

---

*) Սա քո տան բարիքն է, քիրվայ (քաւոր-բարեկամ)։

**) Ոչ, ոչ, սա Աստուծոյ բարիքն է, շէյխ, Աստուծոյ բարիքը։

Իսկ թէ ի՞նչպէս էր պատահել, որ մի «Փլայ» քիւրդերի աչքում արդար մարդու հոչակ էր վայելում, ի՞նչպէս էր եղել, որ քիւրդերը օրհնուած էին համարում «փլայի» տունն ու տեղը, անդն ու անդաստանը, ինքն ռէսը այդ մասին ոչինչ չէր ասում, բայց Բ... գիւղացիք իրար մէջ փսփսալով ահա թէ ինչ էին պատմում։

Ռէս Պէտօի անբաւ հարստութեան հոչակը տարածուելով-տարածուելով՝ մի անգամ վերջապէս էլխաթի պետ Հիւսնի բէգին հասաւ։ Բէգը շատ հայերի հարստութեան մասին լսել էր, շատերն էլ ինքն անձամբ տեսել, բայց այն, ինչ որ ինքն այժմ էր լսում, գերազանցում էր բոլորին. ինքը բէգը մի այդպիսի հարստութեան մասին երազել անգամ չէր կարող, ուստի և նա վճռեց հարուստ փլային մի անգամ «ղօնաղ» գնալ, և նրա հարստութեան գլխին մի լաւ քար ձգել։

Ձմրային մի ցուրտ օր էր, լեռ ու դաշտ վաղուց էին ծածկուել ձիւնի հաստ միակերպ սաւանով։ Ռէս Պէտօի անասունները գոմերում փնչացնելով ուտում էին պատրաստի խոտն ու գարմանը, իսկ օդայում Բ... գիւղացիք բուխարու այս ու այն կողմում շարուած ծխում էին իրանց չիբուխները և խօսում աշխարհի խէր ու շառից։ Ծերունի ռէսն էր այդ

խօսակցութիւնների այն ու համը. Նրա խելացի խորհուրդներն ու խրատական պատմութիւններն էին ամենի ուշադրութեան առարկան։ Երեկոյեան պահուն աէսի բակում յանկարծ շների հաչոց, ձիաների տրոփիւն, մարդկանց ձայներ իրար խառնուեցին. օդայում խօսակցութիւնը դադարեց և մարդիկ դուրս թափուեցին եղելութիւնն իմանալու և իսկոյն աէսին հաղորդուեց, որ Հիւսնի բէգը 50 ձիաւորներով «հիւր է» եկել։ Տէրունին շտապով դուրս եկաւ «թանգագին հիւրին» ընդառաջ։

— Ղօնաղ կուզե՞ս, աէս, օձի ժպիտ երեսին ասաց բէգը ծերունուն տեսնելով։

— Ղօնաղն Աստուծունն է, բէգ. տունը ձերն է, համեցէք, պատասխանեց աէսը։

Գիւղացիք գլուխները խորհրդաւոր ձևով օրօրելով կամաց-կամաց քաշուեցին մի տխուր նախազգացումով.— բէգի գալուստը նրանց չարագուշակ թւաց. այսպիսի «ղօնաղներ» նրանք շատ էին տեսել...

Անմիջապէս ոչխարներ մորթոտուեցին ղօնաղների համար, գարու հորի բերանը բացուեց ձիերի համար, որոնք կապուեցին աէսի ընդարձակ գոմում, և 2—3 ժամ անցած ամենքն էլ տեղաւորուած, գոհացած, կշտացած հան-

դիտ էին առնում ռէսի բնակարանի զանազան բաժիններում։

Այսպէս անցաւ մի ամբողջ շաբաթ։ Ընդհանուրի սպասածին հակառակ «ղօնաղները» ոչ մի անկարգութիւն չէին անում, բայց և գնալու ոչ մի նշան ցոյց չէին տալիս և հիւրասիրութիւնը շարունակւում էր անընդհատ, ամէն օր յիսուն ձի և յիսուն մարդ առատառատ կերակրւում էին։ Տանեցիք և գիւղացիք սաստիկ անհանգիստ էին, մտածում էին մտածում, բայց գուշակել չէին կարողանում, թէ ինչո՞վ պէտք է վերջանայ այս տարօրինակ հիւրասիրութիւնը։ Թէև զգուշութեան համար բարեկամների խորհրդով ռէսը տանից հեռացրեց իր ամենափոքր և ամենից գեղեցիկ հարսին՝ Ծաղիկին և մեծ որդու հասած աղջկան՝ Շամամին, բայց և այնպէս նա ըստ երեւոյթին անհոգ և անտարբեր էր. ասես թէ միայն նա էր հասկանում բանի էութիւնը, և ոչ ոքի ոչինչ չէր ասում։ Անցաւ այսպիսով էլի մի շաբաթ և մի գիշեր ռէս Պէտօի և իր աւագ որդու մէջ հետեւեալ խօսակցութիւնը տեղի ունեցաւ։

— Ափօ, ի՞նչղ էնինք, էն մէկ դարու խոր դարտկուաւ, խլսուն թազա՞ն բանանք, հարցրեց որդին։

Ռէսը մի փոքր մտածեց, ապա ասաց.

— Խլսուն չէ լաւ, համա էս քշեր, ուրիշ խոր ըմ բացէք, գարին զըմէն խանէք լցէք առջի գարատկ խորը, սորա (չէտոյ) թազայ բացած խորի բերան ըռհատ փակէք, որ չերևայ թէ բացած է։ Չէ մեռնիմ, էլման էրէք, որ բէգի խուլամներաց աչք վրա չիյնայ, չիմանան։ Դէ, շուտ, կանչա ախպրտիքդ։

Ռէսի կարգադրութիւնը ամենայն ճշգութեամբ և գաղտնապահութեամբ կատարեցին որդիները. առաւօտեան դատարկուած հորը կրկին լիքն էր գարիով։ Եւ այս բանը կըրկնուեց մի քանի անգամ։

Վերջապէս մի օր բէգը իր մօտ կանչեց քրդերից մէկին և հարցրեց.

— Հը՛, կուռօ, ի՞նչ հալի են ռէսի ամբարները, բիւլը քամու տուինք, թէ դեռ չէ։

— Բէգ, պատասխանեց քիւրդը, մենք մնացել ենք շուարած. գարու հորը դատարկւում է, էն է ասում ենք, պրծաւ, ռէսն առաւօտը իր ձիերը պէտք է ժախի գարի գնի. բայց ի՞նչ, գիշերը դատարկ հորը դարձեալ լցւում է. սրա ամբարները անսպառ են, մարդուն Աստուած է տալիս, տունն օջաղ է։

Բէգը չը հաւատաց այս առասպելին, կանչեց մի քանի ուրիշներին և նոյն բանը լսեց. բէգի դէմքը փախուեց, նա դուրս եկաւ և

հրամայեց անմիջապէս ձիերը դուրս քաշել և թամբել:

— Փլայի տունն օջաղ է, ասաց նա, հեծէք հեռանանք այստեղից:

Բէգը գնաց. այնուհետև շրջակայքի քրդերի մէջ լուր տարածուեց, թէ ռէս Պէտոյի տունն օրհնած է, թէ Աստուած է նրան տուել: Եւ փորձութիւնն անցաւ այս Յոբ երանելու տան վրայից, առանց վնաս պատճառելու:

Անցան հանգստութեան և երջանկութեան դարձեալ մի քանի տարիներ. ռէսի ամբարներն առաջուայ նման լիքն էին, թէև հիւրերն առաջուայ նման անպակաս էին. քուրդերը կրում էին իրանց բաժինները, իսկ շէյխ Աւդին տանում էր իր սերմացուն: Բացի սրանցից քանի՜ քանի՜ հարևան չունևոր ընտանիքներ ապրում էին բացառապէս ռէսի տնով և աղօթքներ վեր առաքում Աստուծուն արդար մարդու օջախի հաստատութեան համար: Շատերից մէկն էր և Մինօն իր Ջիւնիկ կնոջ և երկու զաւակների հետ, որոնք կերակրւում էին ռէսի սեղանից: Մինօն ռէսի ամենափոքր որդու կորիչ Մուրադի հետ ոչխարները պահելու բացառիկ պաշտօնն ունէր, և վաղուց էր, ինչ դարձել էր «տանու տղայ». ռէսը Մինօին իր որդիներից չէր ջոկում, իսկ

Մինօն էլ այս սէրը կարողացել էր արդարացնել օրինակելի հաւատարմութեամբ։

Գարնանային օրերից մէկում մի անգամ մի անակնկալ դէպք տեղի ունեցաւ, որ կայծակի հարուածով իջաւ ռէսի տան վրա և նրա յարկի տակ իշխող ուրախութիւնն ու երջանկութիւնը սուգի և տրտմութեան վերածեց

Մուրադն ու Մինօն արշալոյսից շատ առաջ սրնգի ձայնով իրանց հօտերը սովորական սարերն էին քշել, ուր յաճախակի բերում էր իր հօտը և մի քիւրդ հովիւ։ Այս երեք պաշտօնակիցները շատ անգամ էին միասին սիրով խորտիկ եփում ուտում, զրոյցներ անում, գայլերի դէմ կռւում։ Այդ օրը քիւրդի փոխանակ նրա ոչխարները բերել էր նրա քոյրը՝ սևաչեայ Գուլէն, որին եղբայրը ընկերների խնամքին էր յանձնարարել դեռ երէկուանից։ Ճաշը մօտ էր, երբ հեռւում երեք զինուած ձիաւորներ երևացին. աղջիկն այդ տեսաւ և գունատուեց. նա աղերսող հայեացք ձգեց դէպի երկու երիտասարդները։

— Ես գիտեմ, սրանք ինչու են գալիս, ձեր բախտն եմ ընկել, ինձ մենակ մի թողնէք։

Երիտասարդներն խոկոյն գլխի ընկան, որ սրանք գալիս են Գուլէին փախցնելու հակառակ իր կամքի։ Նրանց համար ժանր դրութիւն ստեղծուեց։ Աղջկան թողնել ճակա-

տագրի կամքին անհնարին էր, եղբայրը վրէժխնդիր կը լինէր և նամարդութիւն էր. կուի բռնուել եկողների հետ, փոանգաւոր էր։ Այս մտքերով էին պաշարուած երկուսն էլ, երբ ձիաւորները սրարշաւ հասան և միասին դէպի Գուլէն գիմեցին, որ խոյս տուեց դէպի երիտասարդները։ Մուրադն ու Մինօն առաջանցան և փորձեցին խնդիրը քաղցրութեամբ վերջացնել։

— Երա՛ներ, (եղբայրներ), ասաց Մինօն, այս աղջիկը մեր ընկերոջ քոյրն է, և այսօր մեր խնամքին է յանձնուած. դուք ինքներդ էլ հասկանում էք, որ այդ պատճառով մենք պատասխանատու ենք սրա կեանքի համար, խընդրում ենք թողէք սրան այսօր, մենք տիրոջը յանձնենք, որ նամարդ չը լինենք, յետոյ դուք գիտէք։

— Տօ՛, ֆլայի կտորներ, ձեր ի՛նչ բանն է, պոռաց մի ձիաւոր. հեռու, ձեզ ասում եմ, թէ չէ... Նա սպառնաց հրացանով։

— Ձենք թողնի, վճռողաբար կրկնեց Մինօն, որին պինդ փաթաթուել էր Գուլէն։

Քիւրդը կատաղած՝ հրացանը պարպեց. Մուրադը նրան պատասխանեց. էլի մէկ երկու անգամ հրացանները արաքտրաքեցին, և Մինօն ու մի քիւրդ անշնչացած ընկան. Մուրադը ծանր վիրաւորուած երկու ձեռքով

բռնեց կուրծքը, իսկ գոռացող աղջիկը տարուեց: Հայ և քիւրդ գիւղերից հասած «հաւարը» անօգուտ անցաւ. Մուրադը թօթով լեզուով հազիւ կարողացաւ համառօտ կերպով անցքը նկարագրել և հոգին փչեց:

Բ... գիւղում ընդհանուր սուգ տիրեց, երբ երկու դիակները բերին սայլերով: Ամենքն էլ ողբում էին, իսկ երկու այրիների և Խաթուն Մարէի ողբն ու վայնասունը ապառաժ քարերից արիւն-արցունք էր քամում: Մինօի կին Զիւնիկը իր «Թագ ու պսակ, իր գըլխաւոր էրկան» լալով հանդերձ, սգում էր և իր անտէրութիւնը և իր զաւակների «եթիմութիւնը»: Տէրունի ռէսը վշտից ջարդուած կանգնած էր դիակների գլխավերևը և թէև կրկնում էր «փառք քեզ Աստուած», բայց և արտասուքները ծեր աչքերից գլորւում էին ալէզարդ միրուքի վրայից կաթիլ կաթիլ և թրջում էին նրա կուրծքը: Թաղումը վերջացաւ. սուգը դադարեց: Ռէսը կարգադրեց, որ Զիւնիկը իր երկու որբերով մի անգամ ընդ միշտ անտէր ամայի տնից տեղափոխուի իրանց՝ ռէսենց տունը. տանեցոց էլ խիստ պատուէր տուեց սիրով և քաղցրութեամբ վարուել Մինօի ընտանիքի հետ, տան անդամներ համարել նրանց:

— Եթիմի սիրտը փուխր կեղնի, շուտ կը կոտրի, խով էրես շանց չը տաք էնոնց, ասաց ռէսը իր ընտանիքին։

Ռէսի յարկի տակ Ջինիկը գտաւ միայն տաք և սիրող սրտեր, ասես թէ իր հարազատներով շրջապատուած լինէր. Նա մի փոքր մխիթարուեց, զգալով՝ որ իր զաւակները անտէր չեն. ժամանակն էլ, սրտի ամեն տեսակ ցաւերի այս բուժիչը, իր սպեղանին դրեց նրա մորմոքացող վէրքի վրա, մի փոքր հանգստացրեց նրան, և Ջինիկն ըստ երևոյթին հաշտուած իր նոր վիճակի հետ, սկսեց խաղաղութեամբ ապրել ռէսի տանը և սրտով աշխատել այդ տան համար. միայն կարիճ Մինօի՝ իր սիրած ամուսնու կսկիծը ներքուստ նրան տանջում էր և գիշերային խաւարի մէջ ամենից ծածուկ արտասուքներ քամում նրա աչքերից։ Իր այդ վշտի սփոփանքը բոլոր տանեցիներից նա գտնում էր ծաղիկ Խաթունի մէջ, որը իր ընկերը կորցրած թռչնի պէս նոյնպէս վշտահար էր, նոյնպէս կարօտ էր սփոփանքի։ Երկու այրիները կապուեցին իրար հետ ընդհանուր վշտի անքակտելի կապերով, խառնեցին իրար իրանց ցաւերը և հաւասար ուժով տանել սկսան, որպէս զոյգ ամոլներ։ Նրանք միասին էին գնում ամուսինների թարմ գերեզմանները

և իրար գրկած սգում նրանց վաղաժամ մահը, և ապա փոխադարձապէս մխիթարում իրար, որպէս երկու սգաւոր քոյրեր։

Տաղիկ և Զիւնիկ մանկութեան ընկերուհիներ էին, միասին էին խաղացել և զուարճացել անմեղ մանկութեան երջանիկ օրերում, միասին էին թափառել ծաղկաւէտ սարերն ու ձորերը, միասին էին քաղել բանջարներ ու ծաղիկներ, միասին էին յօրինել կուսական առաջին սուրբ սիրոյ երգերը և համարեա միաժամանակ իրանց սրտերը տուել էին մէկը՝ Մուրադին, միւսը՝ Մինօին։ Ամուսնանալուց յետոյ մի առ ժամանակ միայն մէկի հարստութիւնն ու փիրքը, միւսի աղքատութիւնն ու խեղճութիւնը խախտել էր ճակատագրի այս տարօրինակ զուգադիպութեան հաւասարակշռութիւնը, բայց նոյն ճակատագրին հաճելի եղաւ այդ երկու սրտերը դարձեալ միասին ջարդել, նրանց միասին թշուառացնել, և նրանց վիճակների նմանութիւնը վերականգնել։ Եւ Տաղիկն ու Զիւնիկը ինչպէս որ միասին էին թագն ու պսակին արժանացել, միաժամանակ վայելել սիրոյ հեշտանքներն ու երջանկութիւնը, այնպէս էլ միասին այրիացան, սև կապեցին։ Լերան կրծքին մոռացուած զոյգ ուշացած ծաղիկներ էին սրանք, որոնք վրա հասած աշնանային ցրտից նեղուելով,

իրանց թառամած գլխիկները իրար էին կպցնում, քաշ ձգում, ասես կամենալով գուրգուրուել, փաթաթուել, փարուել իրար միայնութեան և վշտի դառնութիւնը մոռանալու համար։ Այսպէս էին մխիթարւում երկու այրիները։

Դարձեալ անցան օրեր և ամիսներ. տան մէջ խաղաղութիւնը կրկին վերականգնուեց, կսկիծն ըստ երեւոյթին մոռացուեց, բայց ռէս Պէտօն մռայլուեց, հարուածը նրա համար շատ ծանր և անսպասելի էր։

— Փառք քեզ Աստուած, կամք քո օրհնեալ եղնի, թէև կրկնում էր նա յաճախ ըստ իր սովորութեան, ամենայն մի ձախորդութեան և աջողութեան մէջ Աստուծոյ անհասանելի կամքը փնտրելով, բայց և այնպէս մռայլը նրանից չէր հեռանում, ծեր ճակատի վրա կնճիռներն աւելացան, նա աւելի երկար էր մեն-միայնակ նստում օդայում, աւելի սակաւ էր ուրիշների հետ խօսում և խիստ յաճախ ինքն իրան։ Տխուր նախազգացումը նրան օր ու գիշեր հանգիստ չէր տալիս. նրան թւում էր, թէ այս թշուառութիւնը գալիք աւելի մեծ թշուառութեան կարապետն է. «Արցունքը գուլում կը ծնի», ասել էր նրան իր հայրը շատ տարիներ առաջ և այդ «գուլումի» վախը նրա սրտից չէր անցնում։

— Ախր երկու «մեյիդ» մէ խէտ, էս իմալ եղաւ. հալբաթ մեղաւոր եմ, Տէր մեղա քե երկու սևաւոր որբեր մէ՞ տան մէջ. Աստուած դու բարին կատարես,—այսպէս էր խօսում նա ինքն իրան շատ անգամ։

Երբեմն նայելով իր շէն տան վրա, իր չորս կողմն, առողջ որդիների վրա, կայտառ մեծ ու փոքր թոռների ուրախ կանչկռտոցը լսելով, ինքն իրան սիրտ էր տալիս, մխիթարում, աշխատում էր հեռացնել իր սրտից թախիծը, հեռացնել իրանից սխուր նախազգացումը։ Այդ ժամանակ նրան թւում էր, թէ զուր է այդքան վշտանում, զուր է այդքան կասկածում, վախենում. աշխարհումս ո՞վ վիշտ չի ունեցել, ո՞վ է անպայման բաղդաւոր եղել, ո՞ւմ դռնից դաղաղ ներս չի մտել, ո՞վ սիրելիների գերեզման չունի։

— Ելի փառք եղնի քե Աստուած, ես անարժան, մեղաւոր մարդ եմ. էսա շէն տուն, էսա սաղ սալամաթ տղէկներ, էնոնց խօրոտ մօրոտ ճժեր զըմմէն լէ քո խովլի տակ կապրեն, ես քեմէ ռազի եմ, Տէ՜ր, էնա արնակոլոլ բէմուրաղներին լէ դու տուիր, դու տար, հազար բերան փառք քե, օղորմած Տէր, ասում էր նա, ապա նոյն օրը շտապ-շտապ գնում էր եկեղեցի, երկար, շատ երկար և

չերմեռանդ աղօթում էր, յետոյ ծունկ էր չոքում քահանայի առաջ:

— Տէրտէր, մեռնիմ քո աջուն, Աստուծոյ առաջ տրտունջ էնելը մեղք չէ՞:

— Մահացու մեղք է, ռէս, մահացու մեղք.

— Դէ թողութիւն տուր ձի, տէրտէր, ես մեղաւոր մարդ եմ:

Քահանան ասում էր «ողորմեսցին» ծերունու այեզարդ գլխի վրա, և սա հանդստացած, խաղաղ հոգով տուն էր գալիս, գոհ և ուրախ լինելու հաստատ վճռով: Այսպէս անց էր կենում մի երկու օր: Սակայն սև կապած երկու այրիներն իրանց վշտահար դէմքերով և միշտ արտասուագին աչքերով, որբ մնացած չորս մանուկները, որոնք ամեն րոպէ շրջում էին նրա աչքի առաջ՝ դարձեալ ցաւերի, տխուր նախազգացումների մի անսպառ աղբիւր էին դառնում նրա համար. կնճիռները կրկին կուտակւում էին նրա ծեր ճակատին, սիրտը դարձեալ մթնում էր որպէս սև գիշեր, տխուր նախազգացումները կրկին պաշարում էին նրան և նա դողում էր այդ անխուսափելի նախազգացումից, որպէս չար հրեշտակից: Նա վախենում էր մանաւանդ այրիների աչից, և ի սրտէ ուզում էր, որ այդ երկու կանայք այլ ևս չը սգան, գաղտնի չարտասուեն. նա համոզուած էր խորին կեր-

պով, որ երբ տան մէջ պատահած դժբախտութիւնից յետոյ արտասուքն անընդհատ շարունակւում է, երբ մարդ չի ուզում խաղաղուել իր նոր, թէկուզ շատ ծանր վիճակի հետ, չի կ՚օրհնում փառք տալ Աստուծուն, այդ նշան է, թէ այդ տանը նոր և աւելի մեծ դժբաղդութիւն է պատահելու, որ հին թշուառութեան արտասուքը նոր արտասուքի պիտի խառնուի։ Նա այդ ժամանակ իր կասկածամտութիւնն ու երկիւղն էլ բացատրում էր հարսների անընդհատ սգով, մեղադրում էր նրանց իր սրտի խորքում, բայց ոչ ոքի ոչինչ չէր ասում, վախենում էր թշուառներին էլ աւելի վշտացնել։ Մի անգամ վերջապէս, հոգ՚կան վրդովմունքի խիստ րոպէին արտասուք տեսնելով Ծաղիկի աչքերին, ասաց Խաթուն Մարէին.

—Կնի՛կ, էսա Ծաղիկն ու Ջիւնիկը չուն ե՞փ տիլան, ընչի՞ բեղախմութիւն կէնեն, աչքերն ամա՞լ կայ... Ախր չէ՞ էս ա տուն ափսոսի, էս ճժեր մեղք են, Աստուած կր դայրանայ, աղէկ չէ, էնոնք չե՞ն գինայ օր արցունքը զուլում կը ծնի։

—Քա՛ մարդ, ես ի՞նչ ընեմ, ի՞նչ խող տամ գլխուս, ապա ես չե՞մ ասե, կոտրած սրտին խրատն ի՞նչ էնի, ասելով բան կէղնի՞, ուրախութիւնը սրտից տի բղխի։

Եւ Ծաղիկն ու Զիւնիկը տխուր ու վշտահար, նրանց աչքերը միշտ թաց մնացին, արտասուքը ռէսի տնից չը պակասեց, տխուր նախազգացումը չը թողեց ծերունուն, մինչեւ որ հասաւ այն սեւ տարին։

Գարնանային պայծառ լուսաշաղ օրը մօտեցաւ երեկոյին. արեւի լուսաւոր գունդը յետ քաշելով իր ոսկեայ ցնցուղները լեռների կատարներից՝ ժամկուեց հորիզոնի ետեւ. շառագոյն արեւմուտքը գունատուեց. երեկոյեան աղջամուղջն իջաւ լեռների եւ դաշտերի վրա եւ շուտով համատարած խաւարի մէջ Բ. գիւղը հանգիստ քնեց օրուայ աշխատանքներից յետոյ անգէտ եւ երջանիկ։

Կէս գիշերը մօտ էր. յանկարծ գիւղը հիմնիվեր դղրդաց մի սարսափելի որոտից, որ սասանեցուցիչ արձագանքներով գնաց կրկնուելու լեռներում ու ձորերում։ Հեղե՞ղ եկաւ, թէ՞ գետերն իրանց ընթացքը փոխեցին. ծովե՞րը դուրս թափուեցին լեռնացած ալիքներով, թէ՞ սարերը յանկարծ փուլ եկան դաշտացան. սեւ, մթագին ամպ էր, որ որոտաց, թէ՞ երկինքը փուլ եկաւ աշխարհը կործանեց. գետի՞նը պատռուեց եւ սանդարամետի դեւերը դուրս հանեց, թէ մի ահռելի կայծակ էր, որ հսկայական ձայնով ճայթեց Բ... գիւղի գլխին եւ բիւրաւոր հրեղէն լեզուներով միանգամից

հրդեհեց խրճիթներն ու խոտի դեզերը,— այդ սկզբում ոչ ոք չիմացաւ. միայն երբ սոսկալի ձայներից խելագարութեան չափ սարսափած բնակիչները դուրս թափուեցին, իրանց գտան բոցերի և գնդակների մէջ։ — Քիւրդերի մի ահագին բազմութիւն սրով և կրակով կործանում էր Բ... գիւղը՝ բնակիչներին առանց խտրութեան սեռի և հասակի սրի ճարակ դարձնելով։ Դիտապաստ ընկածների ոռնոցը, մեռնողների վերջին սրտաճմլիկ հռնգիւնը, կենդանիների վայն ու ճիչը, կանանց ու երեխաների աղիողորմ ձայները, գթութիւն հայցողների աղերսանքը լցրել էր ծխապատ շրջակայքը։

Անօրէնները թակեցին ռէսի դուռը, տղամարդիկ դուրս թափուեցին բակը, նրանց հետևեց բոլոր մնացած բազմութիւնը։ Գիւղի հսկայական լուսաւորութիւնը, լսուող յուսահատական ձայները նրանց աչքի առաջ ամենայն ինչ պարզեց։ Ամենքը սարսափից բըռնուած մի քանի րոպէ կանգ առան լուռ, անմռունչ, իսկ երբ դրան ահաւոր շրխկոցը կրկին և կրկին լսուելով նրանց հանեց շուարումից, կանայք և երեխաները սարսափելի վայնասուն բարձրացրին։

—Բացէք, գոռում էին դրսից, թէ չէ...

— Ի՞նչ էնենք ախօ, ասաց Արքէն, դուռը ջարդէն։

— Բացէ՛ք, կարճ կերպով ասաց Ծերունին մահուան դատապարտուածի աներկիւղութեամբ և ամբողջ ընտանիքի բախտը ճակատագրին յանձնելով։

Երկուսը ահով մօտեցան և նիգը յետ քաշեցին. դրսի ճնշումից դուռը սաստիկ շրխկաց և տասնեակ հրացաններ ճայթելով ծխով պատեցին ամենայն ինչ։ Վայրենիների մի կատաղի խումբ ներս խուժեց զարհուրելի աղաղակներով. այնուհետև թէ ինչ կատարուեց, խաւարն ու ծուխը արգելեցին տեսնել. լսում էին միայն հոգի խլացնող, սրտաճմլիկ ձայներ. խաւարի մէջ գործում էր պողվատը։ Երբ բոցավառուած խրճիթը լուսաւորեց բացը, մի զարհուրելի տեսարան բացուեց. — Ծերունու երկու որդիները, գնդակահար ընկած, մահուան տագնապի մէջ ոլորւում, կծկւում էին, գետնի վրա քաշ գալով. միւս երկուսը մի խումբ գազանների սրերի մէջ դեռ պաշտպանւում էին... Էլի մի երկու րոպէ և նրանք էլ ընկան հոգեվարքի հառաչանքներով։ Ծերունի ռէսն այդքանը տեսաւ։ Մի օրօրոց՝ ճվճվացող մանուկը մէջը՝ օդի մէջ սոսկալի պտոյտներ գործելով՝ ընկաւ խրճիթի բոցերի մէջ. Նրան հանելու համար հրդեհի մէջ ձգեց

իրան ուէսի մեծ հարսը։ Փոքրիկ հինգ տարեկան Յուսիկին տնից դուրս քաշելով մի անօրէն սրով կես արեց։ Տերունին այդ էլ տեսաւ. «Ինձ զարկէ՛ք, ինձ մորթեցէք», գոռում էր նա. բայց անօրէնները նրան մոռացել էին։ Մի վայրենի քիւրդ՝ երկար, շէկ ծամերից բռնած քաշեր տալիս գեղեցիկ Շամամին, ուէսի կոյս թոռանը։ Մարէ Խաթունը կախուել էր Շամամի ձեռքից, բայց երբ անկարող եղաւ յետ քաշել զոհին, վազեց մի ահագին քար վերցրեց և սրահի թմբի վրա բարձրանալով՝ ուժգին թափով քրդի գլխին իջեցրեց, որն արիւնաշաղախ, փշրուած գանգով ընկաւ ոտնոցով. իսկ նրա ընկերը սրի մի հարուածով գետին տապալեց Խաթուն-Մարէին։ Տերունին այդ էլ տեսաւ և այլ ևս ոչինչ չը տեսաւ. Նրա ոտները դողդողացին, գլուխն երերաց, աչքերը մթնեցին և մի ծանր, երկար «ա՜խ» քաշելով գետին գլորուեց ուշաթափ։ Ամէն ինչ վերջացաւ... «Փլայի» սուրբ օջաղն էլ քրդերը քանդեցին...

---

## II.

## „ԽԱԹՈՒՆԻ՛Ս ՍԻՐՈՒՆ".

Աշուն էր, մի ցուրտ ու տխուր օր. երկնքի սև միապաղաղ թղպերից բարակ մանրամաղ անձրևը մի քանի օր շարունակ գալիս էր ու գալիս, ասես սգաւորի աչքերից։ Ճանապարհներում, փողոցներում անցուդարձը անտանելի էր դարձել, մարդիկ հազիւ էին փախում իրանց տները հաստ տիղմի մէջ։

Այդ ժամին Ի... գիւղի մի ծայրից երևաց մարդկային մի տարօրինակ կարաւանի սկիզբը, մի չը տեսնուած ամբոխ։ Գերեզմաններից դուրս փախած մեռելների մի խումբ էր դա, որ դանդաղ, յամրաքայլ առաջ էր ընթանում։ Մեծ ու փոքր, ծեր ու մանուկ, մարդ ու կին, ամենքն էլ գզգզուած, վտիտ մարմիններով, վշտահար դէմքերով։ «Գաղթականներ են», կարճ կերպով շշնջացին տեղացիները և ամեն մարդ գնաց իր գործին։

Անձրևը շարունակում էր թափուել. Նրանց ողորմելի ցնցոտիները թրջուած կպել էին նրանց վտիտ մարմիններին։ Մարդիկ իրար ձեռքից բռնած, իրար քաշքշելով քայլում էին լպրծուն ցեխի միջից, ուժասպառուելով երբեմն-երբեմն վայր էին ընկնում, ցեխի մէջ

կոլորւում և կրկին վեր կենում այլանդակուած։ Լուռ էին ամենքն էլ, դէմքերի վրա յուղարկաւորի լրջութիւն կար. հսկայական դամբարանից էին գալիս, ուր դեռ նոր էին հողին յանձնել հարիւր հազար սիրելի հարազատներ։ Մերձաւոր, թարմ անցեալի սարսափը, անորոշ ապագայի մտահոգութիւնը ճակատներին, այս մարդիկ բերում էին ի տես աշխարհի իրանց անպատմելի վշտերը՝ մարմնացրած իրանց չորացած դէմքերի, պատառոտուած, ծլանքներով կախ ընկած ցնցոտիների, յուսահատ շարժումների, խղճուկ ձայների և խօսակցութեան մէջ։ Արեան ծովից էին անցել և եկել մի պատառ հաց, մի կաթիլ ջուր, մի տաքուկ անկիւն հայցելու և յուսով էին, թէ այս աշխարհը նրանց չի զլանայ այդ շնորհը։

Եկան և անցան։ Ամենից վերջը բաւականին յետ մնացած և նոյնպէս թրջուած, նոյնպէս ուժասպառ գալիսն էին մի ծերունի և մի նորատի կին, իւրաքանչիւրը մի 7—8 տարեկան երեխայի ձեռքից բռնած։ Ծերունին ցեխի հաստ շերտի մէջ հազիւ էր կարողանում իր ոտները փոխել. Նրա մէջքը կորացած էր, աչքերը մարած և խոր ընկած, որոնց մէջ արտացոլում էր վշտի մի անսահման ծով։ Գլխի ճերմակ ալիքներն ու միրուքը թրջուելով, ոլոր-ոլոր կախկխուել էին ուսերի

և կրծքի վրա բազմաթիւ պատրոյգների ձեւով, և նրանց ծայրերից կաթիլ կաթիլ թափւում էր անձրեւի ջուրը ու թրջում բաց պարանոցն ու մազոտ, ոսկրացած կուրծքը։

Ոչ պակաս դժուարութեամբ էր քայլում և Նորատի կինը իր ձեռքի երեխայի հետ. վերջինս մանաւանդ հազիւ էր կարողանում իր փոքրիկ ոտները շարժել սառը ցեխի մէջ և համարեա քաշ էր ընկել մօր ձեռքից, դժուարացնելով նրա գնացքը։

Սրանք էլ եկան անց կացան, սրանք էլ ոչ ոքի ուշադրութիւն չը գրաւեցին։ Եւ ինչո՞ւ պիտի գրաւէին. քի՞չ էին այդպիսիները եկել անցել, Եւ ոչ ոք չիմացաւ, որ այս ջարդուած, վշտահար ծերունին ռէս Պէտօն է, հազարաւոր ոչխարների, հարիւրաւոր այլ անասունների և անհատնում ամբարների, օրհնած օջախի հռչակաւոր տէրը, իսկ Նորատի կինը նրա հարսն է՝ Ծաղիկ խաթունը իր երկու զաւակներով։ Սրանք էին միայն փրկուել ռէսի բազմաթիւ ընտանիքից. դիակների կոյտերի տակ ուշագնաց մնալով. մնացած քսան և վեց հոգին կամ սրին ու կրակին էին զոհ գնացել, կամ տարուել որպէս անօրէնների պագշոտութեան առարկաներ, կամ գլուխ առել փախել էին ով գիտէ ուր…

Բախտի բոլոր այս խորթ զավակները ներս թափուեցին Ի... գիւղը և այս ու այն տան մէջ, այս ու այն սաքւում, պատերի տակ կուչ եկան հանգիստ առնելու, տաքանալու, դորմութեամբ ձեռք բերած մի քանի պատառ հացն ուտելու։

Մէկ աւերակ տան ամայի սրահն էլ ռէս Պէտօին բաժին ընկաւ։ Արդէն մութն էր, երբ հուչակաւոր օջաղի վերջին մնացորդները ցրտից դողդողալով, ուժասպառուած թափուեցին սրահի մէջ, իրար վրա կուչ եկան մի հատիկ գզգզուած փալասով փաթաթուելով, որ տուեց նրանց մի աստուածասէր մարդ։

Մութ էր. լուռ էին ամենքն էլ. միայն ծանր թուխպերից կամաց-կամաց մաղուող միակերպ անձրևի մանր կաթիլներն ընկնելով գետնի երեսին այստեղ այնտեղ կազմուած փոքրիկ լճակների հետ՝ մեղմ ճղփիւն էին առաջացնում, որը սակայն խիստ անախորժ ազդեցութիւն էր գործում տաքութեան կարօտ դողդողացող թշուառների վրա. լսւում էր ռէսի ծանր տնքոցն ու հառաչը, յուսահատ «օ՜ֆ, օ՜ֆ ֆալաք» բացականչութիւնները։

— Մարէ՛, անօթի եմ, մրմնջաց փոքր մանուկը։

— Անօթի եմ, Մարէ ջան, միացաւ նրան և միւսը։

Լուռ էր Ծաղիկը, լուռ էր և ռէս Պէտօն, ոչ մէկը չը գիտէր թէ ի՞նչ պատասխանով հանգստացնի մանուկներին։

— Մարէ՛, կրկին լսուեց խաւարի մէջ փոքրիկի լացակումած ձայնը։

— Քնի՛ր լաօ, քնիր լաօ, սկսեց հանգստացնել նրան մայրը, թող լուս բացուի, խլսուն ձե խաց կուտամ, մեռնիմ ձեզի, մկայ ես դո՞ր էրթամ, կը տեսնա՞ք իմալ մութա։

Պատճառաբանութիւնը մանուկներին հիմնաւոր թւաց. նրանք խաւարից սարսափում էին. Օ՜, ինչե՛ր էր կատարուել այս խաւարի մէջ, ինչե՛ր էին տեսել իրանք մանուկները այն գիշերը... «Մարէն դո՞ր էրթա, «էնոնք» կը կտրեն», մտածեցին նրանց փոքրիկ գլուխները։ Մանուկներն աւելի մօտ սեղմուեցին իրանց մօրը և լռեցին։ Կրկին տիրեց լռութիւնը, կրկին լսուեց անձրևի կաթիլների մեղմ, անախորժ ճղփիւնը և ծերունու «օֆ օֆ» հառաչանքները։ Ծաղիկը գոհ էր, որ գոնէ կարողացաւ մանուկներին յուսով հանգստացնել, բայց և ծանր մտքեր պաշարեցին նրան. առաւօտը ի՞նչ տեղից պիտի հաց ճարի. գնալ մուրա՞լ... ռէս Պէտօի հարսը հա՞ց մուրա... մահն աւելի լաւ չէ՞... մեռնողները

աւելի բախտաւոր չե՞ն... Իսկ ծերունի՞ն, նա շարունակում էր տնքալ, նա այրւում էր, նա տենդի մեջ էր։ Ահա վերջապես նա ընդհատեց լռությունը, ինքն իրա՞ն էր խոսում, թէ՞ հարսի հետ, այդ յայտնի չեղաւ։

— Անձրև կուգայ ծրծըլալէն, ե՞րբ տի կտրի, երկիր կը խարցնի՞... դէ երկինք ի՞նչ թափեց, որ երկիր ղաբուլ չէրեց. թափի՜ր երկինք, թափիր, թող սէլաֆ էրկիր բռնի, թող գետեր գրմգրմալէն էլնեն բռնեն երկրի երես. երկիր ե՞րբ ձէն կը խանայ, Աստծու խէրն է, բարին է, փառք քե Տէր. երկինք ի՞նչ թափեց, օր երկիր ղաբուլ չէրեց, թափիր երկինք...

Նա մի փոքր լռեց, ապա կրկին շարունակեց։

— Ճժեր անօթի են, հայ հո՜ւ, ռէս Պէտօի ճժեր անօթի են... «էնոնք» անօթի չեն, Ծաղիկ, էլման չի՞ լաօ, էնոնք կուշտ պառկած են. էսոնք են անօթի. է՛հ, ի՞նչ էնենք, երկինք ի՞նչ թափեց, որ երկի՛ր ղաբուլ չէրեց. էսոնք լէ երկրի զաւակներ չե՞ն... Թափիր երկինք, թափիր համա սէլաֆ չինիր, տար էսա ճժերին լէ, էլ անօթի չեն եղնի...

Ծերունին լռեց, գլուխը կրծքին քաշ գցեց։ Եթէ լոյս լինէր, կարելի էր տեսնել, թէ ինչպէս են վառւում նրա խոր ընկած աչքերը,

դողդողում շրթունքները. Նրա կնճռոտ ճակատն ու չորացած այտերն այրւում էին տենդով, ասես բոցերի մէջ, և գլուխն օրօրւում էր ցնցելով ալեզարդ միրուքը: Ծերունու խօսքերը սարսափեցրին Ծաղիկին և ճմլեցին նրա սիրտը. Թարմ, սարսափելի անցեալը խաւարի մէջ ներկայացաւ նրա աչքերին:

— Ծաղիկ ջան, էլի՞ կուլաս... Օ՜ֆ, դու ինչղդար լացար լաօ... Ես չեմ լայ, ես իմա՜լ լամ. ախր իմ արցունք վէր ո՞ր մէկ կրակին թափեմ: Երկինք օղորմածի, կը տեսնա՞ս, կուլայ իմ տեղաք, դուն լէ լաց լաօ, ես քե առաջ կասի—«արցունքը գուլում կը ծնի», ես լախրթի կէնի, սուտ կասի, արցունքը գուլում չի ծնի. լա՛ց, թող սէլաֆ էղնի, մենք լէ էրթանք, սէլաֆը մեզ ղաբուլ ի. երկինք ի՞նչ թափեց, որ երկիր ղաբուլ չէրեց. կը տեսնա՞ս, էրկնուց ծլծլալէն իմալ կուգայ էստ անձրև. երկիր սուս, մունչ ներս կը ծծի, որ երկնուց արուն թափի, երկիր էլման ներս կը ծծի. տեսա՞ր լաօ, էնա մեր բաղ պուտըմ արուն չը մնաց, գըմծէն գետին քաշեց ուր ջան... Ա՜խ, երկինք ի՞նչ թափեց, որ երկիր ղաբուլ չէրեց, մենք լէ երկրի զաւակներ չե՞նք...

Դարձեալ լռութիւն տիրեց, միայն լսւում էր ծերունու ընդհատ ընդհատ շնչառութիւնը և հառաչանքները: Նա հիւանդ էր, շատ հիւանդ. դառնութեան բաժակը լցուել էր, թշուառութիւնը վերջին հարուած էր տալիս այս քայքայուած կազմուածքին: Անցած ժամեր: Ծաղիկն անքուն հսկում էր ծերունու վրա. նա զգում էր, որ հիւանդի վերջին ժամերն են: Յաւիտենականութեան չափ երկար գիշերին յաջորդեց վերջապէս առաւօտը. ծերունին այլ ես ոչինչ չէր խօսում, նրա աչքերի տենդոտ հայեացքն այժմ անորոշ էր:

Ծերունու այս ու այն կողմից փալասի տակից դուրս սողացին երկու գզգզուած մանուկները և համարեա միաբերան հաց խնդրեցին: Ծաղիկի աչքերը լցուեցին արտասուքով. առաջը պառկած էր մեռնող ծերունին, իր հայրը, իր որբերի հովանաւորողը, երկու զաւակները «հաց» էին աղաղակում. ի՞նչ անել, մտածում էր նա: Ահա նա մօտեցաւ, զգուշութեամբ տեղաւորեց փալասը մեռնողի վրա, աչքերը սրբեց և դուրս գնաց, շուտով վերադառնալու հաստատ որոշումով: Երկու որբերը նստեցին հիւանդի այս ու այն կողմերում, իսկ նրանց մայրը գնաց հաց մուրալու...: Ահա նա արդէն մի դրան առաջ կանգնել է.

մանե՞լ, թէ՞ չը մանել. ախր ի՞նչպէս ուզել, ի՞նչպէս խնդրել... Վերջապէս նա սիրտ արեց ու մտաւ կամացուկ, անվստահ քայլերով և տան դրան առաջ մի սիւնի ետեւում կանգ առաւ, աչքերը գետին խոնարհեց և ոտքի ծայրով սկսեց խառնել ցեխի մի կտոր:

— Ի՞նչ կուզես, բաջի, հարցրեց տանտիկինը:

Երանի՜ թէ այդ հարցի փոխարէն նրա գլխին մի ծանր հարուած իջնէր, երանի թէ մի ամպ ճայթէր և կայծակը զարկելով միանգամից այրէր, մոխիր դարձնէր Ծաղիկին և նա զոհ կը լինէր. բայց այժմ ի՞նչ պատասխանել, ի՛նչպէս ասել «հաց եմ ուզում», մտածեց շփոթուած կինը և պատասխանի փոխարէն սկսեց հեկեկալով լալ: Տանտիկինը երեւի հասկացաւ նրա այդ ներքին կռիւը, նա լռութեամբ ներս մտաւ, բերեց հացի մի ծալ և տուեց արտասուող կնոջը, որ փաթաթեց գոգնոցում և դուրս գնաց:

Բակի դրանը նա յանկարծ կանգ առաւ քարացած. նա իր աչքերին չը հաւատաց, երբ տաս քայլ իրանից հեռու կանգնած տեսաւ Զիւնիկին, որ ո՞վ գիտէ կոտորածից ինչպէս էր ազատել գլուխը և այստեղ հասել: Զիւնիկը նոյնպէս վշտահար, նոյնպէս գզգզուած կանգ առաւ և խորին ցաւակցութեամբ ու խան-

գաղատանքով երկար նայեց Ծաղիկին։ Ապա մի անօրինակ ձայնով վազեց և իր տիրուհու ոտներն ընկաւ գոչելով.

— Վա՜յ, կուրնան աչերս, Ծաղիկ խաթուն, դո՞ւն լէ խաց կը ժողովես. երկինք իմա՞լ դաբուլ էրեց, որ ռէս Պէտօի խարսը, Ծաղիկ խաթունը խաց ժողվայ. դէ դու պատուվէր է է՜, գետին, էսա իմ սևաւոր գլուխ ներս առ, չը տեսնիմ բարի։ Զիւնիկը քո ոտաց մատաղ, Ծաղիկ խաթուն, գլուխս հէյրան քո աւեր օջախի քիւլին, խաթուն ջան, էս ի՞նչ էղաւ, մէկ տեղ ուրխցանք, մէկ տեղ սգացինք, մէկ տեղ արուն տեսանք բօլ չէ՞ր, մկայ էլ մէկ տեղ խա՞ց ալ ժողվենք...

Անցորդները հետաքրքրուելով չորս կողմից շրջապատեցին այս սգացող կանանց։ Ծաղիկն ինչ անելը չիմանալով սառած կանգնել էր, ապա բարձրացրեց գզգզուած դոգնոցը աչքերի արտասուքները սրբելու, մինչդեռ այնքան դժուարութեամբ ձեռք բերած հացը վաղուց էր ընկել ցեխի մէջ։ Իսկ Զիւնիկը շարունակում էր նրա ոտների տակ ծունկ չոքած սգալ։

— Էրիկս քո օջաղին մատաղ տուի, ցաւս քիչ էր, ծաղուկներս, իմ եթիմ բալաներս ճվճվալէն քո օջաղի շեմին մորթեցին, էդ ցաւն էլ տարայ. ապա էսա ցաւ ես իմա՞լ

տանիմ, իմ աչքի լույս, իմ սրտի սէր, իմ խոքու կէս, իմ լույս ճրագ, իմ մխիթարանք խաթունս խա՞ց ժողվայ…

Ապա վեր կենալով թևից բռնած քաշեց ողբացող Ծաղիկին։

— Քէլա, քէլա, քե մեռնիմ, թող իմ խոքին էղնի քե խմար, դու խաց մի ժողվա, ես սևաւորս երկրէ երկիր, դռնէ դուռ կրնկնիմ, իմ խաթունիս սիրուն խաց կը ժողվեմ, թաք դու խաց մի ժողվա։

Բազմութիւնը յետ քաշուեց և երկու թշուառներն անցան արտասուելով։ Մինչ այս տեսարանը տեղի էր ունենում դրսում, այնտեղ, սրահի մէջ՝ ռէս Պէտօն մահուան տագնապի մէջ էր գտնւում։ Նա աչք ածեց իր շուրջը, ասես բազմաթիւ զաւակների, թոռներին փնտռելով, որ իր վերջին օրհնութիւնը տայ և բոլորի փոխարէն երկու փոքրիկ թոռներին գտաւ իր աջ ու ձախ կողմերում․ ձեռքերը հանեց փալասի տակից, դողդողալով մեկնեց դէպի մանուկները նրանց գրկելու, վերջին համբոյրը տալու համար և հազիւ կարողացաւ միայն մի ձեռքը փոքրիկի պարանոցը ձգել, իսկ վերջին համբոյրը սառեց շրթունքներին և նա փչեց իր վերջին շունչը։ Երկու փոքրիկները ճչում էին, երբ Ծաղիկը

և Ջինիկը հասաւ և միասին ընկան անշնչացած դիակի վրա…

—

Ի… գիւղում Տաղիկն ու իր զաւակներն այլ ևս չեն երևում, միայն փողոցներում տների առաջ միշտ կարելի է տեսնել մի աղքատ, նուաղ կին, ցնցոտիների մէջ կոլոլուած, որ նիհար ձեռքը մեկնում է դռներից, մեկնում է անցորդներին ողորմութիւն է խնդրում։

— «Խաթունի՛ս սիրուն ողորմութիւն տուէք» ասում է նա խղճուկ, աղերսող ձայնով. դա Ջինիկն է, որ իր որբացրած խաթունի սիրուն ողորմութիւն է հաւաքում և նրան որբերի հետ կերակրում։

1896 Թ.

## ՌԱՇԻԴ

---

Շատ տարիներ առաջ իշխում էր մեր երկ-րում մի վայրենի ցեղ, իշխում էր կրակով ու արիւնով: Խաղաղութիւնից զուրկ մեր դըժ-բախտ երկիրը տակն ու վրա էր եղել և դար-ձել հարամիների, ամենատեսակ «ղաչաղների», մարդասպանների գործունէութեան ասպա-րէզ: Լեռներում և անտառներում, նոյն իսկ մեծ ճանապարհների վրա մարդիկ օրը ցերեկով մորթոտւում էին հաւերի պէս— արիւնի ժամանակ էր, ո՞վ էր հարցնողը, ո՞վ էր ձայն բարձրացնողը: Այժմ իրաւունք էր, օրէնքն ու արդարութիւնը կատարելապէս բացակայում էին. քաջը զարկում և զարկ-ւում էր իր սեփականութիւնը պաշտպանելու համար, վախկոտները փախչում, թագ էին

կենում, կամ գլուխ առնում կորչում, ուրիշ աւելի ապահով երկիրներ բախտ որոնելու. գաղթում էին ամբողջ գիւղեր և նոյն իսկ գաւառներ՝ թողնելով և՛ ստացուածք և՛ հարստութիւն և՛ տուն և ամեն ինչ, միմիայն կեանք փրկելու համար. իսկ աւելի խոհեմները ստրկանում, գլուխ էին ծռում հզորի առաջ և տալիս էին բոլորը՝ ինչ պահանջւում էր իրանցից, տալիս էին նոյն իսկ իրանց ընտանեկան և մարդկային պատիւը՝ մի ողբալի ստրկական կեանք վայելելու արտօնութիւնն ստանալով: Կռւում էին ոչ միայն առանձին անհատները՝ մի կնոջ, մի լաւ ձիու կամ կրօնական ատելութեան պատճառով, հապա և կռւում էին գիւղը գիւղի հետ, ցեղը ցեղի հետ, առանց իրանց արածի համար հաշիւ տալու, առանց պատճառը քննելու, իմանալու: Մի վայրենի, մի արիւնածարաւ բնազդ ամենքին մղում էր դէպի սպանութիւն և կոտորած, ամենքին առաջնորդում էր դէպի արիւն, և լեռներից ու ձորերից արեան հոտ էր գալիս, այդ տեղերից մենակ անցնելը հաստատ մահուան դիմել էր նշանակում, և ոչ ոք այդ յանդգնութիւնը չունէր, մարդիկ վաղուց դադարել էին գիւղից գիւղ, լեռից լեռ գնալ: Այսպիսի ժամանակ էր: Կռիւ էր ամեն տեղ, կռւում էին ամենքը.

կռուում էին և այն շա՜տ վաղուց՝ բանոնցէք և ախանցէք։

Բանո՜ն... մեծ չէ սա, մի փոքրիկ գիւղ է, կանաչազարդ բլրակների մէջ մի բարձրաւանդակի վրա կուծուռած, կծկուած, մեն մենակ, ըստ երևոյթին խղճուկ, անպաշտպան։ Ոլորապտոյտ ու նեղ փողոցների աջ ու ձախ կողմերում անձև, անհաշիւ կերպով, ասես ցրտից կծկուելով, բայց իրօք մշտական թշնամիների երկիւղից իրար վրա են կուտակուել, մէջք մէջքի կպցրել, կողք կողքի տուել գիւղի մեծ ու փոքր խրճիթները, որոնք հեռուից իրանց ուռուցիկ կտուրներով փոքրիկ բլրակների մի խմբի են նմանում՝ խիտ առ խիտ իրար վրա թափուած։ Գիւղի առջևում իրար անընդհատ յաջորդող բլրակները՝ արևմտեան կողմում Մ ա ր ա լ ի գեղազարդ սարերի կանաչապատ, ծաղկաւէտ փէշերին են կախւում։ Այս բլրակների կուրծքերը պատռելով, ոտքերը քերելով, մերթ կորչելով և մերթ կրկին երևան գալով՝ հոսում է Բանոնի սրընթաց լեռնային գետակը, որ սկիզբն է առնում Մարալի սարերի ստորոտներում սփռուած բազմաթիւ ականակիտ աղբիւրներից, «Բազրգեան-բուլաղներ»ից։ Գետակն օր ու գիշեր ծեծում է իր կարծր ժայռոտ ափերը, փրփուր է թքում նրանց երեսին, ահաւոր

պտոյտներ կազմելով ճչում է, շաչում ու շառաչում իր մերթ վճիտ և մերթ պղտոր ալիքներով: Լա՞ց է լինում արդեօք, թէ՞ գանգատւում, որ իր աղմկալի ալիքների համար մայր երկրից խլուած արահետը շատ նեղ է, այդ ոչ ոք չը գիտէ. միայն գետի ահաւոր շառաչը, նրա փրփրուն ալիքների սասանեցուցիչ գոռոցը գիշեր թէ ցերեկ անդադար հնչւում է ու հնչւում՝ խռովելով շրջակայքի խաղաղութիւնը: Ահաւոր է այդ գոռոցը մանաւանդ գարնանը, երբ լեռնային սահանքաւոր ջրերն իրանց ընթացքում մեծ ու փոքր քարեր կողոպտելով՝ սարերից ու բլուրներից, բերում են իրանց աւարը և յաղթանակով յանձնում վարարած գետակի կատաղի ալիքներին, որոնք գրկելով այս տարօրինակ որսը, առաջ են գնում մռմռալով: Գետակն իր աղմկայոյզ ուռած ջրերը շառաչիւնով առաջ է մղում և գիւղի հարաւային կողմում սարսեցուցիչ ճղփիւնով զարկւում է մի հսկայ ուղղաձիգ-քարաժայռի պատուանդանին, զարկւում է, և կարծես կատաղելով, որ չի կարողանում մի հարուածով փուլ բերել, գետնին հաւասարացնել քարաժայռը, յետ է դառնում և բարկութեամբ դիմում է դէպի հակառակ ափը, փորում է և ներս գնում ցամաքի մէջ ինչքան կարող է, սակայն դրանով էլ չը գո-

հացած, կրկին փորձում է յետ դառնալ, յարձակուել ժայռի վրա, բայց իզո՜ւր… ալիքները քշում են նրան և նա իր անզօր բարկութիւնը յաջորդ ալիքներին կտակելով՝ վազում է առաջ դարձեալ անդուսպ, դարձեալ հպա՜րտ…

Այս ջրածեծ քարաժայռի կատարին բոլորաձև շարուած են մի շարք աւելի փոքր ժայռեր՝ մի հսկայական պսակ կազմելով գագաթի վրա, իսկ այդ պսակի հէնց կենտրոնում բարձրանում է մի հին, շա՜տ հին մենաստան պսակաձև ժայռերով, որպէս բնական պարսպով շրջապատուած: Սա Բանոնի Ս. Աստուածածնինն է, որ քրիստոնէական առաջին դարերի ջերմեռանդ ձեռները կռել ու կոփել են վիթխարի քարերից և բարձրացրել են հսկայական կամարները այս ահաւոր ժայռի կատարին՝ այս բարձրութիւնից դէպի երկինքն ուղղելու իրանց սրտաբուղխ աղօթքները: Բայց աւերակ և անփառունակ է այժմ հինաւուրց տաճարը և անցեալ փառքի այս տխուր մնացորդները, բարձրից կախուած գետակի ջրերի վրա, ցոլանում են նրանց վճիտ ալիքներում, դիտում են այնտեղ իրանց տխուր պատկերը և իրար հրող-հրշակող ալիքների ընթացքում կասես կարդում են աշխարհի ունայնութեան, աշխարհի անցաւորու-

թեան անսիրտ, անողորմ փլլխափայութիւնը։
Բարձր է քարաժայռը, բայց է՛լ աւելի բարձր
է նրա լերկ կատարին ցցուած աւերակ մե-
նաստանը. դժուարին է վերելքը դէպի այդ
սրբավայրը. լեռնային մի նեղ, ոլորապտոյտ
շաւիղ ջերմեռանդ ուխտաւորին առաջնոր-
դում է դէպի վեր, դէպի կատարը։ Այդ շա-
ւիղը իր ընթացքում մերթ իջնում է հեղեղ-
ների փորած խոռոչները. մերթ ծածկւում է
մացառուտների մէջ, մերթ դէմ է առնում
մի անհաքին ժայռի և պէտք է լինում երբեմն
չանգռելով բարձրանալ, երբեմն սողալ կամ
քարերից բռնել կատարի՛ սրբավայրը հասնե-
րելու համար։

Ոչ ոք չը գիտէ, թէ ո՛վ և ե՛րբ է կառու-
ցել տաճարը և ո՛ր անարգ ձեռներն են կո-
ղոպտել և աւերակ դարձրել Աստուծոյ տունը.
ո՛չ մի գիր, ո՛չ մի արձանագրութիւն չի ա-
նում այդ մասին պատմութիւնը, բայց բա-
նոնցուն հարկաւոր էլ չէ այդ, նա գիտէ
միայն, որ սա Բանոնի պաշտպան Տիրամէրն
է. նա համոզուած է, որ Աստուածամայրը
ապրում է այս խսկ աւերակ կամարների տակ,
այս խոնարհուած խորաններում, ցանուցիր
ընկած մամռապատ նուիրական քարերի բե-
կորների մէջ լսել իր խոնարհ և ջերմեռանդ
ծառաների սրտաբուղխ մրմունջները։ Ահա

թէ ինչու, չը նայելով վերելքի բոլոր դժուարութիւններին, ջերմեռանդ բանոնցին տարէնը մի քանի անգամ իր կնոջ և զաւակների հետ մագլցելով բարձրանում է դէպի այդ քարաժայռի կատարը, դէպի ողորմած «Տիրամէրը:» Համեստ է նրա խնդիրը, չափաւոր նրա ցանկութիւնը. խեղճն աղաչում է Տիրամօրը, որ սրա բարեխօսութեամբ Փրկիչը իր սրբազան հովանին տարածի Բանոնի վրա, որպէս զի հայ քրիստոնեան կարողանայ անխափան կերպով պաշտել Նրա խաչը չորս կողմում վխտացող անօրէնների մէջ:

Այս աւերակ մենաստանի, այս բարձր քարաժայռի ստորոտներում ձգւում է մի լեռնային ընդարձակ հովիտ, որ հեռւում եզերւում է գեղանկար լեռնաշղթայով: Այս լեռնաշղթայի միւս կողմում ապրում են վրանաբնակ սախանցիք, Բանոնի դարաւոր արնախում թշնամիները: Այն օրից, երբ բանոնցին մաճն ու գութանը ձեռք առաւ, պատռեց մայր երկրի սիրտը, ոռոգեց նրան իր քրտինքով և իր զաւակների համար արդար հաց պատրաստեց, իսկ սախանցին արհամարհելով այդպիսի հալալ աշխատանքը, կպաւ իր նժոյգի թիկունքին և մահաբեր զէնքերով գնաց կողոպուտի՝ յանձն առնելով ծանր, արիւնոտ արկածներով լի մի կեանք, այն

օրից, երբ բանոնցին քարով ու ցեխով շարեց իր բնակարանը և մտաւ խաղաղ յարկի տակ, իսկ ասիանցին գերադասեց մազէ վրանի անհանգիստ և անհաստատ կեանքը, այն օրից երբ բանոնցին գրկեց աշխարհի Փրկչի խաչը, կապեց նրան իր բոլոր յոյսերն ու իղձերը, իսկ ասիանցին մի վայրենի, արիւնածարաւ կրօն պաշտել սկսեց, այն օրից էլ կռիւն սկսուեց բանոնցու և ասիանցու մէջ, կռիւ անհաշտ ու յարատև։ Օ՜, այն ժամանակից որքա՜ն արիւն է թափուել Մարալայ սարերում, Բազրգեան-բուլաղների վճիտ ջրերում...

Եւ բանոնցին երբե՛ք գլուխ չի խոնարհել ասիանցու առաջ և նրանից փախուստ չի տուել. ասիանցու գնդակները բանոնցու կրծքին են դիպել և ոչ թիկունքին։ Ո՞ր ասիանցին կը համարձակուի անպատիժ կերպով խլել բանոնցու ոչխարը, եզը, կովը, տրորել նրա արտը, չիմանը. բանոնցին ստեղծուած է ասիանցուց վրէժխնդիր լինելու համար, այդպիսի դէպքերում նա միշտ կրկնապատիկը յետ կը բերի։ Բանոնցի արիասիրտ զաւակները երբեք թոյլ չեն տուել, որ իրանց հայրենի գիւղին անարգանք հասնի, իրանց մարդկային կամ ընտանեկան պատիւն արատաւորուի։ Սեփական յարկի տակ խաղաղութեամբ են իրանց հոգին փչել, թէ՞ իրանց հայրենի լեռներում

ընկել են զարկուելով Թշնամիների հետ, այդ մի և նոյն է, նրանք չեն մոռացել միշտ մի անողորմ, մի անհաշտ կռիւ կտակել իրանց զաւակներին ընդդէմ սախանցիների։ Եւ Բանոնի մէջ միշտ ճարուել է մէկը, որ վառ է պահել աւանդական վրէժխնդրութեան սրբազան հուրը, կանգուն և կենդանի քաջազնական ոգին, որ պահապան հրեշտակի պէս հսկել է հայրենի գիւղի վրա իր արխաիրա ընկելներով։

Դարձեալ կռիւ է։ Երկիրը լողում է արեան մէջ։ Սախացիները օգտուելով խառնակ դրութիւնից, աստամ են սրում Բանոնի վրա, միջոց են փնտրում քար ու քանդ անելու իրանց մի բուռն Թշնամիների այդ բոյնը, որպէս զի մենակ տիրեն Մարալի սարերին և Բաղրգեան-բուլաղներին, բայց Բանոնն այս անգամ էլ անդլուխ, անպաշտպան չէ։

Ռաշի՜դ… Այսպէս սիրեցին անուանել նրան բանոնցի ջահել աղջիկները և այդ անունը երգեցին ու գովաբանեցին իրանց անպաճոյճ, բայց սրտալոյզ երգերում։ Նա գիւղի քահանայի՝ Տէր-Մարուքի որդի Թորոսն էր, բայց այն օրուանից, երբ իր ճերմակի ականջը մըտած, հրացանն ուսին սարսափ տարածեց փայրենի շրջակայքում, երբ նրա շեշտակի գնդակների տակ ամայի լեռներում Թաւալ-

գլոր ընկան անօրէն հարամիները, այն օրուանից «իրիցու տղայ Թորոսը» Ռաշիդ դարձաւ։ Բարձրահասակ ու թիկնաւէտ, գանգրահեր գլխով, միշտ ուրախ, ժպտուն և թուխ դէմքով, մեծ, փայլուն և կարմրաւուն աչքերով այդ երիտասարդը իր հայրենի սարերի հերոսն էր, երբ իր ճերմակի վրա նստած, կեռ թուրը կողքին քաշ ձգած, երկայն ճօճուն նիզակը ձեռքին, փայլուն հրացանն ուսին անցնում էր ահաւոր լեռներից, մթին ու խուլ ձորերից, ուր նա մէն մենակ որսի էր դուրս գալիս անվախ ու համարձակ մի պաշտելի յանդգնութեամբ։ Աննման էր նա այդ ժամանակ։ Քանի՜ քանի գեղուհիների սրտերն էին բաբախում նրա սիրոյ համար, քանիսն էին իրանց մտքում գլուխները մատաղ տալիս նրա գնացած ճանապարհին, հէյրան լինում նրա ջիւան արևին, բայց նա միշտ անտարբեր էր դէպի իրան ուղղած բորբոքուած, սիրատապ հայեացքները և դրանցից ցոլացող սիրոյ կայծերն անկարող էին լինում թափանցել այդ փառաւոր տղամարդի սիրտը։ Գիւղում ամենքն էլ զարմացած էին, կանանց շրջանը փսփսում էր, բայց և այնպէս ոչ ոք չը գիտէր, թէ ո՛ր բախտաւորին է պատկանում Բանոնի առաջին երիտասարդի, իրիցու տղայ Ռաշիդի սիրտը։

— Ռաշիդ ջան, հէյրան եմ քե, կրկնում էր յաճախ պառաւ մայրը, ապա ե՞փ տի բարով խերով քեօ կանանչ կարմիր կապենք, խալիւորար, լաօ:

Իսկ ծերունի Տէր-Մարուքը այսպիսի ժամանակ սովորաբար իսկոյն կաւելացնէր հեգնութեամբ.

— Ի՞նչ կասես, քա՛ կնիկ, խօջուդ մեղք մ՚ անե, տիւն չե՞ս գինայ, որ մեր Ռաշիդ վարդապետ տ՚եղնի:

Ռաշիդն այսպիսի դէպքերում կամ աշխատում էր մօր հարցասիրութեանը բաւականութիւն տալ հանաքներով, կամ ասում էր, թէ աղջիկ է փնդրում, որ նշանուի, բայց իսկոյն դրանից յետոյ դուրս էր գնում տանից և մտախոհ, տխուր դէմքով թափառում էր դաշտերն ու սարերը: Պարզ էր, որ իր ամուսնութեան մասին խօսակցութիւնը ամէն անգամ լցնում էր նրա սիրտը դառնութեամբ, յարուցանում էր նրա մէջ տխուր յիշողութիւններ, որոնք մռայլում էին նրա փայլուն ճակատը: Նա տանջւում էր, որովհետև սիրում էր և ստիպուած էր թագցնել իր սէրը ո՛չ միայն ծնողներից, ո՛չ միայն հայրենի գիւղից, այլ նոյն իսկ ամբողջ աշխարհից:

Մի ամբողջ տարի էր անցել այն օրուանից, երբ նրա սիրտն առաջին անգամ թրթռաց

սիրոյ համար և այդ ոչ ոք չըր գիտէր։ Մի պարզ լուսապայծառ և գարնանային առաւօտ էր, երբ այդ բանն անսպասելի կերպով կատարուեց։ Ռաշիդը իր սովորականի համեմատ ծեւ-մակը հեծած՝ ուրախ ու անհոգ գնաց որսի Մարալի սարերը, այնտեղ, ուր բացի նրանից ուրիշ ոչ ոք սիրտ չէր անի երևալ։ Լերան կատարին մի կանաչապատ հարթութեան վրա իր փոքրիկ ձագի հետ արածում էր այծեամը. նա չէր նկատում որսորդին։ Ռաշիդը հանդարտ ցած իջաւ ձիուց և սկսեց կամաց-կամաց վերև բարձրանալ հրացանը ձեռին։ Կենդանին նկատեց նրան և մի վարկենում անյայտացաւ սարի միւս կողմում։ Ռաշիդը կրկին հեծաւ ձին և լեռն ի վեր բարձրանալով ընկաւ նրա յետևից. բայց մի քանի ժամուայ նրա աշխատանքն իզուր անցաւ և նա յոգնած ու անտրամադիր ցած իջաւ ձիուց, թողեց նրան արածելու բարձր սէզերի մէջ, նիզակը ցցեց գետնին և ինքն ուժասպառ մէջքի վրա պառկեց մի կարկաչուն աղբիւրի մօտ։ Երկու ձեռքերը գլխի տակ դրած, նա անթարթ աչքերով դիտում էր երկինքը։ Կապուտակ անսահմանութեան մէջ քամու շնչով լողում էր մի հսկայական սպիտակ ամպ, իսկ նրա յետևում՝ նոյն ուղղութեամբ մի այլ աւելի թխագոյն

խաւար ամպ, լողում էին անդադար և մէկը միւսին հասնել չէին կարողանում։ Կամաց-կամաց առաջին սպիտակ ամպը պատառ-պատառ եղաւ և ցրիւ եկաւ երկնակամարի վրա, իսկ նրա ամէն մի կտորը մի այծեամի կերպարանք ստացաւ, մինչդեռ յետևի ամպն աւելի ու աւելի սղմուելով՝ սևացաւ և մի կատաղի գազանի կերպարանք ստացաւ, որ եռանդով հալածում էր խղճուկ այծեամներին, բայց այծեամները ցրիւ եկան, իսպառ անյայտացան կապուտակ եթերի մէջ, մնաց միայն մի սպիտակ, շատ սպիտակ այծեամ, որին հրէշ ամպը ամենայն եռանդով հալածել սկսեց։ Խղճուկ այծեամը փախչում է քանի ոտներումը ոյժ կայ, դէս ու դէն է ընկնում, բայց հրէշը մօտ է հասնելու իր որսին, մօտ է նրան կլանելու։ Ռաշիդը դիտում է ամպերի այս խաղը. Նա տարուել է, նա մոռացել է իրան. Նրա երևակայութիւնը շունչ ու զգացողութիւն է տուել խաղացող ամպերին, նա ի սրտէ խղճում է այծեմիկ ամպին, նրա բնականից բարի սրտում զայրոյթ է եռում այն անիծած հրէշի դէմ, որ ջանքեր է անում կլանել տարաբախտ կենդանուն։ Նա այժմ միայն սրտի ցաւով յիշեց, թէ ինչպէս ինքն անխիղճ կերպով քիչ առաջ հալածում էր դրա նման մի այծեմիկ և սրտանց գոհ եղաւ,

որ նա ազատուեց իր ձեռքից։ «Փախի՛ր, հա փախիր» մրմրում է նա, քաջալերելով այծեծիկին. «ա՛խ, անիծած, տես, տես, թաթը մեկնեց»․ բայց հէնց այդ րոպէին քամու մի այլ զօրեղ հոսանք քշեց հրէշ ամպը, ու պատառ-պատառ անելով ցրուեց անսահմանութեան մէջ։ Այժեամն ազատուեց, նա շարունակեց հանդարդ լողալ երկնակամարի վրա, մի ախորժ, դուրեկան զգացմունքով լցնելով Ռաշիդի սիրտը։ Կամաց-կամաց այդ զգացողութիւնը փոխուեց մի անուշ թմրութեան և նրա յոգնած արտևանունքները փակուեցին. Ռաշիդը քնեց։ Լեռնային բարակ զեփիւռի շունչը մեղմութեամբ հովհարում էր նրա դէմքը. և ով գիտէ, նա որքան ժամանակ այդպէս կը մնար, եթէ յանկարծ լեռների և ձորերի ամայութեան մէջ, դուրեկան արձագանք տալով չը լսուէր մի սքանչելի կանացի ձայն։ Դա մի սախանցի աղջիկ էր, որ մայրենի բարբառով երգում էր մի տխուր մելամաղձոտ երգ. Առողջ կրծքից դուրս թռած երգի ախորժելի հնչիւնները քաղցր ալիքներով դիպան Ռաշիդի ականջին և նա բացեց աչքերը. Նա սոսկաց իր այսպիսի անզգուշութեան համար այս վտանգաւոր ժամանակում. աչքերն աջ ու ձախ դարձրեց, հաւատարիմ Ճերմակն ու նիզակը իրանց տեղումն էին, յափշտա-

կուած քաղցր երգով, երկար ժամանակ անշարժ պառկած էր տեղում, շարունակում էր լսել սրտաշարժ երգը։ Աղջիկը լռեց, իսկ Ռաշիդը իրան շրջապատուած գտնելով ոչխարներով, բարձրացաւ նայեց. Նրա առաջին կանգնած էր սախանցի հովուհին, որ Բաղրդեան-բու-լաղներում ոչխարները ջրելու էր բերել։

Այս աղջիկը մի կենդանի մարմնացումն էր լեռնային կեանքի, մի փայլուն ապացոյց, թէ որքան հրաշագործ է լեռնային օդն ու ջուրը և ազատ անհոգ կեանքը։ Նա գեղեցիկ էր, որպէս լեռնային փարթամ վայրենի շուշան։ Երկու խիտ սև յօնքերի տակից պսպղում էին մի զոյգ սևօրակ մեծ ու փայլուն աչքեր, որոնց մէջ մարմնացած էր անվեհեր համարձակութիւն։ Լիքը, կլոր դէմքը թէև թուխ էր, բայց այտերը փայլում էին առողջ կարմրութեամբ։ Փարթամ կուրծքը հազիւ էր պատսպարւում անփոյթ ծածկոյթի տակ-բարձրահասակ էր նա և նազելի։ Նրա գլուխը ծածկուած էր թեք դրուած մի բարձր քօֆիով, որ պատած էր ֆէսով, իսկ սրա վրա փաթաթուած բազմաթիւ գոյնզգոյն եազմաներով. եազմաների շուրջը կախկխած էին յուլունքների բազմաթիւ ծոպեր, որոնք իջել էին մինչև նրա ուսերը։ Բարձր պարանոցից կախուած էին մանր ուլունքներից շարած

թուեր, զարդարուած մարջաններով և մի արծաթեայ շղթայի վրա շարուած մահմուտեայ ոսկիները զարդարում էին նրա հպարտ փարթամ կուրծքը։ Լայն թիկունքի վրա ծածկւում էին սև երկայն ծամերի երեսունի չափ հիւսեր, որոնք զարդարուած էին սպիտակ փունջերով և փայլուն կոճակներով (քեասպիկ)․ իսկ ճակատի վրայի մազերը կանոնաւոր կերպով խուզուած էին, բաց թողնելով լայն ճակատը։ Նրա կարճ շապիկը՝ ծնկներից ցած սրունքների վրա, բաց էր թողնում լայն կարմիր վարտիկը, որի բերանը ձգուած էր թելով ոտների թաթերի վրա։ Շապիկի վրա ունէր կարմիր ու կարճ մահուտէ կուրդկայ—իշլիգ, զարդարուած մետաքսեայ կոճակներով․ այս զգեստի երկար թևերը կախկխուած էին ձեռների վրայից, սրա վրա մի պճեղնաւոր վերնազգեստ և նրա վրա կարմիր մահուդէ վերարկու խասով բանուած և այդ ամենի վրա մէջքին կապած ունէր մի պարսկական շալ․ առջևից կապած ունէր մի լայն գոգնոց թանկագին կապոցներով, որ նոյնպէս զարդարուած էր տեսակ-տեսակ ուլունքներով, իսկ ոտները ծածկուած էին դեղնագոյն քօշերով։

Աղջիկը կանգնած էր և անվրդով, բայց հետաքրքիր հայեացքով նայում էր մերթ նստած տղամարդին, մերթ ցցուած նիզակին

և մերթ՝ փնչացնելով արածող ճերմակին։ Ասխանցու աղջիկը տղամարդիի հայեացքի առաջ շառագունել, գլուխ կախել չը գիտէ և ոչ իսկ զինուած օտարականից սոսկալ՝ Թէկուզ ամայի, անմարդաբնակ վայրերում։ Հովուհին երկար ու յամառ հայեացքով կրկին նայեց նստած երիտասարդին և նրանց հայեացքներն իրար հանդիպեցին։

— Դիզէ՛, գոչեց Ռաշիդը, այս ո՞ւմ ոչխարներն են։

— Մերն են, ո՞ւմն են, պատասխանեց նա վիրաւորական ձևով։

— Դու ո՞ւմ աղջիկն ես։

— Նաղօ աղայի աղջիկը․ Զարէն եմ ես։

— Օ՛, Նաղօ աղայի, ապա ինչո՞ւ ես դու պահում ձեր ոչխարները, մի՞թէ եղբայրներդ չեն կարող պահել։

— Եղբայրներս են պահում, բա ո՞վ է պահում, իսկ երբ նրանք Թալանի են գնում, այն ժամանակ Զարէին են յանձնում ոչխարները մի քանի օրով։

— Դիզէ՛ Զարէ, բա դու մենակ չե՞ս վախենում այս լեռներում գայլերից, արջերից։

— Զարէն ինչո՞ւ վախենայ, խոմ երեխայ չի՞, ա՜յ, տեսնո՞ւմ ես, և նա բարձրացրեց ձեռքի ահագին մահակը և ուժով զարկեց առաջի քարին, բարձր շրխկոց հանելով։

— Օ՜, Զարէ, ի՜նչ ղօչաղ աղջիկ ես դու, ասաց Ռաշիդը ժպտալով, քիչ մնաց քարը փշուր փշուր անէիր:

Զարէն ծիծաղեց և դառնալով լեռնիվեր փաղչող այծին, մի տարօրինակ հնչիւնով ճըւաց, որ յետ դառնայ:

Ռաշիդն այդ ժամանակ իր աչքերը չէր հեռացնում գեղեցիկ Զարէից, պարզ էր, որ նրան սաստիկ հետաքրքրում էր այս պարզ ու անվեհեր լեռնական աղջիկը:

— Բա դու ի՞նչպէս ես սիրտ արել մենակ գալ մեր սարերը որսի, դարձաւ Զարէն դէպի Ռաշիդը, մի՞թէ չես վախենում մեր ասիանցիներից:

— Ինչո՞ւ համար վախենամ, Զարէ՛, չէ՞ որ ես գիտէի, որ դու այստեղ ես և այդ մահակն էլ ձեռքիդ է, էլ ո՞վ կարող էր ինձ դիպչել:

Համոյախօսութիւնը իր նպատակին հասաւ, Զարէին գրաւեց, որովհետև նա բացեց իր երկու շարք սպիտակ փայլուն ատամները և ինքնաբաւական կերպով ծիծաղեց:

— Բայց Զարէն քեզ չէր պաշտպանիլ, ասաց Զարէն թեթև ժպտալով. Զարէն ասիանցի է:

— Է՜հ, փոյթ չէ, այն ժամանակ ինձ Ռաշիդը կը պաշտպանէր:

— Ռաշի՜դը... հա՜, Ռաշիդը կարող էր քեզ պաշտպանել, բայց ախր նա այստեղ չէ։

— Ո՞վ ասաց, թէ այստեղ չէ, ես առանց նրան որսի կերթա՛մ, նա միշտ ինձ հետ է։

— Հապա ո՞ւր է նա, սարի այն կողմո՞ւմն է, հարցրեց աղջիկը սաստիկ հետաքրքրուած։ Նա շատ էր լսել Փլա Ռաշիդի քաջագործութիւնների և գեղեցկութեան մասին, բայց երբե՛ք չէր տեսել նրան, թէև սաստիկ ցանկանում էր նրան պատահել։

— Ոչ, նա այստեղ նստած է, ա՛յ, ահա սա է Ռաշիդը, ասաց նա ձեռքը իր կրծքին դնելով։

Զարէն շփոթուեց, նա չռեց իր մեծ փայլուն աչքերը, բացեց բերանը, և մի քանի վայրկեան այնպէս սառած մնաց։ Աղջկայ սիրտն սկսեց արագ բաբախել. նա շատ քաջ տղամարդ էր տեսել, շատերն էլ նրան հետամուտ էին եղել, բայց ո՛չ ոքի համար նրա սիրտն այդպէս չէր թրթռացել, և երբէք նրա այտերն այդպէս չէին կարմրել։ Ասխանցին սիրում է քաջին՝ ով և լինի նա։ Նրա ցեղական նախապաշարմունքների պատուարը սիրոյ ույժի առաջ խորտակւում է։

Ի՞նչեր չէր տայ Զարէն, եթէ կարողանար սկսուած խօսակցութիւնն աւելի երկարացնել. և նա շուտով գտաւ հնարը։

— Ո՛չ, դու Ռաշիդը չես, յանկարծ գոչեց Զարէն խորամանկ դէմքով, դու ինձ խաբում ես. ասում են Ռաշիդը երկնքի դշերն իր գնդակով ցած է բերում. ա՜յ, ես կը տնկեմ այն սարի լանջին իմ դագանակը և կը դնեմ նրա ծայրին մի չորթան, եթէ դու կը զարկես, կը ձգես նրան քո հրացանի գնդակով, այն ժամանակ ես կը հաւատամ, որ դու Ռաշիդն ես, և քեզ մի այնպիսի բան կընծայեմ, այնպիսի բա՜ն...

— Ի՞նչ կընծայես:

— Քեզ ի՞նչ, չեմ ասի, երբ զարկես, կիմանաս:

— Համաձայն եմ:

Զարէն այծեամի արագութեամբ վազեց դէպի ցոյց տուած լեռը: Թեթև քամին հովհարում ծածանեցնում էր թիկունքի վրա նրա ծամերի բազմաթիւ հիւսերը: Նա մերթ ցած էր իջնում, մերթ բարձրանում և շարունակ, անընդհատ վազում. իսկ Ռաշիդը սիրով դիտում էր այս տարօրինակ աղջկան, որ այսպէս դիւթել կաշկանդել էր նրա սիրտը: Դարձեալ այծեամս, մտածեց նա: Աղջիկը վերջապէս հասաւ սարին, տնկեց այնտեղ իր մահակը և նրա ծայրին տեղաւորեց մի չորթան, որ հեռուից արևի փայլի տակ սպիտակին էր տալիս. ապա նա յետ դարձաւ և

կրկին վազէվազ, հեւալով, կարմրած, սիրու-
նացած այտերով Ռաշիդին հասաւ: Վերջինս
սիրով նայեց նրա կարմրած, քրտնաթոր այ-
տերին, նրա բարձր ու ցածր անող փարթամ
կուրծքին, ուր զգեստի թեթեւ բացուածքը
երիտասարդի համար վերին աստիճանի գրա-
ւիչ տեսարան էր առաջ բերել: Ռաշիդը նա-
յում էր անյագ աչքերով. Նա մոռացել էր
նոյն իսկ տրուած նշանը: Զարէն այդ զգում
էր և լուռ հրճւում: Վերջապէս Ռաշիդը
վերցրեց հրացանը, ծունկ չոքեց և աչքեց
դրուած նշանին: Զարէն այդ միջոցին սիրա-
տարափ հայեացքով դիտում էր նրա շար-
ժումները և շունչը բռնած սպասում, թէ
ի՞նչ կը լինի: Հրացանը տրաքեց և չորթանն
այլ ևս չը կար մահակի ծայրին:

Զարէն էլ չը թողեց նրան տեղից վերկե-
նալ, նա վազեց փաթաթուեց նրա պարանո-
ցով և մի քանի սիրով լի համբոյր դրոշմեց
ճակատին:

— Ահա՜ իմ ընծան, գոչեց նա, և թուչկո-
տալով անյայտացաւ այն բլրի յետևը, ուր
արդէն ծածկուել էր նրա հօտը:

Իսկ Ռաշիդը յանկարծակի բռնուած աղջկայ
վարմունքից, այլայլուած ու ապշած նայում
էր փախչող գեղեցկուհու յետևից, մինչև որ
նա իսպառ ծածկուեց: Նրա սիրտը լիքն էր

մի քնքուշ զգացմունքով դեպի գեղեցիկ հովւուհին, նա ուրախ էր, նա սիրում էր։ Ամենայն բան շրջակայքում թւում էր նրան այժմ աւելի գեղեցկացած, աւելի գրաւիչ. և՛ բլուրները, և դաշտերը, և՛ այն գիւղացին, որ քրտնաթոր երեսով բռնել է իր արօրի մաճը և նրա զոյգ եզները, որ հանդարտ ու անմռունչ քաշում են արօրը։

Ահա՛ նա արդէն հասաւ վար անողին և մի այնպիսի տարօրինակ ձայնով բարև տուեց, որ գիւղացին թողեց մաճը զարմացած և բարևն ընդունեց ու շարունակեց իր գործը, մինչդեռ Ռաշիդը անհոգ սուլելով առաջ սլացաւ։ Բայց ահա երևեցան գիւղի բլրաձև կտուրները, այստեղ այնտեղ տնկած խոտի ահագին դէզերով և աթարի բարձր բուրգերով։

Հայրենի գիւղի տեսքը այսօր սովորականից հակառակ նրա սիրտը ճնշեց մի անբացատրելի զգացմունքով, նրան թւում էր, որ այդ ողորմելի խրճիթները, այդ դէզերը անշունչ առարկաներ չեն, այլ մարդիկ, որոնք ցցուած այստեղ ու այնտեղ ծաղր են անում նրան և քանի նա մօտենում է գիւղին, ճնշող զգացմունքն աւելի և աւելի զօրանում է և ի վերջոյ նրա նախկին հրճուանքն ու ուրախութիւնը փոխուեց տխրութեան։ Հապա երև-

կայելո՞ւ բան է. քահանայի որդին, Բանոնի փառքը, նրա առաջին տղամարդը, նրա Ռաշիդը, որի լոկ անունը սարսափ էր ազդում արիւնռուշտ ասխանցիներին, այն աստիճան իրան մոռանար, այն աստիճան ստորանար, որ թոյլ տար իրան դրկել ասխանցի անօրէն Նադօ աղայի, Բանոնի այդ ոխերիմ թշնամու, այդ արիւնռուշտ գազանի աղջկան և նրա այտերին բորբոքուած սիրոյ համբոյրներ դրոշմէր. սա մի այնպիսի անարգանք էր Բանոնի պատուին, որ գիւղի ծերերը Կայէնի նզովքը կը կարդային իրանց պաշտած երիտասարդի գլխին, կոյսերն ամօթից կը ծածկէին իրանց շառագունած երեսները. իսկ երիտասարդները հեռու կը փախչէին իրանց սիրելի առաջնորդից, որովհետև բանոնցոց աչքում այդպիսի սէրը մի կատարեալ դաւաճանութիւն էր. այդ գիտէր Ռաշիդը, այդ զգաց նա և ահա թէ ինչո՛ւ տխրութեան մի քող եկաւ պատեց նրա մինչև այժմ ուրախ դէմքը, ահա՛ թէ ինչու հայրենի գիւղի տեսքը յարուցեց նրա սրտում մի ճնշող, մի չարագուշակ զգացմունք։ Այժմ միայն նա հասկացաւ այն՝ ինչ որ սիրոյ առաջին րոպէներում սաստիկ յափշտակուած անկարող էր եղել հասկանալ. այժմ նա զգաց, որ ինքը անդունդի ծայրին է կանգնել, որ թիթեռնիկի պէս դէպի իրան

այրող կրակն է վառել: Բայց այդ արդէն շատ ուշ էր. նա զգաց, որ այլ ևս անկարող կը լինի խեղդել իր սրտում սիրոյ հզօր զգացմունքը: Նա սիրում էր ասիանցի սևաչեայ Զարէին:

Սէրը համակել էր նրա ամբողջ էութիւնը. բանականութեան բողոքն անկարող եղաւ խեղդել նրա մէջ սիրոյ զգացմունքը:

Վշտի և հրճուանքի օրեր և ամիսներ անցան և Ռաշիդը աւելի և աւելի յաճախ սկսեց այցելել Մարալայ սարերը, որոնք այժմ նուիրական ուխտատեղի էին դարձել: Նա յոյս ունէր բախտաւոր դիպուածով տեսնել Զարէին, բայց այդ այնքան էլ հեշտ չէր. շատ անգամ անցնում էին ամբողջ շաբաթներ և Զարէին չէր վիճակւում ոչխարներն այդ կողմերը քշել, չը նայելով որ նա այժմ յաճախակի առիթներ էր փնտրում ոչխարներն արածացնելու: Գալիս էր Ռաշիդը, իր որսը մոռացած նստում նուիրական աղբիւրի ափին և աչքերը մի կողմ ուղղած՝ նայում էր ու նայում քարցր խոտերի մէջ ընկղմած: Պատահում էր, որ Զարէն բերում էր ոչխարները և Ռաշիդին չէր գտնում. այդ դէպքում աղջիկը բարձրանում էր մի բլրի կամ ժայռի կատար և խանդոտ հայեացքով այնտեղից դիտում իր սիրածի ճանապարհը երկար,

անթարթ։ Ճերմակը շատ հեռուից պայծառ արևի տակ սպիտակին է տալիս, աղջկայ սիրտը թրթռում է. Նա երկար, շա՜տ երկար սքանչանում է իր սիրած հոյակապ տղամարդով և աչքը չի հեռացնում նրանից, մինչև հասնում է։ Ապա նա իջնում է վար գաղտնագողի ճանապարհով, շտապում է սովորական ժայռի յետևը նստում. անհամբերությունից նրա այտերը բոցբոքւում, կարմրում են, կուրծքը յուզմունքից այնպես է բարձր ու ցածր լինում, որ քիչ է մնում տրաքի. բայց ահա և Ռաշիդը. Զարէն վազում ընկնում է նրա գիրկը, փաթաթւում է պարանոցով և նրանք ջերմ համբոյրներով փոխանակւում են։

— Ռաշիդ ջան, ինչո՞ւ այդքան ուշացար, որքան սպասեցի քարի վրա հա՜ա. քիչ էր մնում ոչխարները քշէի գնայի, ասում էր Զարէն քաղցր յանդիմանական եղանակով։

— Զարէ՛, հոգիս, ինչո՞ւ ես նեղանում, ախր ես ո՞րտեղից իմանայի, թէ դու այսօր եկել ես. քանի՞ օրեր և շաբաթներ ես գալիս եմ, շրջում եմ այս տեղերը, փնտրում քեզ և դու ամենևին չես գալիս, ի վերջոյ փորփոշման թողնում վերադառնում եմ տուն։

Աղջիկը փոխանակ պատասխանելու միայն ժպտում է և փաթաթւում նրա պարանոցով։

Անցնում են այս բերկրալի ժամերը որպէս վայրկեաններ, նրանք ստիպուած են լինում բաժանուել հրաժեշտի համբոյրով: Ռաշիդը տուն է վերադառնում քաղցր յոյզերով սիրտը լի, բայց երբ մօտենում է գիւղին, կրկին նախկին վիշտն ու փոշմանութիւնը պատում են նրան: Նա տանջւում է, թէ ինչ վախճան կունենայ այս տարօրինակ սէրը. Նա կանխատեսել, որոշել չէ կարողանում, բայց այսքանը նրա համար պարզ է, որ եթէ իր այդ գաղտնիքը բացուի, եթէ իր հայրենակիցներն իմանան իր ամօթալի սիրոյ պատմութիւնը, թէ սարսափելի գաղտնիքի քօղը մի օր պատռուի, նա նոյն օրը, նոյն ժամին վայր կը գլորի իրան Աստուածածնի բլրից՝ գետակի կատաղի ալիքներում իր անարգանքը թաղելու համար:

Գարնանային պայծառ երեկոյ էր. արևի ոսկեայ գունդը կամաց-կամաց քաշեց եթերի մէջ սփռած իր ցնցուղները և գնաց թաղնուելու Մարալայ սարերի թիկունքին, որոնք հսկայական ստուերներով պատեցին կանաչապատ դաշտերն ու ձորերը: Վերջալուսի մի քանի ճառագայթներ միայն դեռ լուսաւորում են սարերի կանաչազարդ գագաթները. հետզհետէ այդ ճառագայթներն էլ քաշուեցան՝ տեղի տալով երեկոյեան աղջամուղջին, որ եկաւ պարուրելու արար աշխարհը: Միմիայն

շառագոյն արևմուտքում ծիրանման ամպի մի քանի պատառներ շարունակում էին դեռ պահպանել ցերեկուայ շողազարդ լուսատուի պայծառ լոյսի ծիրանագոյն շիթերը։

Բարձրացաւ երեկոյեան զով քամին, անցաւ կանաչազարդ լեռների բլուրների վրայով, սլսլացրեց, իրար տուեց խոտերն ու հոտառատ ծաղիկները, և նրանց անոյշ բուրմունքը տարաւ սփռելու չինջ եթերի մէջ։

Դուրեկան բառաչով օդը թնդացնելով՝ պատրաստ արօտից, կանաչազարդ դաշտերից յետ դարձան և գիւղը լցուեցին հազարաւոր ոչխարներ։ Նախիրն էլ եկաւ տաւարածների հետ։ Խոտ հնձողները՝ գերանդիներն ուսներին, կատակներ անելով, երգեր երգելով մտան գիւղ։ Դաշտը դատարկուեց և գիւղը կենդանացաւ։ Ամեն կողմ բառաչ, ամեն կողմ ձայն, խօսակցութիւն, աղմուկ, կանչուռռսոց։ Հովիւը ոչխարներն է համարում, կանայք ու աղջկերք դառներն են թողնում, կամ կթում ոչխարները, որոնց բառանչն ու մկկոցը գիւղը լցրել է։ Նախրապանն էլ տնից տուն շրջելով ծեծում է դռները, իր սովորական հացը հաւաքում, դռներից պոռալով՝ «Հա՜ց բերէք, հա՜ց» և մի-մի հաց առնելով, ուսին գցելով շարունակում է ճանապարհը։ Ոմանք կթաններն են տեղաւորում, կապում ու կապոտում,

ուրիշները մոլորած անասուններն են փընտ-
րում՝ բարձր ձայնով սրան կամ նրան հարց-
նելով, կամ նախրապանին փնտրելով և ամ-
բողջ գիւղը միանգամից թնդում է բազմու-
թեան աղմուկից՝ մի անորոշ, անհասկանալի
մռմռոցով:

Տէր-Մարուքն էլ դուրս եկաւ եկեղեցուց և
տէրողորմեան համրելով կամաց-կամաց քայ-
լում է դէպի տուն ռէս Պէտօի հետ: Ճանա-
պարհին ժամաւորների բազմութիւնը՝ մարդ
թէ կին աջ ու ձախ յարգանքով յետ է
քաշւում, ճանապարհ բանալով պատկառելի
ծերունիներին, որոնք ցածր խօսելով շարու-
նակում են իրանց ճանապարհը:

Տէր-Մարուքը իր կեանքի արևմուտքին
մօտեցած ծերունի էր: Տարիները և հոգսերը
իրանց քայքայիչ կնիքը դրել են նրա մար-
մնակազմի վրա, ողնաշարը թեթև կորացած
է, բայց այնու ամենայնիւ բոլոր նշաններից
երևում է, որ այս մարդը մի հոյակապ տղա-
մարդ է եղած մի ժամանակ: Սպիտակ երկար
միրուքը փռուած ծածկում է նրա կուրծքը,
ալէզարդ մազերը քահանայական գլխարկի
տակից թափւում են մինչև ուսերը և ծած-
կում պարանոցը: Դէմքը նիհար է, բայց ազ-
դու, իսկ երկու սպիտակած խիտ յօնքերի
հովանու տակ պլպլացող աչքերը մի անօրի-

նակ կենդանութիւն են տալիս ծերացած դէմքին. այդ աչքերում փայլում է երիտասարդական կորովի մնացորդը։ Նրա վրա նայելով մարդուս տիրում է առհասարակ այն զգացմունքը, որպիսին մարդ զգում է, երբ կանգնած է հինաւուրց փառաւոր շինութեան տխուր և պատկառելի աւերակների առաջ։

Ծեր է նոյնպէս և ռէս Պէտօն, թէև սրա մէջքը կորացած չէ Տէր-Մարուքի պէս, բայց ածելած դէմքին նոր բսած կարճ մազերը բոլորովին սպիտակած են։ Ամբողջ դէմքի վրա փայլում է յոգնածութիւն և տխրութիւն։ Աչքերը կորցրել են իրանց կրակը և նրանցից մինը զրկուել է տեսողութեան կարողութիւնից։ Բոլոր նշաններից երևում է, որ այս մարդը նոյնպէս շա՜տ է տանջուել. և արդարև քանի՜ քանի անգամ գիւղի ցաւ ու հոգսերի համար նրան բէգերի դուռն են քաշ տուել, ամիսներով բանտ նստացրել և ամեն անգամ տուգանքներով ճանապարհ դցել։

Երկու ծերունիների սովորութիւնն է երեկոյեան ժամերգութիւնից յետոյ խօսելով անցնել գիւղամիջից և միասին գնալ իրանց բնակարանները, որոնք շատ էլ հեռու չեն իրարից։ Արդէն նրանք Տէր-Մարուքի դուռն են, բայց այսօր սովորական հրաժեշտի ողջոյնը չը տուին իրար և միասին ներս մտան։

Երևում է, որ նրանք մի շատ ծանրակշիռ և հետաքրքիր խնդրով են զբաղուած։ Նրանց դէմքն այսօր սովորականից աւելի լուրջ էր և տխուր. այդ նկատեցին գիւղում ամենքը և երբ նրանք անցան, այդ բանը խօսակցութեան և ենթադրութիւնների նիւթ դարձաւ, որովհետև այս երկու ծերունիներն են յանձնառած ամբողջ գեւղի բաղդը. սրանք են բէգի, իշխանի մօտ գնում, սրանք են բանտ նրստում, երբ զայրացած է բէգը, սրանք են մեծամեծներին կաշառք տալիս՝ Թշուառութիւնից գիւղը փրկելու համար։ Ահա թէ ինչո՞ւ գիւղացիներն էլ սաստիկ հետաքրքրուեցին, երբ իրանց երկու իշխաններին չափից դուրս լուրջ, խորհրդաւոր գտան. դա ամենևին բարի բան չէր գուշակում. այդ նշան էր, որ կամ հարկահաններն են շուտով գալու, կամ բէգն է անցնելու գիւղով և կամ դրա նման մի այլ Թշուառութիւն է պատրաստւում։

Ծերունիներն անցան բակից, և Տէր-Մարուքը հրելով տան դուռը հրամցրեց ռէսին։ Նրանք ներս մտան մի դալան, որից երեք դռներ տանում էին տան երեք բաժանմունքը՝ Թոնրատունը, գոմը և օդան։ Երկրի անապահով վիճակը ստիպել էր խեղճերին տան բոլոր բաժանմունքները իրար կից շինել,

այնպէս որ թէ տաւարն ու ոչխարը, թէ ընտանիքը մի և նոյն գոմումն են ներս մըտանում և ապա այս կամ այն բանով իրանց յատկացրած բաժինը գնում։ Օդան նրանց հիւրանոցն էր և այստեղ էլ մտան Տէր-Մարուքն ու ռէս Պէտօն։

Սա մի երկարաւուն քառակուսի շինութիւն էր, որի ճակատում, պատի մէջ, շինուած էր բուխարին. Նրանից աջ ու ձախ կողմերում, պատերի տակ, երկար փռուած էին թաղիքներ և գորգեր, դրանց վրա էլ մի-մի մինդար և բարձեր։ Երկու կողմի փռուածքի միջանցքը բաց էր մինչև բուխարին։ Օդան լուսաւորւում էր առաստաղի հերթկից։

Տէր-Մարուքն ու ռէս-Պէտօն նստեցին մինդարների վրա. խօսակցութիւնը շարունակւում էր։

— Ասացիր թէ Խութն աւերուա՞ծ է, հարցրեց Տէր-Մարուքը։

— Աւերուած է, տէրտէր, և բնակիչներն էլ կոտորուած են, շարունակեց ռէսը։ Շատերին կենդանի-կենդանի են թաղել։ Ռէս Կրգօն, հայի՜ֆ քեզ, տղամարդ, սպանուած է և նրա ողջ տունը ջնջուած։ Շատ քչերն են ազատուել լեռներում և անտառներում ծածկուելով. Նրանք էլ սովամահ լինելու վրա են։

Տէր-Մարուքը լսում էր այս սոսկալի բօթը՝ մերթ գլուխն օրօրելով, մերթ ծնկներին խփելով, մերթ ախ ու վախ անելով։ Երբ ռէս Պէտօն վերջացրեց աղէխարշ պատմութիւնը, տիրեց խորին լռութիւն։ Երկուսն էլ պաշարուեցան ծանր մտքերով. Տէր-Մարուքը նոյն իսկ մոռացել էր իր տէրողորմեան չրխկացնել։

— Ռէս Պէտօ, ընդհատեց տէրտէրը լռութիւնը, եթէ այդպէս է, մեր բանն էլ դժուար է. Խութն աւերուեց, անյաղթելի Խութն ընկաւ, մենակ ի՞նչ պիտի անէ խեղճ Բանոնը, որ մինչև այժմ Խութի շուքի տակ է ապրել։ Մեր հարևան գաղաններն էլ մեզ դադար չեն տալ. սրանք մինչև այժմ Խութի երկիւղից էին զսպուած մնացել, հիմա ամբողջ էլխաթը ոտի կը կանգնի և մեր բանը վատ կը լինի, շատ վատ։ Տէր Աստուած դու խնայես, դու հասնես, վերջացրեց նա աչքերը երկինք ամբառնալով։

— Տէ՛րտէր, առանց Աստուծոյ օգնութեան ոչ ոք աջողութիւն չէ ունեցել, բայց մարդն էլ պարտական է իր մասին հոգալ. պէտք է մտածել մի ճար անել։ Լաւ կը լինի՝ մեկել աղսախկալներին էլ շուտով խորհուրդի կանչենք, մի հնարք մտածենք ասիանցիների հաւանական յարձակման առաջն առնելու։ Կատ

չի լինի, որ Ռաշիդն էլ մասնակցի մեր այս խորհրդին, նա թեև ջահել է, բայց սիրտ ունի, խելք ունի և կարող է օգտակար լինել։ Իսկ դու, տեր հայր, վաղուանից սկսիր եկեղեցում հսկում կատարել, թող Աստուծոյ աչքն էլ մեր վրա քաղցր լինի, մարդ ինչ որ քաշի, իր մեղքերից կը քաշի։

Խորհուրդ գումարելու համաձայնութիւնը կայացաւ Բանոնի երկու առաջնորդների մէջ, բայց խօսակցութիւնն այնուհետև դեռ շատ երկար շարունակուեց։ Արդէն կէս գիշերը մօտ էր։ Գիւղում աղմուկն ու շարժումը դադարել էր. ամէնքն ընկղմել էին խոր քնի մէջ. ընդհանուր խաղաղութիւնը վրդովում էր միայն երբեմնակի շների չարագուշակ հաջոցով ու ոռնոցով։ Սրանցից մէկը, մանաւանդ գիւղի հեռաւոր ծայրում յուսահատ կաղկանձում, վնգստում էր, ամէնքն էլ ձայնակցում էին նրան՝ այլանդակ, խլացնող համերգ կազմելով, և ապա կրկին լռում։ Բայց ահա հեռաւոր շունը կրկին հաջել սկսեց, բայց այս անգամ աւելի կատաղի. աւելի բարձր, միւս շների աղմուկն էլ միացաւ և ընդհանուր դարձաւ։ Երկու ծերունիներն ականջները սրած՝ ուշադրութեամբ հետևում էին այս անօրինակ աղմուկին, որը նրանց կարծիքով մի շատ ծանրակշիռ պատճառ պէտք է ունենար։

Շատ չանցած նրանց կասկածներն արդարացան. շների հաչոցի մէջ լսելի եղան նաև մարդկանց ձայներ, որոնցից մէկը պարզ և որոշ կերպով՝ «եամա՜ն քեօմագ» պոռաց. սրան հետևեց երեխաների լացի ու վույի ձայներ: Այլ ես ոչ մի կասկած չը կար, որ գիւղացիներից մէկի տան վրա գիշերային յարձակումն է տեղի ունեցել, և անշուշտ Մխօի տունն էր, քանի որ նրա տունն էր գտնւում գիւղի ծայրում միւսներից անջատ. դոնէ այսպէս վճռեցին տէր Մարուքն ու ռէս Պէտօն և պատրաստուեցին դուրս ելնել գիւղը ոտքի հանելու համար, բայց դեռ երկու քայլ չարած օդայի դռանը երևեցաւ Ռաշիդի վայելչակազմ հասակը:

— Աւազակները Մխօի տունը կոխել են, ասում են աղջիկ են փախցրել, գոչեց նա, և առանց որ և է պատասխանի սպասելու, վազեց օդայի պատից քաշ ընկած զէնքերը խլեց, դուրս քաշեց իր ճերմակը և առանց թամբելու, մէջքին թռաւ և անյայտացաւ խաւարի մէջ, մինչդեռ ողջ գիւղը տակն ու վրա էր եկել, մարդիկ վազում էին դէպի աղմուկի կողմը, նոր զարթնածները վազողներին հարցնում էին բանի էութիւնը: Ոչ ոք չիմացաւ թէ Ռաշիդը մէն-մենակ ուր գնաց:

Ռաշիդը գիտէր, որ աւազակները որտեղից էլ գնալու լինէին, պէտք է Աստուածածնի բլրի տակից անցնեն։ Ուստի մտածեց մի կարուկ ճանապարհով այդ բլրի տակ նրանց առաջը կտրել. սրա համար հարկաւոր էր գետն անցնել, միւս ափով գնալ մինչև բլրի ուղղութիւնը, և ապա կրկին անցնել և բլրի առաջ դուրս գալ։ Ահա՛ նա արդէն գետի ափումն է, որ գոռում գոչումով հոսում է խաւարի միջից։ Մի րոպէ ջրի աղմուկը, համատարած խաւարը, իր միայնութիւնը նրան սարսափ ազդեց, և նա կանգ առաւ մտախոհ. բայց մտածելու ժամանակ չը կար, գետի խշշոցն անկարող եղաւ խլացնել գիւղից լսուող բազմազան ձայները, հարայ-հրոցը և նա ս. Աստուածածնին յանձնելով իրան՝ խթեց ձիու կողքերը. կենդանին սարսափած ջրից ու խաւարից մի վայրկեան յետ-յետ քաշուեց, բայց վերջը հնազանդուելով տիրոջ ցանկութեանը՝ մոնչալով ջուրը մտաւ, սաստիկ շըփոց հանելով։ Կրծքից վեր խորասուզուած ջրի մէջ, նա հզօր կրծքով դէմ տուեց ալիքներին և սկսեց առաջ գնալ։ Ռաշիդը քաջալերում էր փռնչացնող կենդանուն, շոյելով բարձր բռնած գեղեցիկ պարանոցը. երկար չը քաշեց այս վտանգաւոր ընթացքը. մի քանի րոպէից յետոյ Ռաշիդն արդէն միւս ափումն

էր, և սլանում էր գետի ընթացքով դէպի վար, դէպի բլուրը։ Ահա՛ նա արդէն բլրի առաջն է. կրկին հարկաւոր է գետակն անցնել։ Առաջին փորձից քաջալերուած, նա այս անգամ համարձակ քշեց իր ձին և շուտով դուրս եկաւ և բլրի դէմ յանդիման կանգ առաւ։

Նա ձիուն չէր խնայել և համոզուած էր, որ գողերն անցած չեն լինի, քանի որ նա անհամեմատ աւելի երկար ճանապարհ էր, քան իր կտրածը և երկրորդ՝ աղջիկ փախցնելն էլ այնքան հեշտ բան չէր, որ նրանք կարողանային իրանից առաջ այստեղից փախած լինել։

Ռաշիդը շտապով վար բերեց հրացանը, քաշեց նրա ոտքը և ճանապարհի մէջտեղում կանգնած սպասում էր առանց ձիուց իջնելու։ Այդ րոպէում նրան ոչ մի միտք չէր խռովում. ո՛չ թշնամիների անսպասելի բազմութիւնը, ո՛չ իր միայնութիւնը և ո՛չ յանդուգն ձեռնարկութեան բոլոր անհաւորութիւնը։ Նա միայն սարսափում էր այն մտքից, թէ մի՛ գուցէ անօրէններն անցած լինեն և իր բոլոր ջանքերն ապարդիւն անցնեն։ Լսողութիւնը սրած, նա աչքերը չռել էր խաւարի մէջ, աշխատելով որ և է ստուեր ջոկել, կամ լսել որ և է շշուկ, կամ ձիերի տրոփիւն,

սակայն իղձը, միայն գետն էր իր ահաւոր աղմուկով դղրդում շրջակայքը՝ զարկուելով Աստուածածնի աւերակ վանքի ժայռոտ հիմ-քին, որ ցցուած էր խաւարի մէջ, որպէս մի վիթխարի քարակոյտ։ Անցան մի քանի րո-պէներ, յաւիտենականութեան չափ երկար. Ռաշիդը մօտ է յուսահատուելու. նա արդէն հակուած է համոզուելու, որ աւազակներն արդէն անցել են. այդ միտքը և՛ սարսափեց-նում և՛ կատաղեցնում է նրան. նա մտածում է նոյն իսկ ձիու բերանը յետ դարձնել և քշել նրանց յետևից. ճերմակն արագնթաց է, նա կը հասնի նրանց։ Յետոյ այս միտքը թուաց նրան չափազանց յանդուգն և հրէ-շաւոր։ Նայեց աւերակ մենաստանին և ակա-մայից երեսը խաչակնքեց խորին երկիւղածու-թեամբ։ Այսպէս էր նա միշտ, ցերեկ թէ գի-շեր, չէր կարող այս սրբավայրերի մօտից անցնել՝ առանց երեսը խաչակնքելու։ Նա մի ակամայ երկիւղ էր զգում, երբ մօտենում էր այս բլրին. ի՞նչ էր այս երկիւղի պատճառը, նա մինչև այժմ որոշել չէր կարողացել։ Նա յիշում էր, որ մանուկ հասակում իր քահա-նայ հայրն ստիպում էր նրան խաչակնքել սրբավայրի առաջից անցնելիս և այն ժամա-նակից նա սովորել էր խաչակնքել երեսը։ Բայց ինչով բացատրել այդ երկիւղը. սա կրօ-

նական երկիւղածութիւն չէր, որ համակում էր նրա սիրտը. սա սարսափ էր, նման այն սարսափին, որ մանուկներն զգում են աւերակների մօտից անցնելիս, որոնք նրանց կարծիքով դեւերի, չարքերի բնակարաններ են: Մանկական հասակում այսպիսի մի երկիւղը շատ բնական կը լինէր, իսկ ա՜յժմ. սա ի՜նչ տխուր չարագուշակ երկիւղ է, որ տիրում է նրա անվախ սրտին ամէն անգամ այստեղից անցնելիս. բայց նա չը կարողացաւ այս հարցերի պատասխանը տալ, խաւարի մէջ լսուեցին ձիու տրոփիւն և մի սրտամորմոք նուաղած ճիչ, որ մերթ ընդհատւում և մերթ լսւում էր աւելի ու աւելի մօտենալով. այլ ևս ո՛չ մի կասկած չը կար, որ նրանք են: Հրացանն ուղղեց. բայց հէնց այն րոպէին, երբ կամեցաւ արձակել, կրկին կանգ առաւ, նրան սարսափեցրեց այն միտքը՝ իսկ եթէ իր գնդակը հէնց խղճալի աղջկան դիպչի, և ստիպուած հրացանի բերանը դէպի վար, դէպի եկողների ոտներն ուղղեց. հրացանը տրաքեց, գնդակն անախորժ վզզոցով անցաւ խաւարը պատռելով դէպի մօտեցող երեք ստուերները և նրանցից մէկը գետին գլորուեց: Ռաշիդն առաջ արշաւեց:

— Կացէ՛ք, անօրէններ, որոտաց նա խաւարի միջից. Ռաշիդը դեռ կենդանի է:

Այս անհաւոր անունը, յանկարծակի և անսպասելի կողմից հրացանաձգութիւնը, մէկի թաւալգլոր ընկնելը, սարսափով պատեց ասիանցիներին և նրանցից երկուսը թողնելով յափշտակած կիսամեռ աղջկանը իրանց ընկած ընկերի մօտ, իրանք անյայտացան՝ դաշտի հակառակ կողմը փախչելով։ Մօտենալով՝ Ռաշիդը գտաւ աւազակին կենդանի, բանից դուրս եկաւ, որ սրա ձին էր սպանուել, անկարող դարձնելով նրան փախչել։ Անօրէնը գթութիւն էր խնդրում... Քիչ յետոյ Ռաշիդն աւազակին առաջն արած և կիսամեռ աղջկան ձիու վրա դրած դիմեց գիւղ։

Գիւղը սգի մէջ էր։ Ամենքը վազեցին դէպի Մխօի տունը և այնտեղ հետեւեալ տեսարանը ներկայացաւ նրանց աչքին։ Մխօն՝ սրի մի հարուած ընդունելով գլխին, ընկել էր բակի մէջ արիւնլուայ. մանր երեխաները մօրը կորցրած ճտերի պէս, խեղճ ու կրակ վայում էին. իսկ նրանց մայրը, ամուսնու կողքին կծկուած մազերը փետելով, ծնկները ծեծելով, գլխին տալով պոռում էր.

— «Եամա՜ն աղջիկս, քրիստոնեայ էք, խասէք։ Ռաշիդ ջան, մեռնեմ քեզի, քեօ ռուայ հէյրան, թէ ճարըմ դու էնիս, իմ ասլան», գոռում էր տարաբախտ կինը բազմութեան մէջ Ռաշիդին փնտրելով։

Բայց Ռաշիդը չը կար։ Ընդհանուր շփոթութեան մէջ ոչ ոք չէր յիշում, այժմ միայն ամէնքն էլ նկատեցին, որ Ռաշիդը չը կայ և զարմացան, որովհետև այսպիսի ժամանակ նա տանը նստել չէր կարող։

Հասան Տէր-Մարուքն ու ռէս Պէտօն։

— Տէրտէր, ո՞ւր է Ռաշիդը, դիմեցին նրան մի քանի ձայներ միասին։

— Ռաշիդը գըմմէնէն առաջ վազեց. մագեար նա էստ տեղ չէ՞. էսմալի հաւարին հասէք, նա նրանց յետևից է ընկել մենակ։ Ա՜խ, անզգոյշ տղայ,—ասաց տէրտէրը ծընկներին տալով — դէ՛ շուտ հա՛, շարունակեց նա. անօրէնները շատ կը լինեն, իմ տունը կաւերեն և էսօր մէկի տեղ երկու դաղ կը քաշեն մեր սրտին. դէ՛ շո՛ւտ հասէք։

Երիտասարդները շփոթուած առաջ վազեցին։ Բայց դեռ գիւղից չէին դուրս եկել, որ նրանց հանդէպ դուրս եկաւ Ռաշիդը աղջկան ձիու վրա դրած, իսկ կապուած աւազակին առաջն արած։ Ո՞վ կը պատմէր. ուրախութիւնն ընդհանուր եղաւ։ Մայրն ու փոքրիկ երեխաները վրա պրծան փաթաթուեցին Սալբիին, որ մօր գրկի մէջ յուզմունքից մարեց։ Մի քանիսը խանձարուրով պատեցին Միսօի գլուխը, իսկ բազմութիւնը շրջապատեց աւազակին և Ռաշիդին։

— Տղե՛րք, դարձաւ Ռաշիդը դէպի բազմութիւնը, երեւում է, որ այս շները մեզ վրա ոտք են վերցրել. ո՞վ էր տեսել ասիանցին սիրտ անի, Բանոնից աղջիկ փախցնի: Տօ, սրանք մեր գառանը սիրտ չեն արել մօտենալ. սրանց մի լաւ խրատ պէտք է տալ, այ էս շան գլուխը ջախջախենք, ձգենք գետը տանի, որ էլ ոչ մէկը սիրտ չանէ էն սարերից դէսն անցնել: Դէ՜հ, կապեցէք սրան սայլից: Մի քանի երիտասարդներ վայրկենապէս բռնեցին և դէպի սայլը քաշ տուին աւազակին. վերջինս ճչում էր, լաց լինում, նրանց բախտին դիմում, աղերսում, որ խնայեն իրան:

— Կացէ՛ք, մէջ մտաւ տէրտէրը, Ռաշիդ, զաւակս, թող չարն անցնի, արիւն մի՛ թափէք. նրանք արին, դու մի՛ արա, փառք տանք Աստծուն, որ նրանց չարութիւնը չը յաջողուեց. գլուխը քարը, թող կորչի երթայ, ժամանակը չար է…

— Տէրտէր, չէմ սպանի, լսում եմ քեզ, բայց պէտք է այնպէս խրատեմ, ինչպէս որ դու մեզ խրատում էիր, երբ դաս էիր տալիս: Տղե՛րք, այս շանը կապեցէք սայլից գլխիվայր: Մի րոպէ չանցած ասիանցի աւազակը գլխիվայր կախուած ճօճում էր սայլի յետին մասում և Ռաշիդը կարող ձեռքով անխնայ ճիպոտի հարուածներ էր տալիս նրա մերկ

ոտներին ու մարմնին.—Նա գոռում էր, տրնքում, վայում, աղաչում, որ խնայեն, բայց հարուածները տեղում էին ու տեղում։

— Բաւական է, վերջապէս գոռացին տէրտէրը և ռէսը, թող տուէք կորչի երթայ։

Աւազակին արձակեցին, նա հազիւ էր ոտների վրա կանգնում, և օրօրուելով հեռացաւ։ Բազմութիւնն սկսեց ցրուել, և երկար չանցած գիւղում կրկին տիրում էր գիշերային խաղաղութիւնը։

Գարնանային գեղահրաշ առաւօտ էր։ Մարալայ սարերն ու ձորերը դեռ լողում էին վաղորդեան աղջամուղջի մէջ, և նրանց կանաչազարդ կատարները գծագրուելով երկնակամարի կապուտակ ֆոնի վրա, ասես ամպերի կոյտեր լինէին։ Կանաչապատ բլրակները, շամանդաղի միջից հազիւ նկատելի ստուերագծերով խիտ առ խիտ իրար վրա կուտակուած, հսկայական հօտի էին նմանում, որին հովուի սրնգի ձայնը դեռ չէր վերկացրել առաւօտեան արօտի։ Այս կանաչազարդ լեռների, այս գեղանկար բլրակների միջից մերթ երևալով և մերթ ծածկուելով հոսում էր գետակը, ոլորուելով վիրաւոր օձի պէս, որ երբեմն ցոյց էր տալիս իր փայլուն արծաթագոյն մէջքը, իսկ երբեմն կորչելով ձորերի խորութեան մէջ, իր ներկայութիւնը յայտնում էր խուլ խշխշոցով։

Մօտ էր արշալոյսը։ Օրուայ այն ժամն էր, երբ լեռ ու դաշտ, ծառ ու ծաղիկ, աղբիւր ու առուակ ննջած, շունչները բռնած, անձայն, լուռ, ասես վախենալով խանգարել սքանչելի ներդաշնակութիւնը, սպասում են բնութեան այն հրաշալիքին, որ արշալոյս անունն է կրում։ Փչում էր առաւօտեան մեղմ, զով քամին, օրօրելով, իրար տալով լեռների և հովիտների ծաղիկներն ու խոտերը։ Մարալայ սարերի թիկունքից դէպի վեր երկինքը շառագունուել էր արշալուսի նկարչական գոյնով։ Արևի առաջին ոսկեգոյն շողերը խուրձ-խուրձ թռան ընկան լեռների կանաչապատ ցօղազարդ կատարներին, ապա հետզհետէ ցածրանալով պայծառ լուսով ողողեցին ցօղազարդ բլուրներն ու դաշտերը։ Կանաչների ադամանդեայ փայլուն ցօղերը գոլորշիանալով նախ մի համատարած նուրբ շամանդաղով ծածկեցին ամբողջ հարթութիւնը, ապա կամաց-կամաց շրջակայքը պարզուեց, արևի ոսկեայ գունդը բարձրացաւ ջինջ, կապուտակ ու ժպտուն երկնակամարի վրա։ Տեսարանը սքանչելի էր։

Բայց այս բոլորը չէին գրաւում այն ձիաւոր երիտասարդին, որ սանձը իր ճերմակ ձիու պարանոցին գցած՝ հանդարտ գնում էր դէպի Մարալայ սարերը։ Դա Ռուշիդն էր։

Տխուր էր երիտասարդը. ասես նա չէր տեսնում լեռների ու դաշտերի կանաչազարդությունը, հրաշալի արշալույսն ու արևածագը, չէր լսում քարափներում կչկչացող կաքավների, գայլայլող հարիւրաւոր թռչունների քաղցր ձայները, որ միախառնուելով գետակի խշխշոցի հետ՝ կազմում էին մի քաղցր, մի ուշագրաւ համերգ:

Պարզ էր, որ մի ծանր վիշտ ճնշում էր երիտասարդի սիրտը, ուր գուցէ այնքան խաւար էր, որքան ամպամած գիշերը: Ճակատի խոշոր ծալքերը փայլուն ապացոյց էին նրա ներքին աշխարհի: Հաւատարիմ նժոյգը, կարծես զգալով իր տիրոջ հոգեկան վիճակը զգուշանում էր նրան անհանգիստ անել, խանգարել, խռովել նրա մտքերը և ուշադիր բնազդով քայլում էր դաշտավայրերի միջով: Տխուր է Ռաշիդը, նրան տանջում է Զարէի սէրը. կտրել կաշկանդող կապերը, մոռանալ սիրած աղջկան, հեռանալ նրանից, նա չի կարողանում: Ընկճուած կամքն այլ ևս ոյժ չունի, բանականութիւնը լռել է. նա իր սրտի և զգայականութեան ստրուկն է դարձել. խուսափ՝ շարունակել գաղտնի տեսակցութիւնները այս ամայի լեռներում, մինչև երբ, և ինչո՞վ կը վերջանայ... Հեռևանքը կրկնակի վտանգաւոր է. եթէ ասիանցիները մի կերպով

իմանան, որ շատ հեշտութեամբ կարող է պատահել, այն ժամանակ գործն առանց արեան վերջանալ չի կարող։ Վիրաւորուած ասիանցիները մահու գնով կառնեն իրանց բէկի աղջկան հասցրած անարգանքի վրէժը, և ով գիտէ, գուցէ այդ պատճառով տուժի և իր հայրենի գիւղը։ Այս դեռ քիչ է. նա վերջին դէպքում հայրենակիցներից դ ա ւ ա ճ ա ն անուանը կարժանանայ։

Ահա թէ ինչ ժանր մտքեր էին պաշարել նրան. երբ հասաւ Աստուածածնի բլրին, նա գլուխը վեր բարձրացրեց, նայեց աւերակ սրբավայրին և երկիւղածութեամբ խաչակնքեց իր երեսը. շարժեց ձիուն և առաջ արշաւեց, որովհետև հեռու մի բլրի գագաթին կանգնած տեսաւ իր Զարէին։ Տխուր ճնշող մտքերը թողին նրան, սիրած աղջկայ տեսքը լցրեց նրա սիրտը մի անսահման բաւականութեամբ. նա մոռացաւ և՛ երկիւղ, և՛ վտանգ, և՛ ամօթ, և՛ նախատինք։ Զարէն բլրի գագաթից դիւթել, յափշտակել էր, նրան քաշում գրաւում էր, որպէս լուսաւոր փարոսը ալիքների մէջ մոլորուած նաւին։ Ուշիմը թռչում սլանում էր, ասես սիրոյ թևերի վրա. ինչե՜ր չէր տայ մի ժամ, մի րոպէ առաջ գրկելու այն սքանչելի պատկերը։

Ահա՛ նա վերջապես սովորական ժպտի յետևն է․ քիչ յետոյ գալիս է Զարէն, և նրանք գրկախառնւում են և գուրգուրում իրար, որպէս զոյգ աղաւնիներ։

— Ա՜խ, Ռաշիդ ջան, ինչքան վատ կը լինէր, եթէ այսօր չը գայիր․ աչքս ջուր կտրեց մինչև տեսայ քեզ․ լաւ որ եկար, ասում է Զարէն և աւելի ու աւելի մօտ սեղմւում նրան և համբուրում Ռաշիդի ճակատն ու շրթունքները։ Ապա իր մեծ փայլուն աչքերը սևեռելով նրա դէմքին, նայում է երկար, շա՜տ երկար սիրատապ հայեացքով, կարծես աշխատելով նրա դէմքի վրա կարդալ նրա ներքինը, նրա սրտի գաղտնիքը։

Բայց յանկարծ նրա պարզ աչքերը պղտորուեցին, արտասուքները կախուեցին նրա արտևանունքներից և նա հազիւ զսպելով իր հեկեկանքը, ծածկեց իր դէմքը Ռաշիդի կրծքի մէջ ու կարծես էլ չէր կամենում բաժանուել այնտեղից։ Ռաշիդն սկզբում չը հասկանալով բանի էութիւնը, աղջկայ արածը միմիայն գուրգուրանք համարելով, սկսեց քնքշաբար շոյել նրա խիտ սև մազերի հիւսերը․ բայց յանկարծ զգաց իր կրծքի վրա նրա հեկեկանքըն ու ցնցումները․ նա զարմացաւ և երկու ձեռքով բռնելով նրա գլուխը, բարձրացրեց նրան և երկար փորձող հայեացքով սկսեց

նայել աղջկայ արտասուաթօղ դէմքին ու աչքերին։ Զարէն տխուր էր, շա՜տ տխուր․ արցունքները թափւում էին նրա սիրուն աչքերից և ողողում էին կարմիր, բորբոքուած այտերը՝ դարձնելով նրան է՛լ աւելի գրաւիչ, է՛լ աւելի գեղեցիկ։

— Զարէ, գառնուկս, դու դարդ ունիս, տխուր ես և ինձնից թագցնում ես․ ասա՛, ի՞նչ է պատահել քեզ․ ձերոնք իմացե՞լ են…

— Ռաշիդ ջան, ոչինչ չի պատահել, հէնց այնպէս արտասուեցի, վատ երազ եմ տեսել, տխրել եմ։ Երազիս դու նստել էիր մեր սև ղօչի վրա և գնում էիր մի ինչ որ շատ հեռու տեղ, մի սարի վրա վազեցի, բայց չը հասայ դու գնացիր ու գնացիր։ Զարթնեցի՝ երազ էր, բայց տխրեցի․ ախր սև ղօչը փիս բան է, Ռաշիդ ջան, շա՜տ փիս․ բայց այդ թողնենք, մի բան հարցնեմ կասե՞ս…

— Այդ ի՞նչ խօսք է․ մի՞թէ դու չը գիտես, որ ես քեզանից ոչինչ չեմ ծածկել։

— Ռաշիդ ջան, ուղի՛ղն ասա, դու ինձ սիրո՞ւմ ես։

— Ի՞նչ տարօրինակ ես այսօր, Զարէ, ի՞նչ է պատահել քեզ, ինչո՞ւ ես հարցնում․ մի՞թէ չը գիտես, որ ես քեզ կեանքիս չափ սիրում եմ․

— Սիրում ես, դէ երդուիր։

— Վա՜հ, չե՞ս հաւատում։ Երդւում եմ քո և իմ արևով, երդւում եմ սրովս, որ ես քեզ սիրում եմ։

Աղջիկը կրկին խանդաղատանքով փաթաթուեց նրա պարանոցով, կրկին գլուխը թագցրեց նրա կրծքի մէջ և այնպէս եռանդով, այնպէս սիրով, ասես մէկը կար, որ գալիս էր խլելու նրանից իր սիրածին, բռնի կերպով բաժանելու իրարից։ Զարէն շարունակում էր հեկեկալով լալ։

— Զարէ, կոչեց Ռաշիդը, աւելի ես զարմացած և յուզուած, գառնուկս, ախր ի՞նչ է պատահել քեզ, եթէ մի բան կայ, ասա, եթէ ոչ, ինչո՞ւ ես լալիս։

— Ռաշիդ ջան, լսիր իմ խօսքին, արի փախչենք այստեղից։ Թէ սիրում ես Զարէին, փախցրու նրան աշխրի պէս, կրկնեց աղջիկը իր արտասուալից աչքերը յամառութեամբ սևեռելով Ռաշիդի աչքերին։ Իմ երազը վատ է, ես վախենում եմ, ես կը գամ քեզ հետ, տար ինձ, ուր կուզես, տար հեռու, շա՜տ հեռու. այնտեղ, ուր ձեր փղաները շատ են ու հանդիստ են ապրում։ Ես էլ փղայ կը դառնամ և մենք կապրենք միասին. միայն շո՜ւտ, շուտ փախչենք, աղաչում եմ քեզ, իմ աննման իգիթ։

— Ինչո՞ւ համար դու այդ բանը միայն այսօր ասացիր, իսկ մինչև այժմ ոչ մի այդպիսի բան չես ասել, և ինչո՞ւ ես լալիս. ախր ի՞նչ է պատահել:

— Ես զուր տեղը ղօչ չեմ տեսել երազումս, որ մնանք քեզ կը սպանեն, հաւաս՝ կը սպանեն. ես էլ չէմ ապրի, Զարէն առանց Ռաշիդի մի օր էլ չի ապրի. ա՜յ, կելնեմ՝ էն սարի գլխից ինձ վար կը գլորեմ: Էդ խօ կարո՞ղ եմ անել: Ա՜խ, Ռաշիդ, մերոնք կատաղել են. մեր ասխանցուն անցեալ օրը այնքան ծեծել էիր, որ տուն եկաւ թէ չէ մեռաւ: Ախր ինչո՞ւ ծեծեցիր նրան. հիմա ինչ կանեք մերոնց հետ: Լուր է եկել, որ ձեր պաշտպան Խութն էլ շիկակներն աւերել են ու բոլորին կոտորել. մերոնք էլ այդ պատճառով այս գիշեր խորհուրդ արին մեր տան մէջ, որ ձեր գիւղի վրա յարձակուեն, կրակ տան ու կոտորեն. և նրանք կանեն. չը գիտե՞ս, որ ասխանցիների ձեռքը ճար ընի, ձեր երեխաներին էլ կը մորթոտեն:

Մի չարագուշակ սարսուռ անցաւ Ռաշիդի մարմնով:

«Խութն աւերել են, կոտորել են, կրկնում էր նա մտքի մէջ: Յիրաւի սա մի սարսափելի դոյժ էր: Ասխանցիներն այժմ ինչ ասես կը կատարեն Բանոնի գլխին: Պետք էր շտա-

պել գիւղ հասնել ժամ առաջ. պէտք էր ելք մտածել»:

Նա վեր կացաւ:

— Դու գնում ես, Ռաշիդ, և չես ուզում փախչել ինձ հետ, ուրեմն դու ինձ չես սիրում չէ՞ որ մնաս, քեզ անպատճառ կը սպանեն. իսկ Զարէն առանց Ռաշիդի ի՞նչպէս ապրի: Լսի՛ր ինձ քո բախտն եմ ընկել, արի փախչենք, ոտքերդ ընկած աղաչում եմ, ասաց աղջիկը լացակումած և ծունկ չոքեց Ռաշիդի առաջ աղիողորմ արտասուելով:

Յուզուած Ռաշիդը, ինչ անելը չիմանալով, մի րոպէ ապշած մնաց, առանց նայելով իր ոտների տակ ցնցուղ գեղահասակ աղջկան, որի թիկունքի վրա փռուած էին ճոխ սև մազերը, ապա նա յանկարծ ուշքի գալով կռացաւ, քնքշաբար բարձրացրեց նրան և համբուրեց արտասուացօղ այտերը և դողդոջուն շրթունքները:

— Զարէ ջան, մի լար, հոգիս, ասաց նա. ինձ այնպէս հեշտ չէ սպանելը. Ռաշիդին սպանելը դժուար է: Մի՛ վախենար: Ախր այժմ ես քեզ հետ ի՞նչպէս փախչեմ: Ո՞ր իգիթը, եթէ նամարդ ստորահոգի չէ, յանձն կառնի այսպիսի վտանգաւոր ժամանակ թողնել իր հայրենի գիւղը, իր վաթանը կրակի մէջ և փախչել, ախր աշխարհը կը թքի ինձ.

մի՞թէ դու կուզես, որ քո Ռաշիդին ամենքն էլ նամարդ անուանեն։ Հոգիս, ինչու՞ ես մոռանում, որ ես ծնողներ, ազգականներ, հայրենակիցներ ունիմ, մի՞թէ վայել կը լինի իմ անուան, որ ես նրանց թողնեմ հազար ու մի վտանգի ենթակայ։

Ռաշիդի սգևորուած խօսքերը նպատակին հասան։ Աղջիկը փաթաթուեց նրա պարանոցով և մի տաք համբոյր դրոշմեց նրա ճակատին։ Հրաժեշտի համբոյր էր դա․ նրանք կըրկին և կրկին գրկախառնուեցան։ Տխուր էր այդ հրաժեշտը․ երուսին էլ թւում էր, թէ նրանք յաւիտեան բաժանւում են իրարից․ և այդ նրանց վերջին տեսակցութիւնն է։ Վերջապէս Ռաշիդը կարողացաւ ազատուել աղջկայ փաղաքշանքներից, թռաւ իր ճերմակի մէջքին, սլացաւ դէպի գիւղը․ իսկ Զարէն ժայռի կատարին կանգնած, դեռ երկար նայում էր նրա յետևից, մինչև նա բոլորովին ծածկուեց։

Գիշեր է։ Բանոնն ընկղմուած է խոր քնի մէջ։ Տներում վաղուց ճրագները մարել են։ Ամեն տեղ ձայն ու շարժումը դադարել է․ միայն Տէր-Մարուքի օդայում դեռ պլպլում է ձէթի ճրագը՝ մի աղօտ, խորհրդաւոր լոյս սփռելով իր շուրջը։ Այնտեղ նստողների դէմքերը հազիւ ճանաչւում են։ Վերևում նստած

է Տէր-Մարուքը, իր անբաժան տէր-ողորմեան ձեռքին համրելով. նրանից ցած, մինդարի վրա բազմել է ռէս-Պէտօն, որ ազահաբար կուլ է տալիս չիբուխի գառն, խեղդող ծուխը և ամեն անգամ, երբ քուլայ-քուլայ բարձրացնում է, սկսում է ծանր հազալ խռպոտ կրծքից: Այստեղ են և Մէլիք-Սարգիսը, Մէլիք- Առաքելը և մի քանի այլ ծերունիներ: Նստոտած օդայի աջ ու ձախ կողմերում ամենքն էլ մտախոհ են, ամենքի կնճռոտ ճակատը ծանր հոգսերի կնիք է կրում իր վրա: Բոլոր նշաններից երևում է, որ սրանք հաւաքուած են այստեղ մի ծանր, մի մաշող խնդիր վճռելու համար: Ամենքի հայեացքն ուղղուած է Տէր-Մարուքի և ռէս-Պէտօի վրա. իշխանների աւագներից սպասում են լսել ժողովի նպատակը.

— Ասխանցիները մեզ կրկին սպառնում են, ընդհատեց լռութիւնը ռէս-Պէտօն, Խութն խապառ տակն ու վրա են արել շէկակները. մենք մնացել ենք առանց օգնականի, առանց Թև ու Թիկունքի: Ռաշիդն էլ, չը գիտեմ որտեղից, հաստատ կերպով լսել է, որ այս օրերս մենք կենԹարկուենք ասխանցիների յարձակման: Ինչ պէտք է անել:

Տիրեց մէ ճնշող, չարագուշակ լռութիւն. պատկառելի ծերերի ճակատների կնճիռներն

է՛լ աւելի խտացան, խիտ սպիտակած յօնքերն է՛լ աւելի կիտուեցան։ Ամէնքն էլ զգում էին, որ դրութիւնը ծանր է և յուսահատական, բայց ելք գտնելն այնքան էլ հեշտ չէր։ Ամէն մէկը խորհում էր, բայց ոչ ոք չէր համարձակւում առաջինը խօսել. լռութիւնն ընդհատւում էր միայն տէրտէրի տէր-ողորմեայի միաձայն շրխկոցով և ռէս-Պէտօի խռպոտ հազով, իսկ չիբուխի ծուխը պալան-պալան բարձրանում էր, հա՜ բարձրանում։

— Ռէս-Պէտօ, ասաց վերջապէս Տէր-Մարուքը, երբ Խութը քարուքանդ է եղած և մենք մնացել ենք մենակ, ես կարծում եմ, մեզ մնում է միայն գաղթել և օր առաջ հեռանալ այս արիւնոտ երկրից։ Մեր գիւղը՝ իր հիմնարկութեան օրից մինչև այժմ տասն անգամ քարուքանդ եղած կը լինի, այս իւրդըն այլ ևս մեզ իւրդ լինել չի կարող. Թողնենք, հեռանանք՝ մեզ համար նոր վաթան, նոր իւրդ ճարելու.

— Տէ՛ր-տէր, մեռնեմ քո աջուն, այդ ի՞նչ ես ասում, կանչեց Մելիք-Սարգիսը։ Լաւ չէ՞ մեր հայրերի գերեզմանների մօտ թաղենք մեր թշուառ գլուխները, քան թէ նրանց մեզ կտակած վաթանը, մեր հայրենի սուրբ օջախը, մեր հայրենի գերեզմանները մեր ժամն ու սրբերը թողնենք անօրէնների ձեռքին։ Չէ՛,

պէտք չէ գաղթել, թէկուզ դրա համար հար-
կաւոր լինէր մեռնել. վաթանը կորցնելուց
յետոյ, կեանքը մի՞թէ որ և է գին ունի:

— Մէլիք, մէլիք, դու մոռանում ես, որ
մենք երեխաներ ունենք, որոնք ոչնչով ար-
ժանի չեն սպասուող անտանելի կացութեան.
նրանց ի՞նչպէս գոհենք, շարունակեց Տէր-
Մարուքը:

— Տէ՛ր-տէր, մի և նոյն է, գաղթելով մենք
նրանց դարձեալ մահուան ենք դատապար-
տում: Ո՞ւր գնանք, ո՞ւմ դիմենք, ո՞րի դռները
ծեծենք նրանց կերակրելու համար: Ո՞վ մեզ
մի անկիւն կտայ նոյն իսկ գլուխ դնելու:
Մեր զաւակները դարձեալ կը մահանան, մի-
այն դանդաղ, անարդական մահով, մուրացիկի
մահով. իսկ մնալով՝ գուցէ մեզ կը յաջողուի
պաշտպանուել, մինչև որ այս խառնակ դրու-
թիւնն անցնի, մինչև որ պարսից և օսման-
ցոց պատերազմը վերջանայ:

— Մենք Ռաշիդին ուղարկեցինք Ամին
աղայի օգնութիւնը խնդրելու, ասաց Մէլիք-
Առաքելը. ես կարծում եմ՝ գաղթելու կամ
պաշտպանելու մասին խօսք լինել չի կա-
րող, մինչև Ամին աղայի տրամադրութեան
մասին հաստատ բան չիմանանք: Ո՞վ գիտէ,
գուցէ այդ աղան յանձն առնի միանալ մեզ
հետ ի սէր այն թշնամութեան, որ նա տա-

ժում է դէպի ասխանցիները. սպասենք մի փոքր էլ. Ռաշիդը խօսք է տուել այսօրուայ ժողովին հասնել:

Առաջարկութիւնը խելացի էր: Ամէնքը նախ լսեցին, ապա սկսուեց խօսակցութիւն Խուլթի մասին. այս ու այն կողմից հարցեր էին ուղղում ռէս-Պէտօին, և նա պատմում էր ցաւալի կատարածի մանրամասնութիւնները, որքան իրան յայտնի էր: Անցան ժամեր:

Բակում լսուեց ձիու տրոփիւն, քիչ յետոյ ներս մտաւ Ռաշիդը, յարգանքով գլուխ տուեց նստողներին և կանգ առաւ դռան մօտ. գիւղի իշխանների և հօր ներկայութեամբ նա նստելու համարձակութիւն չունէր: Ամէնքն էլ լռեցին, հետաքրքրուած հայեացքները դէպի Ռաշիդն ուղղեցին: Նրա պատասխանից էր կախուած ամէնքի կեանքն ու մահը և աշխատում էին նրա դէմքի վրա կարդալ նրա ներքինը:

Ռաշիդը համառօտ կերպով հաղորդեց իր պատգամաւորութեան վախճանը: Ամիրն աղան շատ սիրալիր ընդունելութիւն էր ցոյց տուել նրան, և խոստացել էր մի քանի օրից յետոյ իր ցեղակիցներով օգնութեան հասնել:

Ուրախութիւնն ընդհանուր եղաւ, ամէնքի կնճիռներն էլ պարզուեցին. ուրախալի լուրը խնդրին վճռական կերպարանք տուեց, գաղ-

թելու միտքն իսպառ մերժուեց. վճռեցին մնալ գիւղում, իսկ մինչև ամին աղայի հասնելը գիւղը պաշտպանողական դրութեան մէջ դնել։ Ռաշիդը յանձն առաւ միւս օրը վաղ առաւօտից իր ընկեր երիտասարդների հետ գիւղի փողոցներում սանգեառներ կապել և զինուած հսկողութիւն կատարել գիշերները։ Խորհուրդը վերջացաւ։ Ժողովականները մէկիկ-մէկիկ լռութեամբ դուրս եկան և ցրուեցին։

Վաղ առաւօտից ամէնքը ոտի վրա էին, գիւղը զինւում էր, գիւղը դրւում էր պաշարման դրութեան մէջ։ Պէտք էր փողոցների ծայրերում պատնէշներ, հողաթմբեր կազմել, կամ սայլերով ու գերաններով արուեստական ցանկապատեր—սանգեառներ շինել։ Ոմանք փորում էին, ուրիշները հողը բարձրացնում թմբերի վրա, մի այլ փողոցում թափւում էին սայլեր, լուծեր, գերաններ, որոնք հետզհետէ իրար հագցնելով փակեցին փողոցի մուտքը։ Պարապ ձեռներ չը կային, աշխատում էին նոյն իսկ մանուկներն ու կանայք. պառաւներն էին միայն, որ պատրաստութիւնների բոլոր չարագուշակ ահաւորութիւնը և սպառնացող թշուառութեան բոլոր լրջութիւնը զգալով, խրճիթների դռների առաջ կանգնած, վախ-վախ էին անում, իրանց

ծնկները ծեծում չորացած ձեռներով և մաշած աչքերից արտասուքի խղճուկ կաթիլներ էին քամում։

Մինչև գիշերը գիւղի պաշտպանողական բոլոր ենթադրուած միջոցներն ի կատար էին ածուած։ Փողոցների մուտքերը փակուած էին սնդուկներով, խրամատներով և պատնէշներով։ Եկեղեցու կտրին տեղ էին բռնել մի խումբ հրացանաւոր երիտասարդներ. մնացած խմբերը ցրուել էին այս ու այն կասկածելի փողոցներում։ Անհրաժեշտ էր նաև թշնամիների ճանապարհի վրա պահապաններ դնել, որ նրանց երևալուն պէս իմաց տան պատրաստելու։

Այս նպատակով Ռաշիդը մի խումբ ջոկեց և դիմեց դէպի Տիրամօր բլուրը. խումբն անմիջապէս մագլցելով բարձրացաւ և բլրի այս ու այն կողմում, այս ու այն ժայռի չետևում յարմարաւոր տեղեր գրաւեց։

Վրա հասաւ գիշերը. խաւար և ահաւոր գիշեր։ Ռէս-Պէտօն և Տէր-Մարուքը միասին շրջեցին գիւղի բոլոր փողոցները, դիտեցին պատրաստութիւնները, քաջալերեցին պահապան երիտասարդներին, իսկ խռոված ու յուզուած կանանց ու երեխաներին խորհուրդ տուին գնալ քնելու, հաւատացնելով, որ դրութիւնն այնքան էլ վտանգաւոր չէ. Աս-

տուած ողորմած է, շուտով օգնութիւն կըստանան։ Ոմանք՝ համեմատաբար աւելի սըրտոտները, ներս մտան մի կերպ պառկեցին քնելու, ինչպէս և փոքրիկ մանուկները։ Իսկ վախկոտները թէև ներս մտան, բայց քուն չը մօտեցաւ նրանց աչքերին, խեղճերն այս ու այն անկիւնում կուչ եկած նստեցին, ականջներն աղմուկի, հրացանաձգութեան պահելով։ Եւ գիւղը լռեց։

Կէս գիշերը մօտ էր. չորս կողմից ոչ մի ձայն չէր լսւում. միայն գետակը յամառ կերպով շարունակում էր ծեծել իր ժայռոտ ափերը և աղմկում էր շրջակայքը։ Անյիշելի ժամանակներից նա ծեծում էր այդ ժայռերը, նոյն իսկ Բանոնը վաղուց էր սովորել նրա որոտմունքի տակ հանգիստ քնանալ, իսկ մանուկներն իրանց օրօրոցներում այդ ձայնով աւելի հանգիստ էին քնում։ Սա մի հսկայական օրօր էր նրանց համար. բայց այսօր՝ այս գիշերուայ անհաւոր պահուն, կասես գետի ձայնն աւելի զօրեղ էր, գոռոցն աւելի ահաւոր, արթուն գիւղացիք անգամ սոսկում էին նրա ձայնից. անցաւ դարձեալ մի քանի ժամ։

Յանկարծ լսուեց մի հրացանի ձայն. ինչքան և բարձր էր գետի գոռոցը, դարձեալ չը կարողացաւ խլացնել այդ ձայնը, որ լսուեց Տիրամօր բլրի կողմից և որ միանգամայն

բաւական էր, որ զարհուրած գիւղը՝ մինչև ամենափոքր երեխան ոտքի վրա լինէին։ Նուտով այդ որոտին յետևեց բազմաթիւ հրացաններրի տրաքոց, պարզ էր, որ Տիրամօր բլրի մօտ Ռաշիդի խումբն ընդհարւում էր թշնամիների հետ։ Հրացանաձգութիւնը հետզհետէ մօտենում է, և կէս ժամ չանցած՝ Ռաշիդն իր ընկերներով ներս մտաւ գիւղը, ուր ամենքն արդէն զարթել էին։ Մեծ թէ փոքր, մարդ թէ կին թափուել էին փողոցները և սարսափած հետևում էին ահաւոր անցքերին։

Գիւղից ոչ հեռու երևեցան ձիաւորուած ստուերներ, և լսուեցին ոտների ձայներ. և յանկարծ տասնեակ հրայրին լեզուներ սոսկալի որոտով պկօսեցին թանձր խաւարը և բազմաթիւ գնտակներ անախորժ վզվզոցով զարկուեցին այս ու այն պատնէշին, այս ու այն հողաթմբին։ Երիտասարդները չորս կողմից պատասխանեցին նոյնպիսի հրացանաձգութեամբ։ Թշնամիների խմբի մէջ շփոթ ու աղմուկ բարձրացաւ։ Սպանուածներ ընկան արդեօք, թէ՞ ձիեր սատկեցին, այդ ոչ ոք չիմացաւ. միայն ստուերները ցրիւ եկան և լսուեց սրարշաւ հեռացող ձիերի արոփիւն։ Ասխանցիները անսպասելի դիմադրութեան հանդիպելով և գիւղը պաշտպանուած գըտնելով՝ թողին հեռացան։ Անշուշտ նրանք

փոքրիկ խմբով եկել էին մի փորձ անելու ապագայ յարձակումների աջողութեան համար, կամ անակնկալ յարձակումով սարսափահար անելու քնած, անպատրաստ գիւղը. բայց նրանց յոյսերն ի դերև անցան։

Լոյսը բացուեց. դարձեալ արևը ծագեց Մարալայ սարերի թիկունքից և արար-աշխարհի հետ լուսաւորեց նաև այս սարսափած գիւղը։ Տների կոնուսաձև կտուրներից մի քանիսի վրա ծխի ոլորապտոյտ սիւներ երևեցան։ Կանայք վառեցին թոնիրները հաց եփելու։ Ոչ ոք չը գնաց դաշտ աշխատելու, գիւղն այս առաւօտ չաղմկուեց դաշտ գնացողների երգերով և ուրախ կատակներով. անասուններն անգամ գոմերում փակուած մնացին տխուր բառաչելով։

Արևը բարձրացաւ։

Կէսօրը մօտ էր, երբ յանկարծ Մարալայ սարերի հակառակ կողմից փոշու ամպեր բարձրացան. գիւղացիները կտուրները բարձրացած և հարիւրաւոր մարդիկ՝ մեծ ու փոքր, մարդ թէ կին ձեռքի թաթով աչքի վրա ստուեր անելով՝ հայեացքներն ուղղեցին հեռուն, դէպի այն կողմը, ուր բարձրանում էր փոշին։ Տարակոյս չը կար, որ այդ թանձր, ամպանման փոշին բազմաթիւ ձիերի ոտքերի տակից էր բարձրանում. բայց ո՞վքեր էին

արդեօք եկողները. Ամին աղայի ձիաւորներն են, թէ՞ ասխանցիների հրոսակախումբն է յարձակում գործում հակառակ կողմից: Գիւղում կրկին իրարանցում տիրեց, աղմուկ ու շփոթ բարձրացաւ. ամէնքին տանջում էր այն միտքը, թէ ինչ կը լինէր իրանց վիճակը. եթէ եկողները ասխանցիները լինեն և այն էլ խիստ մեծ բազմութեամբ: Մի ժամ չանցած, Բանոնի շրջակայքի բլուրները ծածկուեցին ձիաւորների ահագին բազմութեամբ. ընդհանուր տխրութիւնը ցնծութեան փոխուեց, երբ յայտնի եղաւ, որ եկողը Ամին աղան է իր բազմաթիւ «տուլամներով»: Գիւղը փըրկուած էր, գիւղացիները գրկաբաց ընդունեցին աղային իր հետևորդների հետ. իսկ տէր-Մարուքն ու ռէս-Պէտօն շրջապատուած միւս իշխաններով ընդառաջ գնացին գիւղից դուրս և խորին յարգանքի արտայայտութիւններով ներս ընդունեցին պատուաւոր հիւրին:

Խրճիթների կոնուսաձև կտուրների վրա ոլորապտոյտ ծխերի սիւներ բարձրացան. այս ու այնտեղ լսուեցին մորթոտրող դառների բառաչ, ուլերի մկկոց, հաւերի ճվճվոց. համարեա բոլոր տներում թանգագին հիւրերի համար հազուագիւտ կերակուրներ էին պատրաստւում: Քիւրդերը ճաշեցին և հանգիստ առան:

Գիշերը մօտենում էր. ասիանցիների նոր յարձակումն կարող էր տեղի ունենալ, մանաւանդ որ Թշնամիները չը գիտէին Ամին աղայի օգնութեան մասին. հարկաւոր էր նախազգուշական միջոցներ ձեռք առնել: Այս անգամ կարգադրութիւններ անողը բացառապէս Ամին աղան էր: Որպէս զի Թշնամիների յարձակման մասին շուտով գիւղին իմաց տրուի, որոշուեց Աստուածածնի բլրի վրա կրկին մի խումբ պահապաններ կարգել, դրանց հրացանի առաջին ձայնը Թշնամիների մօտենալու նշան պէտք է համարուէր և անմիջապէս Ամին աղան կուղարկէր իր ձիաւորներին, որպէս զի Թշնամուն հէնց ճանապարհից հետ դարձնեն և կանանց ու երեխաներին արիւնոտ տեսարանների հանդիսատես չանեն: Պահապան խմբի առաջնորդութիւնը յանձնուեց Ռաշիդին, որպէս ճանապարհներին և տեղագրութեանը ծանօթ անձի. իսկ խումբը կազմուեց բացառապէս գիւղի երիտասարդներից, Ռաշիդի ընկերներից: Ռաշիդը սիրով յանձն առաւ այս գործը, գիւղը, բոլորովին ապահով համարելով Ամին աղայի պաշտպանութեամբ:

Պահապան խումբը գիւղից դուրս գալով դէպի Աստուածածնի բլրակը դիմեց. երիտասարդները տեղաւորուեցին այս ու այն կող-

մում։ Սպասում են. ոչ մէկի աչքին քուն չի մօտենում. Նախորդ գիշերուայ փոքր խրատական է։ Խաւար, շատ խաւար գիշեր է. ամպամած երկնքից լուսոյ մի նշոյլ անգամ չի ընկնում սև քօղով պատած երկրի վրա. մի քանի քայլ հեռու առարկաների ինչ լինելը որոշել չի լինում։ Համատարած լռութեան մէջ լսւում է միայն գետակի շառաչիւնը։ Անցան ժամեր. արդէն մօտենում է կէս գիշերը. պահապաններից շատերը, վերջին օրերի անհանգիստ, անքուն անցրած գիշերներից յետոյ, կամաց-կամաց ննջում են հրացանների կոթերի վրա կռացրած իրանց յոգնած գլուխները, ուրիշները կռւում են աւելի և աւելի սաստկացող քնի ցանկութեան դէմ և մերթ ծածկում են իրանց աչքերը, քաշ գցում գլուխները և, ապա յանկարծ գլուխները բարձրացնում, վեր ցատկում և վախեցած հայեացքով դիտում խաւար շրջակայքը։ Ռաշիդն է միայն անքուն, անթարթ աչքերը խաւար տարածութեան մէջ յառած այս ու այն կողմ անհանգստութեամբ շրջում հրացանն ուսին, և մերթ սրան, մերթ նրան ոտքով հրում, արթնացնում, որ զգոյշ կենան։ Գիշերային խաւարի մէջ անհամար հրէշների պէս հագիւ ծրագրուող աւերակների սև զանգուածները Ռաշիդի վրա առանձին ճնշող

տպաւորութիւն են թողնում. յանկարծ նրանց միջից լսւում է բուի չարագուշակ, անախորժ «վույ-վույը», Ռաշիդի սիրտը ճմլուեց, դեռ մանկութիւնից նա լսել և խորին կերպով հաւատացել է, որ բուի ձայնը խորհրդաւոր կապ ունի մի ինչ-որ խիստ մեծ դժբախտութեան հետ. ահա նա շրջելով վերջապէս կանգ առաւ մի քնած երիտասարդի գլխավերևը և կամացուկ հրեց ոտքով.

— Սւօ, այ Սւօ, դու է՞լ ես քնած, ամօթ չէ՞։

Սւօն սարսափած ու շփոթուած վեր ցատկեց, աչքերը տրորեց, շուրջը նայեց։

— Չէ՛, Ռաշիդ ջան, չեմ քնել, հէնց էնպէս աչքերս խփուեցին, փորձեց իրան արդարացնել նա։

Սւօն, Ռաշիդի մանկութեան ընկերը, նրա սիրելին և իր մի հատիկ քրոջ ամուսինն էր։ Երկու ընկերները նստեցին իրար մօտ։

— Գիտես ի՞նչ կայ, Սւօ, սկսեց Ռաշիդը, սիրտս այնքան տխուր է, այնքան տխուր է, որ քիչ է մնում վշտից պատռուի. զարմանալի բա՞ն, քանի որ Սմին աղան մեզ օգնութեան չէր եկել, քանի որ մենք մենակ էինք, ես անհոգ էի և ուրախ, այդ մարդի գալուց յետոյ ինչու՞ եմ ես տխուր, չը գիտեմ։

— Է՛հ, Ռաշիդ, ի՞նչ ես սիրտդ ահ գցում, Աստուծով ի՞նչ է եղել որ...

— Սիրտս ահ չեմ գցում, Աւօ՛ չեմ վախենում, տխո՜ւր եմ, տխուր, հէնց նոր էն անիծած «բայղուշը» այս տեղերում «վույ-վույ» կանչեց, Թո՛ղ Աստուած բարին կատարի։

— Բա՜յղո՞ւշը... հարցրեց Աւօն մի փոքր շփոթուած, պարզ էր, որ նրա վրա էլ այս նորութիւնն անախորժ տպաւորութիւն թողեց. դէ ի՞նչ արած, Աստուած մարդի պէտք է քեօմագ լինի, սուրբ Աստուածածինն ենք կանչել։

Երկուսով էլ լռեցին, խօսակցութիւնը շարունակել չէր լինում, որովհետև կրկին լսուեց բուի ահաւոր «վույ-վույը»։ Երկու ընկերները նայեցին իրար երես, աշխատելով այնտեղ կարդալ միմեանց ներքինը. գիշերային խաւարի մէջ այդ անկարելի եղաւ, միայն երկուսով էլ ակամայ աւելի պինդ սեղմեցին հրացաններն իրանց ձեռների մէջ և վեր կացան։ Նայեցին դէպի գիւղը, նայեցին դէպի խաւարամած շրջակայքը, նայեցին դէպի մառախլապատ երկինքը, ոչինչ չէր երևում, լուռ էր ամէն կողմ, և այդ լռութիւնը մի ծանր քարի պէս ճնշում էր մեր երկու երիտասարդների սրտերը։ Անցաւ դարձեալ մի ժամ։ Յանկարծ մի անօրինակ, մի հսկայ լոյսի ցնցուղ-

ներ ողջ շրջակայքը լուսաւորելով հասան բլրին, ուր նստած էին երիտասարդ պահապանները՝ դրա հետ միասին գիւղի կողմից լսուեցին հրացանների ձայներ. պահապան երիտասարդները՝ քնած թէ արթուն մէկէն վեր ցատկեցին իրանց տեղերից և ամենքի ապշած, զարհուրած հայեացքներն ուղղուեցին դէպի գիւղը, որն այժմ ծփում էր հսկայական բոցերի ծովի մէջ: Համարեա իւրաքանչիւր խրճիթ իր կողքի կամ վրայի խոտի դէզի հետ վառւում էր և ամբողջ գիւղը ներկայացնում էր մի չը տեսնուած սոսկալի հնոց: Հրացանների ձայների հետ միաժամանակ լսւում էր և՛ շների հաչոց ու կաղկանձոց, և՛ մարդկանց հարայ հրոց, և՛ կանանց աղեխարշ վայնասուն, և՛ երեխաների սրտաճմլիկ ճիչ: Պարզ էր, որ այնտեղ մի սարսափելի ողբերգութիւն էր կատարւում, որ գիւղը մի դժոխք էր դարձել, ուր գեհենի բոցերի մէջ կենդանի կենդանի խորովւում էին բնակիչները: Երիտասարդները մի բոպէ չէին հաւատում իրանց աչքերին ու ականջներին. Նրանց թւում էր, թէ սա մի երազ է, սակայն հրդեհը շարունակւում էր, ձայները լսւում էին, ոչ մի կասկած չը կար, որ Թշուառ Բանոնը զոհ էր գնում սև դաւաճանութեան:

— Տղերք, կոչեց Ռաշիդը. մենք խաբուած ենք, Ամին աղան մեզ ծախեց, նա մեզ դաւաճանեց, նա դիտմամբ ուղարկեց մեզ այստեղ. իջնենք դէպի գիւղը:

Ասաց Ռաշիդը և համարեա ցած գլորուեց բլրից, նա այլ ևս չէր նայում վտանգներին, ժայռերին, քարափներին, խոռոչներին այլ կատաղած առիւծի պէս ոչ թէ իջնում, այլ գցւում էր իրան: Երիտասարդներն իրանց անվեհեր առաջնորդին հետեւելով նոյնպէս ցած թափուեցին այս ու այն քարափից, այս ու այն ժայռից: Մի քանի րոպէ չանցած ամբողջ խումբն արդէն բլրի ստորոտումն էր և պատրաստւում էր վազել, երբ յանկարծ հակառակ կողմից ոտնաձայներ լսուեցին, և մինչև որ նրանք կը դիտէին եկողներին, իրանց շրջապատուած գտան ասի-անցիների բազմաթիւ խմբերով: Սկսուեց ճակատ առ ճակատ մի սոսկալի կռիւ երկու անհաւասար ոյժերի մէջ: Քաջարի խումբը վճռեց շատ թանգ ծախել իր կեանքը: Կեանքի և մահուան յուսահատ օրհասական կռիւ էր այդ: Ռաշիդը վիրաւոր գազանի պէս որոտաց՝ քաջալերելով իր ընկերներին. Թշնամիները թափւում էին նրանց հարուածների տակ, արիւնը ողողել էր նրանց և ոտների տակի հողը, բայց և խումբը նուաղում ու

նուազում էր. երկու կողմն էլ փոխադարձապէս թափում էր իր հակառակորդի գլխին տարիներից ի վեր մթերուած ատելութեան թոյնը, վիրաւորները հռնդիւնով ընկնում էին տակաւին կենդանի մնացածների, կռուողների ոտների տակ, շատերը ճխլւում մահանում էին, մարդիկ մորթւում էին, արիւնը վազում էր աղբիւրի պէս, և այս բոլորը լուսաւորւում էր գիւղի հրդեհի բոցերի լոյսով, որ գունատ, մեռելային տեսք էր տալիս զարհուրելի տեսարանին: Չը նայելով թշնամիների անհաւոր բազմութեանը, այնուամենայնիւ Ռաշիդը վճռեց՝ ինչ էլ որ լինի, իր խմբի մնացորդով պատռել թշնամիների շղթան և հասնել գիւղին. բայց այս յանդուգն փորձը սոսկալի վախճան ունեցաւ — Ռաշիդը մէկ էլ շուրջը նայեց և այս անգամ իր ընկերներից երեքին գտաւ իր շուրջը հարիւրաւոր թշնամիների մէջ: Էլի մի քանի րոպէ և տարաբախտ երիտասարդը վերջին ընկերներից էլ զրկուելով՝ վերջապէս կենդանի-կենդանի թշնամիների ձեռքն ընկաւ: Այսպէս էր եղել Նադօ աղայի հրամանը — ողջ-ողջ բռնել Ռաշիդին:

Արիւնաթաթախ և ուժասպառ քաջին կապոտելով՝ դէպի Նադօ աղայի տունը տարան: Թշուառ երիտասարդը ձիու վրայից իր հրացայտ, կատաղութիւնով լի աչքերը դէպի

հայրենի գիւղը դարձրեց, կրկին տեսաւ հազարաւոր հրեղէն լեզուները, որոնց զոհ էր գնում իր սիրելի վաթանը, լսեց այդ բոցերի միջից հնչուող աղեխարշ աղաղակները, Նրա սիրտը ճմլուեց, աչքերն ասես ոլորուեցին և արտասուքի խոշոր կաթիլները եկան կախուեցան նրա արտևանունքներից։

— Անօրէննե՜ր, մռնչաց նա։

Նրան տարան...

—

Ռաշիդը չէր սխալուել։ Ամին աղան ամենաստոր կերպով դաւաճանեց նրան։ Բարեկամական հրաւէր ստանալով բանոնցիներից, նա շտապեց անմիջապէս գաղտնի կերպով դաշն կռել իր նախկին թշնամի Նադօ աղայի հետ։ Նախապէս կազմուած և երկու բէգերից ընդունուած ծրագրի համաձայն, Ամին աղան իբրև բարեկամ մտաւ Բանոն և երբ Ռաշիդին իր արիասիրտ ընկերների հետ միասին կարողացաւ պատրուակով գիւղից հեռացնել, Նրա մարդիկը կանխապէս ստացած հրամանի համաձայն անպաշտպան մնացած գիւղը հարիւրաւոր կողմից կրակ տուին։ Եւ այն ժամանակ, երբ զարհուրած գիւղացիները հասկացան Ամին աղայի դաւաճանութիւնը և իրանց թշուառութիւնը, արդէն շատ ուշ էր, գիւղը բռնկուած էր բոցերով,

և սկսուած էր կոտորածը: Սկսուեց ընդհանուր փախուստ. հայրենի յարկն ու իրանց ինչքն ու ստացուածքը կրակին և թշնամիներին յանձնելով՝ նրանք բռնեցին իրանց մեծ ու փոքր զաւակների ձեռներից և գնդակների միջից անցնելով՝ ով կենդանի մնաց, փախաւ դէպի դաշտ, դէպի լեռներն ու ձորերը: Բնակիչների մեծ մասը փախաւ, իսկ փրկութեան յոյսը կտրած թշուառները բազմութեամբ դիմեցին Ամին աղայի գթասրտութեանը, որի հրամանով մի առ ժամանակ հրացանաձգութիւնը դադարեց:

— Ֆլանե՛ր, գոչեց Ամին աղան, տեսնում էք, որ ձեր կեանքն ու մահը իմ ձեռքին է. եթէ կամենում էք ապրել. բերէք իսկոյն այստեղ և իմ առաջն ածեցէք ձեր հարստութիւնը, ձեր կանանց ու աղջիկների զարդերը:

— Ա՛ռ, աղա՛, ա՛ռ ինչ ուզեմ ես, միայն մեզ, մեր զաւակներին մի՛ կոտորի, քեզ լինի մեր տունն էլ, տեղն էլ, մեր հարստութիւնն էլ, թո՛ղ միայն մենք բռնենք մեր զաւակների ձեռքից և գլուխ առնենք կորչենք այստեղից, քո բաղդն ենք ընկել: Այսպէս էին աղաղակում Ամին աղայի ոտների տակ թափթփուած ծերեր ու կանայք բռնած իրանց զաւակների ձեռներից, որոնք զարհուրած չորս կողմի արիւնոտ տեսարաններից և համաճարակ

հրդեհից, իրանց սրտաճմլիկ ճիչերը խառնում էին գոռացող բոցերի ձայների հետ։

Ամին աղայի ցանկութիւնը կատարուեց. կանայք իրանց պարանոցների և գլխների զարդերը պոկելով ածեցին նրա առաջ, տղամարդիկ բերեցին իրանց տարիների դառն աշխատանքի պտուղները և թափեցին իրանց դահճի ոտների տակ, ուր մի ժամում գոյացաւ արծաթեայ և ոսկեայ զարդերի ու դրամների մի ահագին կոյտ։

Հէնց այդ ժամանակ ասխանցիներն էլ նախամտածուած ծրագրի համաձայն Ռաշիդի խմբի հետ իրանց արիւնոտ գործը վերջացնելով՝ Նադօ աղայի առաջնորդութեամբ գիւղը թափուեցին։

Երկու աղաները հին բարեկամների նման ժպիտները դէմքերին ողջագուրուեցին։

— Նադինչները (անհանդիստները) դինջացա՞ն, հարցրեց Ամին աղան։

— Դինջացան, կարճ կերպով պատասխանեց Նադօն։

— Իսկ նրանց գլխաւորը։

— Կենդանի բռնուած է. ափսո՜ս միայն, որ մենք էլ կորցրինք մօտ յիսուն մարդ։

Այս մի քանի բառերով հաղորդուեց Աստուածածնի բլրի տակ տեղի ունեցած արիւնոտ գործի բոլոր պատմութիւնը։ Ապա երկու

աղաների մէջ մի կարճ խորհրդակցութիւն կատարուեց։ Թէ ինչ խօսեցին նրանք, ինչ վճռեցին, այդ ոչ ոք չը լսեց, միայն խորհրդից անմիջապէս յետոյ նրանք հրամայեցին բոցերից ու գնդակներից զերծ մնացած բոլոր բնակիչներին հաւաքել գիւղի հրապարակում։ Իրանց հայրենի յարկերը լափող բոցերի ահաւոր լուսաւորութեան տակ այդ թշուառները բաժանուեցին երկու խմբի, մի կողմում տղամարդիկ և միւս կողմում կանայք ու երեխաներ։ Մարդը կնոջից բաժանուեց, եղբայրը քրոջից, հայրը իր զաւակներից և ամէնքը կարծես բնազդմամբ հասկանալով այդ պատրաստութիւնների բոլոր չարագուշակ նպատակն ու խորհուրդը՝ մի այնպիսի վայնասուն էին բարձրացրել, որից քարերն անգամ կարտասուէին, բայց այդ բոլոր ողբերին ու արտասուքներին նրանց դահիճները պատասխանում էին լպիրշ հռհռոցով։ Այս բոլորից յետոյ յանկարծ հարիւրաւոր հրացանների փողերն ուղղուեցին տղամարդկանց խմբի վրա, գնդակներն անախորժ վզվզոցով թռան և հարիւրաւոր զոհեր թաւալգլոր ընկան իրանց արեան մէջ ճապաղուած՝ սոսկալի հռնդիւն, ոռնոց ու հառաչանք արձակելով արիւնոտ կրծքերից։ Կանայք իրանց աչքերով տեսան իրանց ամուսինների, զաւակների,

եղբայրների արեան մէջ թաւալգլոր խաղալը. Մայրերը սրտաճաք եղան այդքան արեան տեսարանի առաջ, մանուկները կորած գառների պէս մորմոքած սրտերով ողբ ու ճիչ բարձրացրին տեսնելով իրանց հայրերի, եղբայրների գնդակահար լինելը. լռեցին նրանց օրհասական վերջին հառաչանքները: Մայրերը բռնեցին իրանց զաւակների ձեռներից և դրոհ տուին դէպի կոտորուող սիրելիները, դէպի գնդակներն ու մահը, որ նրանց հետ դրկախառնուած վերջ գնեն իրանց անպատմելի ցաւերով լի, իրանց անսահման թշուառ կեանքին, որ դրանով գոնէ վերջին րոպէներին ամոքեն իրանց արեան մէջ ոլորուող, կծկուող, կսկծացող սիրելիներին. բայց այդ շնորհն էլ նրանց մերժուեց. հարիւրաւոր հրացանների կոթերի հարուածները նրանց իրանց տեղը դարձրին: Ընդհանուր գոռում-գոչումի, սպանուող ու վիրաւոր թշուառների հառաչանքների մէջ կրկին ու կրկին լսուեց հարիւրաւոր հրացանների որոտը. և երբ ծուխը վերացաւ, տեսարանը անտանելի էր. ամբողջ խմբից միայն մի քանի հոգի էին կենդանի մնացել դիակների շեղջակոյտի մէջ՝ սառած, անզգայացած, կրած սարսափներից ապշած, յիմարացած հայեացքներով, և կարծես հարցնում էին ու զարմանում, թէ ընդհանուր

կոտորածի, համատարած մահերի մէջ իրանց կեանքն ինչո՞ւ համար է խնայուած։ Հրացանաձգութիւնը դադարեց, անօրէնները մօտեցան կենդանի մնացածներին, յետև յետև կապոտեցին իրար, և առաջինի կրծքին հրացանի փողն ուղղելով՝ փորձում էին իմանալ, թէ գնդակի ոյժը քանի՞ մարմնից մի անգամից թափ կանցնի։ Իրար կապոտուած զոհերը 1—2 հոգով ցորենի խրձերի պէս գլորուեցին և մարդկային սպանդանոցը կատարեալ դարձաւ։

Գիւղը շարունակում էր վառուել. հրեղէն բոցերը թանձր ծխի միջից օձապտոյտ բարձրանում լիզում էին երկնքի երեսը որպէս հազարգլխեան վիշապի արիւնազանգ հսկայական լեզուներ. օդը լցուած էր ծխի և խանձուած մարդկային մարմինների ճենճերահոտով։

Տղամարդկանց հետ իրանց սոսկալի գործը վերջացնելուց յետոյ, անօրէնները մօտեցան կանանց խմբին։ «Կոտորեցէ՛ք մեզ էլ, անաստուածներ», գոչում էին ամեն կողմից այս զոհերը։ Բայց դահիճները նրանց չը կոտորեցին, դրա փոխարէն նրանք սկսեցին ջոկել խմբից երիտասարդ ու գեղեցիկ հարս ու աղջիկներին և քաշ տալ զանազան կողմեր։ Թշուառները կախուած էին իրարից, պոկ

չէին գալիս· մայրը բռնել էր իր աղջկայ փէշից, գոռում է, ճչում, որ չը տանեն իր սիրասուն զաւակին· քաշում են աղջկան, նա էլ է քաշ գալիս գետնի երեսից, բարձրանում է գանձի սուրը և մօր ձեռքի կտրուած թաթն արիւնաթաթախ ընկնում է աղջկայ ոտների տակ։ Աղջկան տանում են...

Մի այլ կողմում, մի գեղեցիկ կին շրջապատուած է մի քանի ասիանցիներով· սրանցից իւրաքանչիւրն աշխատում է գեղեցկուհուն սեփականել, քաշքշում են զանազան կողմեր· կռւում, հայհոյում իրար· բայց համաձայնութիւն չի կայանում, այս պատճառով սրերով խողխողում են տարաբաղդ կնոջը, որ ոչ ոքի բաժին չը լինի։

Մի ուրիշ կնոջ նոյնպէս քաշում են դահիճները, նա անզգայացել, թալկացել է, գետնի երեսին փռուել, բայց բնազդով պինդ սեղմել է ծծի երեխան իր կրծքին· դահիճները խլում են երեխան կրծքից· մայրը բաց է անում աչքերը և այն րոպէին, երբ սոսկալի ճիչ է արձակում և թուլացած ձեռները դէպի զաւակը տարածում, վայրենին մանկան մի ոտից բռնած՝ քանի ույժ ունի շպրտում է նրան օդի մէջ· երեխան պտոյտներ գործելով աղիողորմ ձայն արձակելով ընկնում է փառուած դէզի մէջ։ Ուշաթափ մայրը տարւում է...

Ահա մի կոյս աղջիկ, որին մի ասիանցի քաշ է տալիս երկար ծամերից. Թշուառը ճչում է, հայհոյում իր դահճին, քաշ է ընկնում գետնի երեսին, նրան կապում են ձիու վրա, բայց վայր է ձգում իրան գլխիվայր՝ շուտով մահ գտնելու համար. կրկին վերցնում են, կապում, կրկին վայր է գլորւում. փորձում են դարձեալ քաշելով տանել, իզուր, նա կպչում է գետնին, նրա շորերը պատառոտուած ծուէն-ծուէն կախկխուել են գեղանի մարմնի վրա, որը տեղ-տեղ մերկացել է։ Նրան հարուածում են, սպանում են։ Իզուր, ոչինչ չի օգնում, նահապետական սուրբ բարքերով սնուած աղջիկը վճռել է անարատ պահել իր կուսական պատիւը։ Նա շարունակում է կռուել, նա վճռել է մեռնել, բայց չը գնալ, չը ծառայել իբր պագշոտութեան առարկայ թշնամիների աղտեղի կրքերին. Ահա վերջապէս այդ անօրինակ դիմադրութիւնից կատաղած դահիճները սրի մի հարուածով պատառում են կոյսի մատաղ կուրծքը. Նահատակը թրպրտում է իր արեան մէջ և հանգստանում յաւիտեան...

Ամէն կողմ պղծութիւն, ամէն կողմ մահ, ամէն կողմ արիւն։ Մի երկու ժամ չանցած, արիւնոտ հրապարակի վրա այլ ևս չահել գեղեցիկ կին ու աղջիկ չը մնաց, մեծ մասը

դիմադրելով՝ մահը գերադասեցին անարգ, անպատիւ կեանքից և իրանց դահիճների սրերով խողխողուեցին, իրանց արեամբ գնելով իրանց պատուի անարատութիւնը։ Մնացածները բռնի տարուեցին որպէս թշնամիների պագշոտութեան առարկաներ։ Դիակների շեղջակոյտի մէջ բազէներով շրջապատուած անպաշտպան թխսկան հաւի պէս իրանց ճվճվացող ձագուկները գրկած մնացին միայն պառաւները՝ ոմանք ուշագնաց, ոմանք թուլացած ծնկների վրա ընկած, ոմանք էլ չորացած ձեռները դէպի անողորմ երկինքն ուղղած։ Այլ ևս ոչ ոք չէր արտասւում. այսքան թշուառութիւնը ողբալու համար այնքան արտասուք ո՞րտեղից ճարէին. արտասուքի ծով էր հարկաւոր այնքան սրտերի մեծ հրդեհը մարելու համար։

— Տղէ՛ք, դարձաւ Նադօ աղան դահիճների խմբին, էս քաւթառ քածերի և շան լակոտների համար չարժէ գնդակներ փչացնել. մի կերպով դրանց ձէն ու ձունը կտրեցէք մեր ականջներից։

Քիւրդերն իրանց տիրոջ հրամանը լաւ հասկացան. առաջին անգամը չէր, որ նրանք այսպիսի հրաման էին ստանում։ Մի քանի րոպէում խրճիթների առաջի ցորենի հորերի բերանները բացուեցին և բոլոր սարսափներից

խելագարութեան հասած այս կանանց ու երեխաներին քաշ տուին դէպի հորերը: Եւ ահա գլորում են... մի հորի մէջ 10—15 մանուկներ, կանայք իրար վրա. զոհերը իրար կպած, կախւում են հորերի բերաններից թոյլ, անզօր թեւերով՝ աշխատելով չընկնել փոսերի մէջ, փրկուել. կախւում են դահիճների փէշերից, ձեռներից, բռնում են նոյն իսկ նրանց մերկ սրերի ծայրերից՝ կտրտելով իրանց մատները: Նրանց դէմքերը մահուան սարսափից այլանդակուել, ծամածռուել են, աչքերը լայն բացուած մնացել են անթարթ յառած դահիճների երեսին. Նրանք աղերսում, աղաչում են, բայց իզո՜ւր: Հրացանների կոթերը և սրերի հարուածները նրանց գլորում են իրար յետեւից և շուտով մի քանի հոգի շտապ-շտապ հողը թափում են նրանց վրա: Հողի տակից երբեմն-երբեմն այս տեղից, այն տեղից դուրս են ցցւում մի երկու գլուխ, մի քանի ոտք կամ կծկուած բռունցքներ, տակից լսւում են անտանելի ձայներ. և հողի շերտը վերեւից հաստանում է ու հաստանում, իսկ նրա տակում կենդանի մեռածները կրծոտում են իրար, ծամում, պատառոտում են իրանց սեփական մարմինը, ոլորւում են հողի և արեան շաղախի մէջ, սոսկալի խուլ հռնդիւններ են արձակում, որից մարդուս մազերն են դիզանում գլխին:

Հողի շերտը դրսից տեղ-տեղ բարձր ու-ցածր է լինում. աւելի վեր գտնուող թշուառ-ներն են, որոնք գերմարդկային ճիգ են բա-նեցնում՝ բարձրանալ, դուրս գալ, կեանք և արև տեսնել, բայց իզո՜ւր. դահիճները զգոյշ են, նրանք հսկում են, շտապով կոխկռտում են ոտներով, տրորում են, հաստացնում են հողի շերտերը, բայց և այնպէս ստորերկրեայ նվվոցները, մահամերձ նուաղած հառաչանք-ները շարունակւում են լսուել ու լսուել: Միւս հորերը նոյնպէս լցւում են: Բազմու-թեան ուշքը գրաւում է մանաւանդ մի պատ-կառելի տարիք ունեցող կին, որ դեռ հոգու արիութիւնը չի կորցրել և շարունակում է բարձր ձայնով երկնքի վրէժխնդրութիւնը կոչել թշնամիների գլխին: Յիսունի մօտ տա-րիները չեն կորացրել նրա բարձր իրանը. պառաւած աչքերի վրա դեռ թեթև կերպով խաղում են անցեալ գեղեցկութեան հետքերը այնպէս, ինչպէս վերջալոյսին ծածկուած ա-րևի ճառագայթները թոյլ կերպով շարունա-կում են դեռ լուսաւորել արևմուտքը: Սա Ռաշիդի մայրն է, Բանոն գիւղի տիրուհին: Երկու բէգերը հրամայում են սրան իրանց մօտ բերել: Մի քանի որբ, անտէր մնացած մանուկներով շրջապատուած, որոնք ճվճվա-լով կախկխուած են նրա փէշերից, ձեռներից,

Խաթուն տիրուհին յաղթական քայլուածքով մօտենում է բէգերին։ Արդէն հեռուից նկատելով նրանց, պառաւի շրթունքները խորին ատելութիւնից դողում են, և ծնօտներն ակամայից իրար վրա սղմւում։ Թէ այդ երկու գազաններից որի՞ն է նա աւելի ատում, այդ նրա համար էլ շատ որոշ չէ. նա նոյն իսկ ճանապարհին գնալով, մտածում է այդ մասին՝ Նաջօ աղան իրանց արնախում թշնամին էր, այդ գիտէր Խաթուն տիրուհին. իսկ այս միւսը, ա՜խ անօրէն, սա դաւաճանեց, սա մեր տունը քանդեց, մրմնջում են նրա շրթունքները։ Ահա նա վերջապէս կանգնած է իր երկու թշնամիների առաջ։

— Դո՞ւ ես Ռաշիդի մայրը, առաջ գալով՝ հարցրեց Ամին աղան, իսկ Խաթուն տիրուհին փոխանակ պատասխանի կատաղած՝ թքեց բէգի երեսին...

Բէգի երեսի գոյնը թռաւ, շրջապատողների մէջ իրարանցում ընկաւ. այս բանը չափազանց անսպասելի էր, և յիրաւի ո՞վ կարող էր երևակայել. Թէ մի թոյլ, անպաշտպան կին սիրտ կանէ այդ սարսափելի ժամին թքել բէգի երեսին։

— Թողեցէ՛ք այս քաւթառին, որոտացին երկու բէգերը միանգամից։ Երկու բոպէ չան-

ցած, Խաթուն տիրուհին արդէն գլորուած էր մի հորի մէջ։

Քիւրդ բէգերի հրամանով մի քանի ժամում Փլաների չէն ու բազմամարդ գիւղը հսկայական գամբարան դարձաւ իր սեփական բնակիչների համար։ Բայց անա՛ գիւղի հեռաւոր ծայրից՝ մի խումբ քիւրդերով շրջապատուած գալիս է մի ղառամեալ ծերունի։ Նրա գլուխը բաց է, սպիտակ մազերը խճճուած և անկանոն ձևով փռուած են նրա պատկառելի գլխի վրա՝ մի առանձին վսեմութիւն տալով այդ ծերունի դէմքին, որ զարդարուած է նոյնպէս խճճուած, նոյնպէս անկանոն կերպով ցրիւ եկած ալեզարդ մօրուքով։ Մէկը բռնած ունի նրա պարանոցից ձգած պարանը և քաշում է, իսկ միւսները յետևից անխնայ ծեծում են նրա ալեզարդ գլուխը։ Ամէն մի հարուածից յետոյ ծերունին արտասուքով լի աչքերը դէպի երկինք է ուղղում։ Աղօթում է արդեօք, թէ՞ օգնութիւն հայցում, այդ դժուար է իմանալ, միայն այդ ժամանակ նա ներկայացնում է մի մարմնացած վիշտ։ Սա վատաբախտ Տէր-Մարուքն է։ Իր հայրենիքին, իր մերձաւորներին հասած այս անօրինակ թշուառութիւնը նրա մէջքն աւելի է կորացրել, աչքերի նախկին կրակը մարել է. հասակն աւելի է փոքրացրել, ասես թէ, նա

սղմուել, ճնշուել է անհուն թշուառութեան ծանր բեռի տակ։ Նա այժմ մի զառամեալ, շա՜տ զառամեալ ծերունի է։ Բէգերի հրամանով Ռաշիդի հայրը մինչև այժմ կապուած պահւում էր և այժմ միայն առաջնորդուեց գիւղի ընդհանուր սպանդանոցը, տեսնելու իր զաւակների, իր հօտի անծայր թշուառութիւնը։ Այսպէս կամեցան այդ վայրենիները վրէժ լուծել Ռաշիդից։ Ընդհանուր դիւական քրքիջ բարձրացաւ, երբ տեսան նրան։ Տարաբախտ ծերունու առաջ բացուեց մի անտանելի, չը տեսնուած տեսարան։ Նրա ամբողջ հօտը ոչխարների պէս մորթոտուած, թափուած էր իր ոտների տակ, իսկ այս ու այն կողմից նրա ոտների տակ դեռ լսւում էին մահամերձ, աղէխարշ նվվոցներ․ երկիրը հեծում տնքում էր՝ անկարող լինելով պարտկել իր ծոցում այդքա՜ն թշուառութիւն, այդքա՜ն արտասուք և արիւն։

Զարաբախտ ծերունին մարած աչքերով նայեց մարդկային անլուր ոճրագործութեան այս անմեղ զոհերին, նայեց դահիճների հռհռացող խմբին և ցամաքած աչքերը երկինք ուղղելով՝ մրմնջաց։

— Երկի՛նք, տեսա՞ր այս, լսեցի՞ր սրանց արիւնոտ կրծքերից դուրս պոռթկուած վերջին հառաչանքներն ու նզովքի աղաղակները․

եթէ լսեցիր, հապա ո՞ւր են քո շանթ ու կայծակները, ողորմած երկինք, ինչո՞ւ չես թափում այս անօրէնների գլխին:

Ապա նա խաչանիշ նշանով կնքեց դիակների կոյտն ու մրմնջաց. «Հանգիստ ձեր ոսկորներին, տարաբախտ զաւակներ. մարդիկ ձեզ չը խղճացին, աշխարհը մոռացաւ ձեզ, թո՛ղ Աստուած գոնէ ձեր արդար արիւնը չը թողնի այս մարդակեր անօրէններին»: Բազմութիւնը շարունակում էր հոհոալ՝ ճիւաղային քրքիջով ծերունու անհուն թշուառութիւնը ծաղրելով:

— Լռեցրէ՛ք, հրամայեց Նազօ աղան:

Անմիջապէս վրա պրծան մի քանի քրդեր և ծերունուն քաշ տալով կանգնեցրին մի կողմ և տասնեակ հրացանների փողեր միանգամից ուղղուեցին դէպի նա:

— Կացէ՛ք, կրկին պոռաց աղան. հանեցէ՛ք վրայից հագուստը, թո՛ղ չարիւնոտուի, ափսոս է: Երկար սև վերարկուն ու կապան դուրս քաշեցին վզից, նա մնաց միմիայն սպիտակ շապկով: Նա ծունկ չոքեց և ձեռքերը երկինք բարձրացնելով՝ սկսեց աղօթել... Հրացանները որոտացին և ծերունին երեսի վրա ընկաւ իր արեան մէջ. աղօթքի մրմունջները սառած մնացին նրա գունատուած, դողդոջուն շըրթունքների վրա...

Նազօ աղայի բակի մի կողմում մութ գետ-
նափոր մի գոմ կայ։ Նոյն իսկ ցերեկը սրա
ներսում խաւարն այնքան թանձր է, որ
մտնողը բաւական ժամանակ ոչինչ չի տես-
նում, մինչև որ աչքերն ընտելանում են ա-
ռարակները որոշել այն աղօտ ու չնչին լոյսի
շնորհիւ, որի ճառագայթներն ասես վախվխե-
լով ցած են ընկնում առաստաղի վրա բա-
ցուած փոքրիկ հնրթիկից, հազիւ-հազ լուսաւո-
րում են մի շատ փոքր տարածութիւն, չը
համարձակուելով թափանցել հեռաւոր ան-
կիւնների թանձր մթութեան մէջ։ Խաւարի
մէջ անախորժ կերպով ճռճռացնում են ի-
րանց միակերպ երգը ճպուռները և շահատա-
կում են մկներն ու զանազան միջատներ։
Ահա այս գոմում մի սիւնի տակ, խոնաւ ու
աղտոտ յատակի վրա նստած է մի փառաւոր
տղամարդ․ Նրա ոտները հաստ շղթայով կա-
պոտուած են և ամրացրած յետևի սիւնի վրա։
Սա Ռաշիդն է, որ Նազօ աղայի հրամանով
պահւում է այստեղ մինչև Նրա վերադարձը։
Երիտասարդի ամբողջ դէմքն արտայայտում է
անսահման վիշտ։ Նա գլուխը քաշ է գցել
ոտների վրա և խորասուզուած է ծանր մտա-
քերի մէջ։ Այն րոպէից, որ նրան բռնել և
կապել են այս զարշահոտ գոմի մէջ, նա դեռ
ոչինչ չը գիտէ իր հայրենի գիւղի վիճակի

մասին, թէև այնքանն էլ՝ ինչ նա տեսաւ իր աչքերով, բոլորովին բաւական են հաստատելու, որ իր տարաբախտ վաթանը հիմնայատակ կործանուած է: Իսկ բնակիչնե՞րը... Մի՞թէ անօրէնները նրանց էլ կոտորեցին, մտածում է նա... Նրա աչքերի առաջ դեռ երևում են բոցերի հրեղէն լեզուները, նրա ականջում դեռ հնչում են այդ բոցերից դուրս թռչող հարիւրաւոր վատաբախտների վայնասունները, նա սրտի անսահման կսկիծով է յիշում Աստուածածնի բլրի տակ իր շուրջն ընկած քաջ ընկերներին. զայրոյթը եռում է նրա կրծքի մէջ... Օ՜, ինչե՞ր կանէր նա, եթէ ազատ լինէր, կամ ինչո՞ւ ինքն էլ չը մեռաւ միւսների հետ: Նա ակամայ յիշում է Սօֆի հետ ունեցած խօսակցութիւնը, բուի չարագուշակ «վույ-վույ»... Ապա նրա մտքերը խառնւում են, նա կորցնում է իր մտքերի թելը և մի առ ժամանակ ինքն էլ չի իմանում, թէ ինչի մասին է մտածում, ապա դարձեալ նրա մտքերը պարզւում են և յանկարծ յիշում է իր Զարէին: Խե՜ղճ Զարէ, մտածում է նա, նրա մարգարէութիւնը կատարուեց. բայց ո՞ւր է նա, մի՞թէ նա մոռացաւ իր Ռաշիդին, մի՞թէ նա դաւաճանեց իր սիրածին... Ո՛չ, այդ անկարելի է. ինքը ճանաչում է Զարէին: Ապա նա մտաբերում է իր

անօրինակ սիրոյ անցեալը. քաղցր յիշողութիւնները լցնում են նրա սիրտը մի անսահման հաճելի, մի դուրեկան զգացմունքով։ Բայց այդ տեւում է միայն մի րոպէ, կրկին բոցերի ահաւոր տեսքը ներկայանում է նրա աչքին, կրկին ականջներում լսւում են վայնասունները եւ ծանր, ողբալի իրականութիւնը անողորմ կերպով ներկայանում է նրան հազարգլխեան հրէշի պէս։ Ժամեր են անցնում եւ Ռաշիդը տանջւում, չարչարւում է մէկը միւսից աւելի սեւ, աւելի խաւար մտքերով։

Հոգեկան այս ծանր տանջանքների մէջ նրան մխիթարութիւն է պատճառում միմիայն Զարէի փոքրիկ քոյրը՝ վեց տարեկան Խաչէն։ Սա է Ռաշիդին ամէն անգամ կերակուր բերում։ Փոքրիկ վայրենու տեսք ունի Խաչէն. Նա գլխաբաց է, սեւ, թանձր մազերը խճճւած են եւ անկանոն կերպով կախկխւած դէպի վար, իսկ առաջից ծածկում են նրա ճակատը եւ համարեա աչքերը. այդ կլոր, սեւ աչքերը գեղեցիկ են, իսկ եւ իսկ Զարէի աչքերն են, բայց մազերի տակից հազիւ են երեւում եւ այս հանգամանքը նրա պլշացող հայեացքին մի առանձին արտայայտութիւն է տալիս, ասես թէ փոքրիկ կատու լինի, որ մարաղ է մտել, թէեւ նա յաճախակի աշխատում է

փոքրիկ ձեռներով յետ տանել մազերը։ Խաչէի դէմքը միշտ ուրախ է, միշտ ժպտուն, հաստ շրթունքներն ասես զարմանքից միշտ կիսաբաց են, միայն բարկանալիս՝ նա պինդ իրար վրա է սղմում իր ատամներն ու շըրթունքները։ Նրա ամբողջ զգեստը բաղկացած է մի հատիկ կտաւէ շապկից, որ ուսերից սկսած իջնում է մինչև սրունքները՝ վերևում բաց թողնելով նրա առողջ կուրծքը, որ երեւում է շապկի բացուածքից, իսկ ներքևում ցեխի ու կեղտի մէջ սևացած ոտները։ Ահա այս փոքրիկին է յանձնուած Ռաշիդին հաց ու ջուր բերել. ո՜վ գիտէ, գուցէ այս բանի մէջ խառն է Զարէի մատը։

Դեռ առաջին անգամ երբ փոքրիկ Խաչէն բերեց Ռաշիդի աղքատիկ ճաշը, նա անմիջապէս չը հեռացաւ, այլ մնաց կանգնած և զարմանքով ու խղճահարութեամբ սկսեց նայել նրա ոտների հաստ շղթային, որ ոչ այլ ինչ էր, եթէ ոչ ձիու ոտների բխօվ։

— Ախր դրանք մեր Բաշօինն են, ասաց աղջիկը բաւական լռելուց յետոյ։

— Ի՞նչը, հարցրեց Ռաշիդն ակամայ գլուխը բարձրացնելով։

— Ա՛յ, սրանք, ասաց Խաչէն փոքրիկ մատը դէպի Ռաշիդի ոտները մեկնելով. Բաշօին դաշտ ուղարկելիս ոտները սրանցով կապում

ենք, որ չերթայ կորչի. ո՜, շա՜տ լաւ է վազում մեր Բաշօն, եթէ տեսնե՜ս. դու տեսել ես մեր Բաշօին:

Ռաշիդը հասկացաւ, որ խօսքը ձիու մասին է. այս փոքրիկ աղջկայ մանկական շատախօսութիւնը նրան դուր եկաւ, ուստի և նա վճռեց շարունակել խօսակցութիւնը:

— Հապա ո՞ւր է ձեր Բաշօն, ղիզ:

— Վա՛, չե՞ս իմանում, հայրս հեծաւ գնաց ֆլաների (հայ) գեղը, գնաց եզ, կով, ոչխար, ձի բերելու, էնքան կը բերի, էնքան կը բերի, որ... Ինձ էլ խոստացաւ մի լաւ գառ բերել: Էնպէս լաւ գառ կը բերի, էնպէս լաւ գառ, որ... Ես մարդի չեմ տայ, Մստօին էլ չեմ տայ, նա միշտ մազերս քաշում է, երէկ էլ քաշեց, ես էլ մի պինդ չանգռեցի. տեսնո՞ւմ ես եղունգներս, էսպէս չանգռում եմ, կծում էլ եմ. թէ մէկ էլ մազերս քաշի, պինդ կը կծեմ. և նա սկսեց ցոյց տալ, թէ միւս անգամ ինչպէս պիտի չանգռի ու կծի իր փոքր եղբօրը՝ Մստօին:

— Խաչէ՛, ֆլաներն ախր քեզ գառ չեն տայ, որ հայրդ բերի:

— Ո՞նց չեն տայ, վրդովուած պատասխանեց աղջիկը, և նրա աչքերը պսպղացին մազերի տակից. հայրիկս թրով էնպէս կը զարկէ ֆլային, որ արիւն կը հանի, ֆլան կը մեռնի,

գառն էլ կը բերի․ հայրիկս էնէնց ղօչաղ է։ Գիտե՞ս, ես էլ կը զարկեմ փլաներին, Թուր կառնեմ կը զարկեմ, վերջացրեց նա փոքրիկ բռունցքը բարձրացնելով օդի մէջ։

— Փլաները քեզ ի՞նչ են արել որ, խեղճ չե՞ն․ բա նրանց մալը որ հայրդ բերի, նրանք ի՞նչ անեն, մնան առանց մալի՞։

— Ինչ են արե՞լ, բան չեն արել, փլա են, փիս են էլի՛, նրանց պէտք է զարկել․ նրանց մալը շատ է, որ հայրիկս բոլորը բերի, նրանք էլի կը ճարեն․ էս օր շատ բերին, էնքան բերին, էնքա՜ն բերին։ Գառ չեն բերել, տաւար էլ, գառներ էլ կը բերեն, որ բերեն, ես իմ գառը կը բռնեմ, սպիտակ գառ կը բռնեմ, սպիտակը խօրօտ է։

Ռաշիդը լռեց և գլուխը կախեց։ Աղջիկը չէր հեռանում։

— Բրա, քեզ ինչի՞ են կապել, ախր տերդ կը ցաւեն, մրանք Բաշօի տերը կը դնեն, քո տերը ինչի՞ են կապել․ ցաւո՞ւմ են, բրա․ կա՛ց, կա՛ց, ասաց աղջիկը պատրաստուելով հեռանալ, կա՛ց դնամ Զարէին ասեմ, գայ տերդ բանայ, նա գիտէ, նա Բաշօի տներն էլ շատ անգամ արձակում է, ասաց Խաչէն և դուրս թռաւ գոմից, թողնելով Ռաշիդին ամենայուսահատական դրութեան մէջ։

«Փլաները փիս են, ֆլաներին կը զարկեմ, ֆլաների մալը պէտք է խլել», աղջկայ այս խօսքերը դեռ շարունակում էին հնչել նրա ականջներում, նա մտածում էր այդ մասին. Որտեղից գիտէր Խաչէն այդ բոլորը, այդ փոքրիկ անմեղ երեխան իրանից չէր ասում, նրան սովորեցրել են մեծերը: Ա՜խ, անօրէններ, մռմռաց նա ատամները սեղմելով...

Հէնց այդ րոպէին դուռը կրկին կամացուկ ճռռաց և աղօտ լոյսի մէջ ծրագրուեց Խաչէի փոքրիկ գլուխը, իր պլշած աչքերով. Նա վազելով հասաւ Ռաշիդին, նրա դէմքն այլ ևս չէր ժպտում, շրթունքները սղմուած էին իրար վրա, և բռունցքը շարժում էր օդի մէջ:

— Դու ֆլա ես—ասաց նա սպառնալից ձայնով մի ոտքը առաջ դրած, ասես յարձակուելու մտադրութիւն ունէր—մենք քեզ չե՜նք արձակի. փի՜ս, փի՛ս ֆլա:

Ռաշիդը լուռ էր:

— Կա՛ց՝ հայրիկս գայ, քեզ կը զարկի, փի՛ս ֆլա. Զարէին հարցրի, թէ ինչու են կապել քեզ, նա բան չասաց, միայն վրաս նայեց. մայրիկիս հարցրի, ասաց, որ դու ֆլա ես. ես էլ քեզ հաց չեմ բերի, փի՛ս ֆլա, ասաց Խաչէն և բռունցքներ ցոյց տալով փախաւ գնաց:

Կէս գիշեր է։ Ամենքը քնել են, չորս կողմի համատարած խաւարի հետ տիրել է և համատարած լռութիւն։ Լուռ է մանաւանդ Ռաշիդի բանտը. գոմի հեռաւոր ծայրից, դռան մօտից միայն քնած մարդու խռմփոց է լսւում. դա Ռաշիդի գիշերային պահապանն է, որ իր պարտքը մոռացած՝ վաղուց ընկղմուել է խոր քնի մէջ։ Արթուն է միայն Ռաշիդը և մէկ էլ մի ուրիշ անձն՝ Զարէն որ օձի կծածի պէս պառկած տեղում թաւալւում է. իր սիրած տղամարդին փրկելու հոգսը նրան մի րոպէ անգամ դադար չի տալիս։ Դեռ երէկ գիշեր, երբ ձիաւորների մի ամբողջ խումբ կապոտած Ռաշիդին շրջապատած բերին, ամենքը զարթեցին նայելու այդ իգիթի վրա. ա՜խ, այն ի՞նչ էր, որ քաշեց Զարէն։ Նա քիչ մնաց, որ խելագարուի, աչքերն արտասուքով լցուեցին, երբ տեսաւ նրան այն վիճակում. քիչ մնաց, որ վաղէր փաթաթուէր նրա վզովը, բայց զսպեց իրան, ներս փախաւ և ծածկեց իր արտասուքները. անիծած Ահմօն՝ իրանց ծառան միայն կասկածով նայեց։ Յետոյ Զարէն իմացաւ, որ Ռաշիդը ձիու բխօվով շղթայուած՝ բանտարկուած է գոմում և այդ ժամանակից նա մտածում է մի հընարքով ազատել, փախցնել նրան, քանի դեռ իր հայրն ու եղբայրները չեն եկել։ Նա գիտէ,

նա համոզուած է, որ եկան թէ չէ, Ռաշիդին կը սպանեն։ Ասենք թէ նա այն ժամանակ էլ մէջ կընկնի և իր դիակով կը ծածկի նրան, եթէ իր աղերսանքները չը լսեն և նրան սպանել կամենան։ Բայց ինչո՞ւ բանն այդտեղ հասցնել, լաւ է այժմ փրկել։ Ի՞նչպէս անել, այդ չը գիտէ նա, ելք մտածել չի կարողանում. բայց այն միտքը, թէ իրանից մի քանի քայլ միայն հեռու, այնտեղ՝ այն դռան, այն պատի յետևում իր Ռաշիդն է անարգ վիճակում նստած, և նրան անպատճառ մահ է սպառնում, Զարէի սիրտը լցնում է անսահման ցաւով և նա վճռում է՝ ինչպէս և լինի, թէկուզ իր կեանքի գնով փրկել իր սիրած, իր պաշտած իգիթին։ «Ի՞նչպէս», կրկին հարցնում է նա իր մտքում. ներս մտնել գոմը չի կարելի, պահապան կայ այնտեղ. ասենք նա կարող է քնած լինել, բայց դռան ձայնից կը զարթնի, յետո՞յ...», այնուհետև թէ ի՞նչ կը պատահի, նա սարսափում է այդ բանից և աշխատում է չը մտածել այդ մասին։ Երկա՜ր, շատ երկար այսպիսի մտքերով նա տանջւում է, վերջապէս նրա գլխում ծագում է մի բախտաւոր միտք։ Խաչէն ցերեկը նրան ասաց՝ թէ Ռաշիդին կապել են Բաշօի սիւնից, իսկ Զարէն գիտէ, որ հէնց այդ սիւնի վերևում՝ մի հերդիկ կայ։ Գոմի կտուրը ցածր է, չէ՞ր

կարելի արդեօք այդ հերդիկից մի բան անել։ Այս միտքը նրան թւաց միակ իրագործելին, մնում էր բխօվի բանալին ճարել, նա այդ բանալու սովորական տեղը գիտէ։

Աղջիկը կամացուկ վերկացաւ տեղից, նըստեց, նայեց շուրջը, ականջ դրեց, ամենքը քնած են, լռութիւն է. նա կանգնեց, առաջ շարժուեց, խաւարի մէջ գտաւ բանալին, և դէպի գոմն ուղղեց իր զգոյշ քայլերը. նրա բոլոր շարժումներն արտայայտում էին մի յանդուգն վճռականութիւն։ Ահա նա կամացուկ մօտեցաւ գոմի դռանը, կանգ առաւ և սկսեց ականջ դնել. ո՛չ մի ձայն չի լսւում ներսից, բացի մի անախորժ խռխռոցից, որ խռպոտ կրծքից արձակում է քնած պահապանը. ուրախութիւնը փայլեց նրա դէմքի վրա. նա շտապ-շտապ, բայց զգուշութեամբ բարձրացաւ գոմի կտուրը։ Կտրից լսուող ոտնաձայները սթափեցրին Ռաշիդին, և նա լսողութիւնը լարած՝ ուշադրութեամբ հետեւում է այդ ձայներին։ Ահա այդ ոտնաձայները կամաց-կամաց մօտենում են, պարզ է, որ մէկը կտրի վրա քայլում է դէպի այնտեղը, ուր Ռաշիդն է։ Բայց ո՞վ է սա, Տէր Աստուած, և ի՞նչ է կամենում, ի՞նչ է փնտրում այսպէս ուշ գիշերով։ Անցան դարձեալ մի քանի րոպէներ, անտանելի երկար. խորհրդաւոր

անձնաւորութիւնը շարունակում էր շարժուել կարի վրա, ահա վերջապէս նա կանգ առաւ հէնց Ռաշիդի գլխավերևը, և նա ոչ առանց երկիւղի զգաց, որ մէկը հերդիկը լայնացնելով աշխատում է ցած կախուել, Ռաշիդը նոյն իսկ լսում է նրա ընդհատ-ընդհատ շնչառութիւնը, նա քիչ էր մնում ձայն տայ:

— Ռաշիդ ջա՛ն, ես եմ, կամացուկ փսփսաց Զարէն:

Զարմանքն ու անսահման բերկրանքը պատեցին Ռաշիդի սիրտը. նա հաւատում էր, որ Զարէն կաշխատի իր փրկութեան համար մի բան անել, բայց գիշերուայ այս պահուն, արհամարհել բոլոր վտանգները և յանձն առնել մի այսպիսի յանդուգն ձեռնարկութիւն, այս բանը ենթադրել նա չէր կարող:

— Ես եմ, Ռաշիդ—կրկնեց Զարէն, իմանալով՝ որ զարմանքն ու ապշութիւնը բռնել են Ռաշիդին,—ե՛ս եմ, առ բխօվի բանալին, ոտներդ արձակի՛ր և կրկին յետ տուր ինձ:

Ռաշիդին թւում էր թէ այս բոլորը երազ է, և ուրիշ ոչինչ: Վերջապէս նա ուշքի եկաւ, ձեռքը մեկնեց, բռնեց Զարէի փափուկ ձեռքը և աշխատում էր խաւարի մէջ շրթունքները մօտեցնել նրան, բայց այդ նրան չաջողուեց,

առաւ բանալին, շտապով բաց արեց ոտների փականքը և բանալին յետ տուեց Զարէին:

Մնացածը դու գիտես, փսփսաց Զարէն և հեռացաւ:

Անգիտակցաբար շարժեց Ռաշիդն իր հզօր ոտները, նրան թւում էր, թէ տասնեակ տարիներ է ինչ կապուած է եղել, երկու քայլ արեց, կասես իմանալու համար, թէ արձակուած է իրօք, թէ՞ այս բոլորը մի երազ է միայն. ազատութեան գիտակցութիւնը լցրեց նրա սիրտը մի դուրեկան, մի քաղցր զգացմունքով, որպիսին զգում է մարդ, երբ ծանր հիւանդութիւնից յետոյ առողջանալ է սկսում: Այժմ դուրս ելնելն ու փախչելը դժուար չէր նրա համար. փոյթ չէր նոյն իսկ, եթէ պահապանը զարթնէր, նա նրա հետ իր հաշիւը հեշտ կը վերջացնէր. նրան զբաղեցնողն այն միտքն է, թէ ո՞ւր գնայ և ի՞նչպէս գնայ առանց որ և է զէնքի:

Եւ նա վճռեց պահապանին կողոպտել, ինչպէս և լինի: Ռաշիդը կամացուկ մօտեցաւ պահապանին. վերջինս զարթնեց հէնց այն րոպէին, երբ գլխավերևում կանգնած էր Ռաշիդը: Պահապանը վեր թռաւ տեղից, ձեռքը դէպի իր սուրը մեկնեց և փորձեց օգնութիւն աղաղակել, բայց Ռաշիդի երկաթէ մատները նրա կոկորդը սեղմեցին: Վտանգ զգալով՝

և անկարող լինելով զէնքի դիմել, պահապանն էլ ինքնապաշտպանութեան համար ձեռքը դէպի հակառակորդի կոկորդը մեկնեց։ Սկսուեց մի սոսկալի մենամարտութիւն. պահապանն աշխատում էր օգնութիւն աղաղակել, բայց հզօր ձեռքով սեղմուած կոկորդը միայն անախորժ և հազիւ լսելի խռխռոց էր հանում։ Նրանք կպել, փաթաթուել էին իրար՝ ինչպէս երկու կատաղած օձեր, գլուխ գլխի, կուրծք կրծքի, թև թևի տուած, ոլորուած, կծկուած, փաթաթուած իրար և ամեն մէկը փոխադարձաբար աշխատում էր խեղդել միւսին։ Անչափ կատաղութիւնից և մահու երկիւղից նրանց ուժերը տասնապատկուել և գերմարդկային էին դարձել. ամեն մէկը հզօր ցնցումներով կամ սաստիկ ուժով սղմելով աշխատում էր փշրել հակառակորդի ոսկորները, կամ վայր գլորել. բայց ամեն մի այդպիսի փորձ վերջանում էր նրանով, որ երկսով էլ վայր էին գլորւում, կամ ընկնում ծնկների վրա, քաշքշում էին իրար գետնի երեսով, կատաղած ցուլերի պէս մռնչում էին և նրանց ոսկորները ճարճատում էին։ Նրանց շնչառութիւնը փոխուել և դարձել էր հզօր տնքոց, որ դուրս էր պոռթկում ուռած կրծքերից և խառնուելով ոտների դոփիւնի հետ, աղմկում էր գոմի թանձր խաւարի

խաղաղութիւնը: Դա մի սոսկալի տեսարան էր, երկու մարդիկ խաւար, ամայի գոմում ամբողջ աշխարհից ծածուկ խեղդոտում, կըր-ծոտում էին իրար, ծնկները տրորում էին յատակի վրա՝ խուլ դընդիւն առաջացնելով. տասն անգամ նրանք ընկան գետին և վեր-կացան. զէնքը չէր գործ տեսնողը, նրանք գործում էին ձեռներով, եղունգներով, ատամ-ներով, որպէս երկու դևեր, որոնք վճռել են ոչնչացնել իրար: Երկսի մարմինն էլ թաց էր, լպրծուն հեղուկը ողողել էր նրանց մորթին ու շորերը. արի՞ւն էր այդ, թէ՞ քրտինք, այդ նրանք չը գիտէին, և նրանց չէր էլ հետաքըր-քրում, բայց շարունակում էին հևալով, խռխռալով հուպ տալ իրար կոկորդ: Երկար տևեց այդ կռիւը. Ռաշիդը զօրեղ էր, բայց պահապանն էլ թոյլ չէր, նա պաշտպանւում էր օրհասական արջի պէս: Վերջապէս Ռա-շիդը մէկ էլ բոլոր ուժով հուպ տուեց հակա-ռակորդի կոկորդը, նրա մատների տակ ճռճռա-ցին պարանոցի ոսկորները և պահապանը ուժա-սպառուելով խուլ թրմփոցով գետին ընկաւ հա-կառակորդի մազերից մի խիտ փունջ սեղմած ձեռքով փետելով: Պահապանը խեղդուած էր: Ռաշիդը հանեց նրա շորերը, հագաւ, վերցրեց նրա հրացանը, փամփուշտները ու միւս զէնքերը և դուրս թռչելով դռնից, խաւարի մէջ անհետացաւ:

Երկար գնում էր նա, ինքն էլ չիմանալով՝ թէ դէպի ո՞ւր… Բարձրանում էր սարերը իջնում էր ձորերը, և առանց յոգնածութիւն զգալու, առանց մի րոպէ հանգիստ առնելու, գնում էր ու գնում։ Արշալոյսը մօտ էր շառագունելու, երբ նա վերջապէս կարողացաւ որոշել, որ ինքը անգիտակցաբար դէպի իր հայրենի գիւղի սահմաններն է դիմել։ Ինչո՞ւ էր գնում դէպի այդ գիւղը, ի՞նչն էր նրան քշում տանում դէպի իր աւերակ ծննդավայրը, այդ ինքն էլ չը գիտէր. միայն մի ներքին անյաղթելի հակումն նրան մղում էր և նա շարունակում էր գնալ անդադար։ Ահա վերջապէս նա Աստուածածնի բլրի ստորոտումն է, խորին ցաւով նա յիշեց իր ընկերներին. նրանց դիակները դեռ այլանդակուած, ուռած, ցաք ու ցրիւ փռուած էին այդ բլրի ստորոտում։ Լոյսը բացուեց. այլ ևս առաջ գնալ չէր կարելի, նա գիւղին մօտ է և անօրէնները գիւղում են, որ դեռ ծածկուած է թանձր ծխով. գիւղը չէ երևում այդ ծխի միջից, որ դեռ շարունակում է պալան-պալան բարձրանալ դէպի վեր։ Աւերակները դեռ շարունակում են ծխալ, նրանց միջից կրկին լսում են բազմազան ձայներ. բայց դրանք ո՛չ բնակիչների ուրախաձայն աղաղակներն են և ո՛չ էլ կոտորուողների վայնասուն. ասիանցիներն

են, որոնք պատրաստւում են իրանց աւարը սայլերով ճանապարհ դնել։ Նա դիմեց բլուրն ի վեր՝ հաստատ վճռելով սպասել այնտեղ, մինչև թշնամիները հեռանան գիւղից։ Նա ինքն էլ համոզուած է, որ գիւղում այժմ իր ազգակիցներից մի կենդանի շունչ չի մնացել, և որ ինքը միայն դիակներ կը տեսնի, բայց և այնպէս անրնկճելի ցանկութիւն ունի ժամ առաջ շրջել իր սրտին այնքան մօտիկ վայրերում, տեսնել իր սիրելիների գոնէ գերեզմանները։ Յարմար դիրք որոշելով՝ նա նստեց և սպասեց։ Հայրենի գիւղի տեսքը ճմլեց նրա սիրտը և վառեց նրանում անյագ վրէժխնդրութեան ծարաւ. բայց ի՞նչպէս վրէժխնդիր լինել, մենակ ինքն ի՞նչ կարող է անել թըշնամիների ահաւոր բազմութեանը։ Կեանքն այլ ևս նրա համար ոչ մի գին չունի, միայն նա կամենում է թանգ, շատ թանգ ծախել այդ մի հատիկ կեանքը։ Ա՜խ, ի՞նչ սիրով կը տայ նա իր կեանքը, եթէ հնար ունենայ նախապէս հէնց իր ձեռքով գնդակահար անել Նաղօին. այդ արիւնարբու գազանին։ Երկար մտածում էր նա, թէ ի՞նչպէս վրէժխնդիր լինի. յանկարծ նրա տխուր դէմքը ծամածռուեց բաւականութիւն արտայայտող մի տարօրինակ ժպտով. պարզ էր, որ նրա մըտքում ծագեց մի վճռական և խելացի միտք։

— Սպասի՛ր, անօրէ՛ն, մռմռաց նա և աւելի պինդ սեղմեց իր ձեռքի մէջ հրացանը։

Արևը բարձրացաւ. լռուեցին անասունների ձայներ, սայլերի ճռինչ, ասես ամբողջ գիւղը գաղթում էր. Թշնամիները բնակիչներին կոտորելուց յետոյ, նրանց սայլերով կրում էին նրանց արդար քրտնքի պտուղները։ Ռաշիդը հասկացաւ այդ։

Ահա՛ անցնում են երեք ասխանցիներ և առաջ արած քշում են մի քանի հարիւր ոչխար ու զառներ, որը Թնդում է նրանց խառնիճաղանճ բառաչից. Նա ակամայ յիշեց փոքրիկ Խաչէին. Նրա զառն էլ անշուշտ այստեղ է. Ի՜նքան կուրախանայ, երբ տեսնի՝ այ, այն փոքրիկ սպիտակ զառը։ Ռաշիդին Թւում է, որ Խաչէն անպատճառ այն սպիտակ զառը կը բռնի, այո՛, շատ կուրախանայ Խաչէն։ Բայց քանի՜-քանի անմեղ մանուկներ զոհուեցին, մինչև որ այդ զառը Խաչէին հասաւ, և նա ակամայ ատելութիւն զգաց և՛ դէպի այն սպիտակ փոքրիկ զառը, և դէպի Խաչէն։ Երեք ասխանցիներն ուրախ են աջող որսից վերադարձող շան նման. Նրանց ուրախութիւնը կատաղեցնում է Ռաշիդին, քիչ է մնում հրացանը երեսն առնի և մի երկուսին գնդակահար անի. Նա նոյն իսկ անգիտակցաբար ձեռքը դէպի հրացանը տարաւ, բայց

կրկին յետ քաշեց, սպասելու, համբերելու հաստատ վճռով. Նրանք անցան։

Ահա մի այլ խումբ ախանցիներ՝ հաստավիզ եզներ լծած քշում են տասնեակ սայլեր. սրանք էլ կրում են զգեստներ, կապերտներ, անկողիններ և տան այլ կահ-կարասիք։ Այս սայլերից մէկը մանաւանդ առանձնապէս գրաւեց Ռաշիդի ուշադրութիւնը, նրա վրա բարձած էին եկեղեցական սրբազան անօթներ, սկիհ, բուրվառ, մոմակալներ, արծաթեայ խաչեր, գրքեր, եկեղեցական զգեստներ, շուրջառ, վակաս, ժամաշապիկներ և այլն և այլն... Ռաշիդի շրթունքները դողդողացին և ատամները իրար վրա սղմուեցին, երբ տեսաւ այդ բոլորը։ Նա սրտի խորքին ցաւով յիշեց իր ծերունի հօրը. արդեօք ո՞ւր է նա, սպանուած՝ թէ՞ կենդանի է. ո՞ւր է իր մայրը, մի՞թէ այդ ծերունիներին էլ չը խնայեցին այս մարդակերները։ Նա յիշեց, թէ ինչպէս իր հայրը այդ զգեստներով զգեստաւորուած՝ սրբազան խորհուրդ էր կատարում, յիշեց թէ ինչպէս նա դողդոջուն շրթունքներով հաւատացեալ հօտին ի տես բարձրացնում էր այդ սրբազան սկիհը։ Յիշեց, թէ ինչպէս ինքը խնկարկում էր ահա՜ այն բուրվառով, հագած այն ժամաշապիկը և քանի՜-քանի անգամ երկիւղած սրտով համբուրել է ահա՛ այն խաչերը մանկութիւնից սկսած, երբ

դեռ նոր էր իր հոր մօտ սովորում «Խաչ, օգնեա՛ ինձ»։ Ուրիշ շա՜տ, շա՜տ բան յիշեց նա. մանկական յիշողութիւնները մէկը միւսից աւելի գրաւիչ, աւելի քաղցր, եկան պաշարեցին նրա յոգնած միտքը։ «Խաչ, օգնեա ինձ», մրմնջում էին նրա շրթունքները, և նա այդ բառերը կրկնում էր խորին հաւատով։ Դեռ երբէք նա խաչի օգնութեանը այդքան կարօտ չէր եղել, և երբէք աւելի հաւատով, աւելի ջերմեռանդութեամբ չէր դիմել նրան, քան թէ այս անգամ։ Տխուր իրականութիւնը կրկին սաստկացաւ նրա աչքի առաջ, նուիրական անօթներին հասցրած անարգանքը, անօրէնների այս անամօթ հոհռացող խումբը նրան վիրաւորեցին մինչև հոգու խորքը. «Տէ՛ր, ինչո՞ւ թողիր Քո եկեղեցին, որ այս անօրէնների անարգութեանը մատնուի», մըրմնջաց նա։ Ապա նա կրկին հրացանը ձեռք առաւ, ուղղեց դէպի թշնամիները, նրա համբերութիւնը սպառւում էր. բայց բանականութիւնը այս անգամ էլ յաղթող հանդիսացաւ և նա մի անգամ էլ ձեռքը յետ քաշեց՝ վճռելով ինչ և լինի համբերել և սպասել ն ր ա ն...

Անցան դարձեալ այլ բազմաթիւ սայլեր. բարձուած իր հայրենակիցների հարստութեամբ, նրանց՝ տարիների դառն աշխատանքի

արդար վաստակներով․ տարուեցին և բազմաթիւ ջահել հարս ու աղջիկներ, որոնց տեսել էր, որոնց ճանաչում էր Ռաշիդը, և նա տարաւ, տարաւ այդ բոլորն առանց մի կաթիլ արտասունքի․ միայն դառն ժպիտը երբեմն խաղացնում, ժամածռում էր նրա դողդողուն, պինդ իրար վրա սղմած շրթունքները։ Գերմարդկային համբերութիւն էր հարկաւոր այս բոլորը տանելու համար, բայց Ռաշիդը տարաւ, համբերեց, այս անհագին փորձութիւնից չը գայթակղուեց և իրան չը մատնեց հրացանաձգութեամբ։ Նա խմում էր դառնութեան բաժակը մինչև տակը, նա շարունակում էր կուտակել կատաղի վրէժխնդրութեան թոյնը յատկապէս մի անձի գլխին թափելու, ա՛յն անձի, որ այս բոլոր չարիքի սկզբնապատճառն է, որ իր հայրենիքն աւերի և սրածութեան մատնողն է։ Նա համոզուած էր, որ այդ անձն այստեղից է անցնելու։ Եւ նա սպասում էր...

Շատ սայլեր եկան անց կացան, շատ բան տարուեց, բազմաթիւ խմբեր ուրախաձայն աղաղակներով ու երգով եկան անց կացան։ Արդէն երեկոյ էր․ արևը մայր մտաւ․ վերջին սայլերն էլ անցան, գիւղի թալանը վերջացաւ։ Թեթև մառախուղն եկաւ պարուրեց շրջակայքը, բայց նա դեռ չը կար․ Ռաշիդին տիրեց

խորին անհանգստութիւն... բայց ահա հեռ-
ւում երևաց ձիաւորների մի խումբ․ Ռաշիդը
լարեց իր բոլոր ուշադրութիւնը։ Շատ հե-
ռուից երևում էր մէկը սպիտակ կատաղի
ձիու վրա նստած․ Ռաշիդը ճանաչեց իր ծեր-
մակին և նրա աչքերը լցուեցին արտասուքով։
Վաղո՞ւց, շա՜տ վաղուց նա այսպէս չէր ար-
տասուել․ վշտի անսահմանութիւնից ցամա-
քել, չորացել էին նրա աղբիւրները․ նա չը
գիտէր՝ որ մէկ թշուառութինը ողբար,
այդքան արտասուք նա ծրտեղեց վերցներ,
բայց իր նժոյգի, իր ծերմակի, իր սիրելի ըն-
կերի համար նա այնքան արտասուք ունէր․
և նա կուշտ արտասուեց․ «Խաչ, օգնեա՛ ինձ»,
կրկին մրմնջաց նա և դառնալով դէպի աւե-
րակ մենաստանը՝ խաչակնքեց երեսը խորին
երկիւղածութեամբ։ Ձիաւորների խումբը մօ-
տեցաւ․ Ռաշիդի սիրտն սկսեց արագ-արագ
բաբախել, նա հրացանը պատրաստեց։ Խմբի
առաջից հպարտ-հպարտ գնում էր Նադօ
աղան ծերմակի վրա նստած, յաղթական
ժպիտն երեսին։ Ահա՛ նրանք գտնւում են
բլրի ստորոտում․ Ռաշիդը հրացանն երեսն
առաւ ու աչքեց Նադօ աղայի կրծքին։ Հրա-
ցանը որոտաց և բէգը գլխավայր ընկաւ
գետին, բայց մի ոտքը մնաց ասպանդակում։
Ձին հրացանի անակնկալ որոտից կատաղած

և նստողի ընկնելուց սաստիկ խրտնած՝ փրնչացնելով թռաւ դէպի դաշտը՝ իր յետևից գետնի երեսից քաշ տալով Նադօի արիւնաթաթախ դիակը։ Թշնամիների բանակում տիրեց սարսափելի աղմուկ և իրարանցում։ Ոմանք անակնկալ դէպքից զարհուրած դէս ու դէն փախան՝ բլրի վրա թշնամիների ահաւոր բազմութիւն ենթադրելով. ուրիշները «վայ լը մրն բավօ» գոչելով քշեցին իրանց ձիերը կատաղած ձերմակի յետևից, որ շարունակում էր դաշտի մէջ շրջաններ կազմել՝ քաշ տալով գետնից այլանդակուած դիակը, ասես ուխտել էր իր տիրոջ հետ միասին վրէժխնդիր լինել ընդհանուր թշնամուց...

Այս ընդհանուր շփոթի՝ աղմուկի, իրարանցման րոպէին, երբ դեռ սլանում էր ձերմակը, Ռաշիդը բլրի հակառակ կողմից շատապով ցած էր իջնում։ Որքա՜ն եղա՜ւ նրա զարմանքն ու ուրախութիւնը, երբ մի ժայռի տակ թաքնուած գտաւ իր սիրելի Աւօին։ Դուրս եկաւ, որ այս երիտասարդը կուի ժամանակ ծանր հարուած է ընդունել գլխին, վայր է ընկել, երբ ամենը հեռացել են, ուշքի է եկել և համարեա սողալով բարձրացել է այս բլուրը՝ ապահովութիւն փրնտրելով։

Նրանք առաջ գնացին։

Գիշեր է։ Լուսինը բարձրացաւ Մարալայ սարերի Թիկունքից և իր պաղ ճառագայթներով լուսաւորեց լեռ, ձոր ու դաշտ. կործանուած գիւղի վրա էլ մի քանի ճառագայթներ գաղտագողի, ասես վախվախելով ընկան, բայց կրկին յետ փախան. ամպի մի փոքրիկ սև պատառ փակեց լուսնի դէմքը, կարծես Թէ մայր բնուԹիւնն ամաչում էր ցոյց տալ, լոյս աշխարհ հանել իր զաւակների պժգալի գործերը։ Բայց լուսինը երկար չը մնաց ամպի տակ ծածկուած, նա դուրս եկաւ բարձրացաւ երկնակամարի վրա և աւերակ գիւղը լուսաւորուեց։ Տեղ-տեղ աւերակները դեռ շարունակում էին ծխալ, խեղդող խանձահոտը տակաւին բռնել էր շրջակայքը. այստեղ ու այնտեղ երևում էին հսկայ մոխրակոյտեր, դրանք ծխաշունչ գերեզմաններ էին, որոնց տակ, ո՜վ գիտէ, քանի՜ տասնեակ մեծ ու փոքր կենդանի էակներ աճիւնացան՝ իրանց վերջին հառաչանքը ճենճերոտ շըրԹունքներից ծխերի ու բոցի հետ դէպի երկինք ուղղելով։ Ռաշիդը անձայն, անշշուկ գլուխը կրծքին կախած՝ Թափառում է այս աւերակների, այս գերեզմանների մէջ, որպէս մի վշտի ուրուական, կամ որպէս մահուան ոգի, Թափառում է, ինքն էլ չիմանալով՝ Թէ ինչ է փնտրում այս հսկայական դամբարա-

նում։ Նրան քայլ առ քայլ հետևում է մի ուրիշը, նոյնպէս վշտահար, նոյնպէս լուռ. սա էլ Ասօն է, Ռաշիդի մի հատիկ կենդանի մնացած ընկերը։ Աւերակ գիւղը բոլորովին անկենդան չէ. այս ու այն քանդուած տան միջից, այս ու այն փողոցից երբեմն լսւում են փախչող, հեռացող ոտնաձայներ, դրանք քաղցած գազաններն են, որոնք դիակների, արեան հոտ առած՝ խմբերով դիմել են այստեղ, կրծոտում, քաշքշում են մարդկային վայրագութեան զոհերին։ Կենդանի մարդ տեսնելով՝ նրանք մռմռալով թողնում են իրանց արիւնոտ որսը և զզուելի լեզուով շրթունքները լիզելով մի քանի քայլ հեռու փախչում կամ կանգնում են, կամ պառկում խաւարի մէջ, որտեղից նրանց կատաղի աչքերը փայլում են, որպէս զոյգ ճրագներ՝ սոսկում ազդելով նոյն իսկ ամենասրտապինդ մարդուն։ Խաւարի մէջ նրանք սպասում են մարաղ մտած, մինչև որ մարդն անցնում է, ապա կրկին ոստիւններով յարձակւում են դիակների վրա՝ իրանց պժգալի խնճոյքը շարունակելու համար և քանի՞սն են... կան այնպիսիները, որոնք փախուստի ժամանակ խլում, քաշ են տալիս իրանց հետ մի ոտք, մի ձեռք, շատ անգամ նոյն իսկ մի ամբողջ դիակ
Ռաշիդն ու Ասօն կամաց-կամաց առաջացան

և հասան վերջապէս ընդհանուր կոտորածի տեղը: Դեռ գիւղը չը տեսած, նրա իսկական վիճակը երևակայելու անկարող լինելով՝ նրանք երկսով էլ բուռն ցանկութիւն ունէին ժամ առաջ հասնել արիւնոտ տեղերին, իրանց աչքով տեսնել զարհուրելի իրականութիւնը. նրանք համոզուած էլ էին, որ միմիայն սոսկում պատճառող երևոյթների հանդիսատես պիտի լինեն, բայց այն, ինչ որ այժմ ներկայացաւ նրանց ապշած աչքերին, միանգամայն վեր էր նրանց երևակայութիւնից, և ինչե՞ր չէին տայ նրանք այդ րոպէին, որ լուսինը մէկ էլ խաւարէր, յետ քաշէր իր ճառագայթները, թագնուէր մռայլ ամպի տակ, անթափանցիկ խաւարով պատէր այս արիւնոտ վայրերը իրանց արիւնոտ տեսարաններով: Դիակներ ու դիակներ, մեծ ու փոքր, մարդ թէ կին, ծեր թէ երիտասարդ՝ ուռած, այլանդակուած, ոմանց աչքերը դուրս ճոթռուած, բերաններն արիւնազանգ, ուրիշների փորոտիքը թափտուած, կամ կրծքերը պատառուած, ոմանք առանց գլխի, կամ առանց ձեռքի, ամենքն էլ մերկ, հրէշաւոր ձևերով մէկը միւսի վրա, տների տակ, մէջքին, կողքի վրա ընկած: Մարդ-գազանների թերի թողածը լրացրել էին իսկական գազանները. այս ու այն կողմում ընկած էին մարդ-

կայրին մսերի կտորտանք, խանձուած մարմին-
ների կրծոտուած ոսկորներ... Երկու երիտա-
սարդները կանգ առան սառած, քարացած.
արտասուք չը կար նրանց աչքերում, որ գոնէ
մի քանի կաթիլներով զովացնէին իրանց
այրուած սիրտը և ի՞նչպէս կարելի էր մի
քանի կաթիլներով ողբալ այդքան մեծ
թշուառութիւնը, մարել սրտի այնքան մեծ
հրդեհը: Ռաշիդը երկար մնաց կանգնած աչ-
քերը մի կէտի վրա յառած. մի րոպէ նա
մոռացաւ նոյն իսկ, թէ ինքը ո՞ւր է կանգ-
նած. նրան թուաց, թէ երազ է տեսնում և
այն՝ սարսափելի երազ: Տեսարանները նրան
ճնշում են, նա աշխատում է շուտով զգաս-
տանալ, ազատուել այդ ճնշող տեսարաններից,
սակայն իզո՜ւր, այլանդակուած դիակները
շարունակում են նրա աչքի առաջ մնալ և
զարհուրելի իրականութիւնն իր բոլոր սար-
սափներով մնում է անխուսափելի...

Ռաշիդը յանկարծ շփեց աչքերը և քնից
արթնացածի պէս սկսեց պրպտել դիակները.
Նա երկար փնտրում էր, իսկ Սուսօն լուռ,
անձայն հետևում էր նրան: Վերջապէս Ռա-
շիդը կանգ առաւ մի դիակի առաջ և ծունկ
չոքեց, նա գտաւ իր հօր մարմինը: Ծերունու
ալեզարդ գլխի մազերն ու միրուքը ծա-
պաղուած էին արեան մէջ և բոսորային գոյն

էին ստացել, կրծքի լայն վերքից դուրս բըղխած արիւնը ներկել էր սպիտակ շապիկը և մի փոքրիկ խորութեան մէջ գետնի վրա հաւաքուել, լճացել, սառել էր: Սակայն նրա դէմքը խաղաղ էր ինչպէս քնած մարդու. միայն աչքերն էին կիսաբաց, որոնք ուղղուած էին դէպի երկինք, դէպի յաւիտենականի աթոռը. կարծես թէ այդ ծերունին դեռ բողոքում էր այս անլուր ոճրագործութեան դէմ: Հօր դիակի առաջ ծունկ չոքած որդին մի քանի կաթիլ արտասուք թափեց նահատակի արիւնոտ դէմքի վրա. սա իր սեփական վիշտն էր և այսքանի համար հազիւ նա արտասուք ունէր: Երկար արտասւում էր նա. գերեզմանական լռութիւն էր տիրում նրա շուրջը և լուսինը շարունակում էր տխուր, պաղ շիթեր թափել արիւնոտ հրապարակի վրա, որպէս վկայ հօր դիակի վրա ողբացող զաւակի անսահման վշտին. Սգում էր նաև Սուօն:

— Սուօ՛, ընդհատեց լռութիւնը վերջապէս Ռաշիդը, սիրելի՛ս, սա իմ հայրն է, քո էլ հայրն է. այս բոլոր թշուառների բազմութիւնից թաղենք գոնէ այս մէկին եկեղեցում:

— Թաղենք, Ռաշիդ ջան: Երկու ընկերները վեր կացան և երկու կողմից բարձրացրին դիակը. բայց դեռ հազիւ մի երկու քայլ արե-

ցին, որ նրանց ականջին հասաւ մի վերին աստիճանի տարօրինակ ձայն և նրանք ակամայից վար դրին իրանց բեռը։

— Պօչ, պօչ, Ռաշիդ ջան, մացինք ես ու դո՞ւն... զրմէն քնուկեն, զրմէն գային... մենք լէ չր քնե՞նք, Ռաշիդ, մուԹ քշեր ա...

Երկու երիտասարդները սոսկումով բարձրացրին իրանց գլուխները և զարմացմամբ տեսան դէպի իրանց վազող մի գզգուած, նիհար, չորացած կին, ոտաբոբիկ, գլխաբաց, խճճուած մազերով, նման մի կատարեալ ուրուականի։ Նրանք ճանաչեցին նրան։ Դա իրանց գիւղի Ծուռ Մանիշակն էր, նախկին շէն ու բախտաւոր գիւղի միակ Թշուառը։ Բոլոր մանուկները սրան ճանաչում էին, բոլորի էլ սա և՛ բարեկամն էր, և՛ Թշնամին։ Երբ փողոցի մի ծայրում երևում էր Ծուռ Մանիշակը, մանուկները սովորաբար խմբեր էին կազմում և մօտենալով կոչում էին՝ «Ծո՛ւռ Մանիշակ, Ծո՛ւռ Մանիշակ», քարեր էին գցում և զուարճանում, քանի որ Մանիշակը չէր բարկացել. բայց հէնց որ նրան համբերուԹիւնից հանում էին, նա կատաղում էր, փէշի մէջ բազմաԹիւ քարեր էր հաւաքում և գցում դէպի մանուկները, որոնք հռհռոցով փախչում էին զանազան կողմեր, իսկ Ծուռը աչողեցնում էր մէկն ու մէկին բռնել ու կծել. այս պատճա-

ռով մանուկներ և՛ սիրում էին նրան և՛ վախենում նրանից։ Ռաշիդն ու Աւօն էլ իրանց մանկութիւնից գիտէին ծուռ Մանիշակին, տեսել էին նրան այն ժամանակից միշտ այս վիճակում։ Թէ երբ էր նա խելագարուել և ինչո՞ւ համար, այդ համարեա ոչ ոք չը գիտէր և կամ եթէ գիտեցողներ էլ կային, կարիք չէին համարում պատմել, և իրօք այդ բանով ոչ ոք չէր էլ հետաքրքրւում, ամենքն էլ գիտէին, որ Մանիշակը ծուռ էր և ուրիշ ոչինչ։ Ամեն տուն նա ազատ մուտք ունէր, ամենքն էլ նրան կերակրում էին սիրով. կուշտ ուտելուց յետոյ նա պառկում, քնում էր այս ու այն փողոցում մի պատի տակ, կամ արագութեամբ գնում էր դաշտ և աննպատակ վազվզում այս ու այն արտի մէջ, ձորում, մարգագետիններում։ Շատ անգամ նա օրուայ մեծ մասն անց էր կացնում Տիրամօր բլրի վրա, աւերակ տաճարի մէջ, ուր սիրում էր ամբողջ ժամերով անկապ բառերով աղօթել, աւելում էր սրբավայրը, վառում էր ուխտաւորների բերած մոմերը և առհասարակ ծառայում էր տաճարին ինչպէս Տիրամօր «ղուլ»։ Շատ հաւանական է, որ ընդհանուր կողոպուտի ժամանակ Մանիշակը Աստուածածնի վանքումն է եղել, և կենդանի է մնացել, մտածեց Ռաշիդը, ապա թէ ոչ՝

գազանները սրան էլ չէին խնայի։ Յետոյ յանկարծ նրա մտքում ծագեց, թէ նրանք կարող էին դիտմամբ սրան խնայել, յատկապէս այս աւերակների մէջ թափառելու, սպանուածների թշուառութիւնը ծաղրելու համար, և այս միտքը մեխի պէս ցցուեց նրա գլխում։ Այո՛, մռմռում էր նա, նրանք այս գժին կենդանի են թողել՝ այս զարհուրելի տեսարանը է՛լ աւելի ահաւոր, է՛լ աւելի կատարեալ դարձնելու համար... Այլանդակուած, արիւնաթաթախ դիակներ, որոնց քաշքշում են գազանները, ծխացող աւերակներ և սրանց մէջ թափառող խենթ պառաւ,—այս տեսարանը քիչ էր մնում Ռաշիդի սիրտը ճաքեցնէր զայրոյթից և վշտից.

— Տէր Աստուա՜ծ, ես ինչո՞ւ եմ ապրում. ո՜, անօրէններ...

Մինչ երկու երիտասարդները ապշած նայում էին դէպի պառաւը, նա շարունակում էր վազվզել դիակների մէջ, ցատկել նրանց վրայից. ապա նա կանգ առաւ, երկար նայեց մի դիակի. ինչ որ խօսեց հետը, անցաւ դէպի միւսը, նոյն բանն արեց, ոտքով հրեց մի քանիսին, կրկին կատաղի ոստիւններով ցատկոտելով վրաներից, ծափ տալով, «պօյ-պօյ» պոռալով հասաւ Ռաշիդին ու Ասօին, որոնք շարունակում էին դիտել նրա արածները։

— Պօյ, պօ՜յ, Ռաշիդ, Աւօ, էս լէ էրէցնի, իմալ կարմիր շապիկ խաքիրի, կա՜ց, կա՜ց, իրիցու աչ պաքեմ, ասաց խենթը և կռանալով համբուրեց նահատակի աչքը, ապա գլուխը բարձրացնելով՝ երկար նայեց երկնքին ինչ որ ասելով, որից միայն այսքանն էր լսում՝ «Ա՜խ, Աստուած, ա՜խ Աստուա՜ծ», երևում էր, որ Թշուառի խանգարուած ուղեղի մեջ ճշմարտութեան մի նշոյլ ծագեց. կասես թէ նա հասկանում էր, որ մի ինչ որ շա՜տ վատ բան է կատարուած:

— Մանիշակը ձե հէյրան, էս ո՞ն էս մալ արաց, վա՜խ, մեղք է է՜... բա մեր Տիրամէր գո՞րն էր... վա՜խ անօրէններ... տե՛ս, տե՛ս քանիսն են քնուկ հա՜... Ռաշիդ ջան, քնո՞ւկ են... հարցրեց խենթը.

— Քնուկ չեն, Մանիշակ, սպանուկ են. սպանուկ են, արի՛ թաղենք, Մանիշակ, արի՛ վերուցենք թաղենք. կը գա՜ս, Մանիշակ:

— Հազ կենէք, թաղենք, Ռաշիդ ջան, Աւօ, ձե մեռնիմ թաղենք, էս գիշեր, գազաններ կը տեսնա՞ք, համմա կուտեն, խեղճ են էյ՜, խեղճ չե՞ն. ապա խեղճ են. մեր էրէց, մեռնիմ քո աչուն. հայիֆ, հայիֆ, դէ վերէք, լաօ, դէ վերէք...

Երկու երիտասարդները կրկին վերցրին իրանց Թանկագին բեռը և շարժուեցին դէպի

նկեղեցի· իսկ ծուռ Մանիշակն այդ միջոցին յետևներից քայլելով՝ կրկնում էր անդադար՝ «փառք Քե, Աստուած, փառք Քե, Աստուած»· հասան եկեղեցուն և ներս մտան քանդուած դռնից: Ասխանցիները չէին խնայել և Աստուծու տունը· եկեղեցու կտուրը փլած էր, սեղանի քարերը քանդուած և շուռ տուած, խաչկալի մնացորդները դեռ ծխում էին, զարդ անօթեղէնից ոչինչ չէր մնացել: Ցուղարկաւորները խորին երկիւղածութեամբ վար դրին դիակը և սկսեցին փորել յատակը· փորում էին դաշոյնով, սրով, ձեռներով, իսկ ծուռ Մանիշակը քաշում էր հողը դէպի մի կողմ: Անցան ժամեր, փոսը փորուած էր, դիակը վերցրին տեղաւորեցին գերեզմանի մէջ և հողով ծածկեցին, իսկ Մանիշակը շարունակում էր կրկնել՝ «փառք Քե, Աստուած, փառք Քե, Աստուած»: Դամբարանը պատրաստ էր, Ռաշիդը մէկ էլ ծունկ չոքեց, համբուրեց նուիրական հողակոյտը, նրա օրինակին հետևեց նաև Աւօն:

— Աւօ, ասաց Ռաշիդը, մենք կատարեցինք մեր նուիրական պարտականութիւններից մէկը· այնքան ննջեցեալներ թաղող անձը մեղք էր, որ անթաղ մնար· տեսա՞ր, որ գազաններն էլ չէին պղծել տէրտէրիս սուրբ մարմինը· երևի Աստուծու մատը կար այս

բանի մէջ. մնում է կատարել մեր երկրորդ պարտքը։ Մենք աշխարհի վրա այլ ևս ոչինչ չունենք, որի համար արժենար ապրել. ե՛կ այս սուրբ գերեզմանի առաջ, այս սուրբ տաճարի մէջ ուխտենք վրէժխնդիր լինել և ապա մեռնել խաղաղ հոգով։

— Ռաշիդ, ճակատագիրը մեզ վաղուց է կապել իրար հետ. դու գիտես, որ մինչև իսկ քո անձնական վիշտն անգամ ես իմ վիշտն եմ համարել, քո ուրախութիւնը իմ ուրախութիւնն է եղել. այժմ, երբ ընդհանուր վիշտն է կապում մեզ, մի՞թէ ես յետ կը մնամ քեզանից, կը հեռանամ քեզանից. արա՛ ի՛նչ կամենում ես, ես քեզ հետ եմ միշտ և իմ կեանքը քոնն է։

Նրանք գրկուեցին, համբուրուեցին, կրկին ծունկ չոքեցին, համբուրեցին Տէր-Մարուքի դամբարանը։

— Մանիշա՛կ, մենք կերթանք, դու մնա՛, գնա՛ ջանդրքները թաղի. կերթա՞ս Մանիշակ, վարձքի էէ՞, քաշէ լից ցորնի հորերը, ասաց Ռաշիդը։

— Ես, դո՞ր կերթաք, ասաց Մանիշակը, ձի մենա՞կ կը թողնէք. դէ որ էս չափ, գացէք Տիրամօր մօտ, ճամխէք թո՛ղ կեալ մօտ ձի։

— Խա՛, խա՛, Մանիշակ, դու քէլա, էթամ Տիրամօր թամբխեմ կեալ մօտ քե, ասաց

Ռաշիդը և երկու ընկերները դուրս գալով եկեղեցուց անյայտացան խաւարի մէջ, իսկ պառաւը ծափ տալով, ցատկոտելով կանչվըր-տելով կրկին վազեց դէպի դիակները։

— Սաբր էրէք, պոռաց նա, մրկայ Տիրա-մէր կուգայ. ապա առաջին դիակի ոտքից բռնելով սկսեց քաշել դէպի մօտակայ ցորենի հորը, յետոյ տարաւ երկրորդը, երրորդը, չոր-րորդը, մինչև որ փոսը լցուեց՝ ապա ձեռ-քերով չանգռելով գետինը՝ հողով ծածկեց տարօրինակ գերեզմանը՝ «փառք Քե, Աս-տուած» կրկնելով։

Երբ տեսնում էր գազաններին դիակներ քաշքշելիս, նա զարհուրելի ծամածռութիւն-ներ էր անում, ճվճվում, պոռում՝ ճչում, ծվծվում, գազանները փախչում էին և նա շարունակում էր քաշ տալ կիսով չափ կերուած, այլանդակուած դիակները դէպի հորերը։

Եւ մինչև լոյս գիւղի աւերակների մէջ լսւում էր ծեր Մանիշակի ձայնը, և մինչև լոյս ցորենի հորերը լցւում էին դիակներով...

Աշուն էր. լեռներն ու դաշտերը կամաց-կամաց մերկացան. նրանց կանաչազարդ և գոյնզգոյն զգեստը փոխուեց, մահուան դեղնու-թիւնն ամենուրեք պատեց։ Մեռնող բնու-թեան կեանքի վերջին նշոյլներն էլ հետզհետէ

քաղում էին. դեղնած խոտերի և չորացած ծաղիկների մեջ տեղ-տեղ երևացող կանաչաւուն բարակ ծիլերը և ուշացած ծաղիկները որբացած սգաւոր մանուկների էին նմանում, որոնց վիճակուած էր անտէրութիւնից զոհ գնալ աշխարհի պատահարներին. ցուրտ լեռնային հովը կատաղաբար փչում էր նրանց վրա և նրանք տարուբերում էին իրանց խղճուկ գլուխները, որպէս վշտահար թշուառներ: Երկնակամարը յաճախ ծածկւում էր թանձր միապաղաղ թուխպերով և շատ անգամ օր ու գիշեր այդ սևացած ամպերից մանրամաղ կաթիլներով քամւում էր անձրև՝ ողողելով սարեր, ձորեր, դաշտեր: Բաւականին զգալի ցուրտ էր լինում մանաւանդ գիշերները. լուսաբացին խաղաղ ջրերի մակերևոյթը ծածկւում էր շատ բարակ սառուցով, որ առաւօտեան արևի առաջին ճառագայթների թեթև տաքութիւնից հալւում էր կամ թափանցիկ կտորներով խաղում ջրի երեսին՝ և այդ ժամանակ խիստ հաճելի էր որ և է պատի տակ որ և է թմբի կրծքին նստել, արևկող անել յօրանջելով—արևի տաքութիւնը դուր էր գալիս: Լուռ էին դաշտերն ու լեռները. աւելի և աւելի սակաւ էին այն տեղերում մարդիկ երևում, հովիւներն էին դեռ շարունակում դաշտ քշել իրանց հօտերը,

բայց նրանք էլ դադարել էին երգելուց, նրանց սրինգների ձայնը չէր թնդացնում լեռները քաղցր արձագանքներով, հազիւ երբեմն մի Դեռան լեռնից որ և է քիւրդ հնչում էր իր վայրենի «լօլօն», նա կանչում էր իր ընկերոջը, ո՞վ գիտէ՝ ինչո՛ւ համար: Թռչուններն էլ թռել գնացել էին դէպի հարաւ, երբեմն-երբեմն միայն ուշացած կռունկների մի երամ յայտնւում էր երկնակամարի վրայ իր կիսաշրջան շղթայով և տխուր, մելամաղձոտ կզզոցով վրդովում էր ընդհանուր խաղաղութիւնը. բայց այդ էլ տևում էր մի քանի րոպէ միայն, որոնք էլ շտապում էին ժամ առաջ հեռանալ այս անհիւրընկալ դարձած աշխարհից դէպի հարաւ:

Ռաշիդը կորաւ. ասխանցիներն այլ ևս նրա մասին ոչ մի տեղեկութիւն չունէին. նրանք համոզուած էին, որ նա իր միւս հայրենակիցների պէս սահմանն անցաւ և գնաց Կովկասում ապաստան և մի կտոր հաց փնտռելու. վաղուց էր, ինչ Ռաշիդը դադարել էր նրանց հետաքրքրել, աւերակ Բանոնի հետ մոռացութեան տրուեց և նրա հերոս պաշտպանը: Ասխանցիները համարձակ տիրեցին Մարալայ սարերի ծաղկաւէտ արօտատեղերին և ականակիտ աղբիւրներին և խաղաղ վայելում էին իրանց յաղթութեան պտուղները: Բայց այդ

խաղաղությունը երկար չը տևեց: Մի օր յանկարծ հովիւները լուր բերին, թէ Աստուածածնի բլրի վրա և միւս սարերում ղաչաղ ջանֆիդաների մի խումբ է լոյս ընկել, որ օր ցերեկով յարձակումներ է գործում, սպանութիւններ է անում: Մի քանի օր յետոյ լեռնային գետակը երկու սեխանցու գլխատուած, այլանդակուած դիակ դուրս գցեց, և այնուհետև համարեա իւրաքանչիւր օր դաշտերում, լեռների մէջ, կամ գետում մէկ-երկու դիակներ էին յայտնւում կամ սեխանցիների, կամ ուրիշ էլիաթի քրդերի: Սեխանցիների էլիաթում ամենքն իրար դիպան, այլ ևս կասկածի տեղիք չը մնաց, որ լեռներում վտանգաւոր մարդիկ են բուն դրել: Հովիւները մանաւանդ առանձին զգուշութեան միջոցներ ձեռք առան. այլ ևս ոչ ոք իր ոչխարները շատ հեռաւոր լեռները չէր քշում, ոմանք էլ իրանց հօտերը միացրին և 2—3 հոգով միասին էին արածացնում ոչխարները:

Անցան դարձեալ մի քանի օրեր. կրկին այս ու այն քարի տակ, այս ու այն ձորում գտնուեցին սեխանցիների դիակներ և դրա հետ միասին հովիւներն սկսեցին հաստատ հաւատացնել, թէ այդ «ղաչաղները» ոչ այլ ոք են եթէ ոչ Աստուածածնի բլրի վրա բուն դրած դևերը, որոնք ապրում են այնտեղ ծուռ

Մանիշակի հետ և ուշացած անցորդներին՝ մանաւանդ երեկոյեան պահուն, բռնում են, խեղդում, գցում գետը, կամ տանում, կորցնում: Առաջ էլ ասխանցիները համոզուած էին, որ այդ բլրի վրայի աւերակների մէջ դևեր կան, որոնք միայն ծուռ Մանիշակի բարեկամներն են, առաջ էլ նրանք գիշեր ժամանակ առանց սոսկումի չէին անցնում այդ տեղից, բայց այս անգամ այդ երկիւղն ու սոսկումը ահագին դարձաւ և ամենքն էլ համոզուեցին, որ այնտեղի դևերն են կոտորում մարդկանց և այդ բանը նրանք բացատրում էին իրանց այն անգթութիւններով, որ գործեցին Բանոնում և ուրիշ տեղերում: Եղան նրանց մէջ նոյն իսկ մարդիկ, որոնք սկսեցին համարձակ կերպով դատապարտել այդ կոտորածները, որոնց պատճառով Աստուած այնպէս բարկացել էր նրանց վրա: Ծուռ Մանիշակն էլ արդարև շարունակում էր այնտեղ ապրել և երբեմն-երբեմն ցած էր իջնում, գալիս քրդերի մէջ հաց հաւաքում, ուտում, կամ փէշերը լցրած տանում. առաջ էլ նա սովոր էր երբեմն ասխանցիների մէջ իջնել, և նրան այստեղ էլ բոլորը ճանաչում էին և կերակրում էին: Դևերի մասին ահաւոր լուրերից յետոյ ասխանցիներն սկսեցին ատելութեամբ վերաբերուել ծուռ Մանիշակին,

ոմանք էլ նրան բռնում էին ժեժում, հարցնում, թէ ով կայ բլրի վրա. այդ բոլոր հարցերին ձուռ Մանիշակը պատասխանում էր զարհուրելի ծամածռութիւններով և անհասկանալի բացականչութիւններով, կամ ծափ էր տալիս և մատների վրա արագ-արագ համարում և մի ինչ որ բան մռմռալով փախչում էր գնում, հեռւում կանգնում, չանչ անում և ծիծաղում ասխանցիների վրա: Ծուռ Մանիշակի այս բոլոր խորհրդաւոր շարժումները է՛լ աւելի մեծացրին ասխանցիների երկիւղը և ամենքը համոզուեցին, որ անպիտան «ջիննին» (ծուռը) հացը դևերի հետ է ուտում Աստուածածնի բլրի վրա: Եւ ոչ ոք այլ ևս երեկոյեան պահուն շատ անգամ նոյն իսկ ցերեկով այնտեղից չէր անցնում: Ընդհանուրի սարսափը աւելի կատարեալ եղաւ, երբ մի ծերունի պատմեց մի այսպիսի բան էլ, թէ շա՜տ շա՜տ տարիներ առաջ մի քիւրդ տուն է շինել, դուռ չի ունեցել, գիշերով գնացել է այն վանքի դուռը հանել, շալակել բերել է տուն, բայց ո՜րքան մեծ է եղել իր սարսափը, երբ յանկարծ նկատել է, որ դուռը կպած է իր թիկունքից. ինչքան աշխատել է պոկել, ցած դնել, չի կարողացել, ստիպուած դուռը յետ է տարել, դրել է իր տեղում, և երբ փորձել է ցած

խչնել, հէնց այդ ժամանակ դեւերը նրան բռ-նել են գլխավայր ցած գլորել սարից քարերի մէջ, ուր նա ջախջախուել է. առաւօտը նրա արիւնալուայ դիակն են բերել: Հինաւուրց այս դէպքի պատմութիւնը սկսեց բերանէ բերան պատմուել՝ ամենքի սրտերը սարսափով լըց-նելով: Դեւերը շարունակում էին անցորդներ որսալ, խեղդել, կամ սպանել, գետը գցել, իսկ ծուռ Մանիշակն էլ առաջուայ պէս անդադար գալիս էր, ժամածռութիւններ անում, ծեծ-ւում, բայց և այնպէս՝ հաց առնում, գնում:

Մի ցուրտ գիշեր էր: Լեռնային մի դարա-տափի վրա ոչխարներին մաղալ տուած նստո-տել էին երեք սախանցի հովիւներ. նրանք ոտքից գլուխ զինուած էին:

Ալթարի կրակը պլպլում էր նրանց առաջը՝ իր դառն ծխի բարակ սիւնը գիշերային խա-ւարի մէջ կորցնելով: Շատ հեռուից երեւում էր այդ կրակը. պահապան շները շնթռկել էին հոտի այս ու այն կողմում և հսկում էին: Հովիւները խօսում էին անցած գնացած բաներից, մի-մի անգամ ալթարի կտորտանք շարելով պլպլացող կրակի վրա:

— Հայ գիդի հա՜մ... ասաց նրանցից մինը. մի ժամանակ մեր այս կողմերը ոչխար բերելը ղաղաղա էր (արգելուած). լաւ պրծանք բա-նոնցիներից ու Ռաշիդից:

— Պրծա՜նք, վրա բերեց ընկերը, պրծա՛նք, ամա մեր բէզլին էլ վրան դրինք։

— Ռաշիդ, բալի Ռաշիդ, էլի հայիֆն առաւ, լաւ առաւ. մարդը մի խօսքով՝ իգիթ էր, իգիթ։ Եանի մեղքս ի՞նչ թաղցնեմ, ախպէր, ես շատ կափոսայի, եթէ նրան սպանէին, լաւ, որ փախաւ պրծաւ։

— Տեսնես ի՞նչ էլաւ Ռաշիդը ախըր, շարունակեց առաջինը, հէնց իզով թօզով կորաւ հա՜ա...

— Կուռօնե՛ր, ասաց յանկարծ երրորդը, որ մինչև այդ ժամանակ լուռ լսում էր աչքերը կրակին յառած,—կուռօներ, մի բան ընկաւ միտս, էդ անիծած Ռաշիդը կորչող պտուղ չէր. արի՛ տես, որ մեր սարերի ղաչաղը հէնց ինքը Ռաշիդը լինի. ի՞նչ դև, ի՞նչ բան, դևս ո՞րն է, տօ։ Նրա վաթանը մենք քարուքանդ արինք, նա էնպէս հեշտութեամբ մեզնից ձեռք չի քաշի, չի՜ի...

— Է՞հ, ի՞նչ ես ասում, ջամէր (այ մարդ), ի՞նչ Ռաշիդ, ի՞նչ բան. մեր Հասանը էն օրը տեսել է, թէ ինչպէս սարից իջել է դէպ և ընկել իր քամակից, անչախ փախել է պրծել. մինչև հիմա էլ հիւանդ է. մէկ նրան հարցրու, տես ի՞նչ է պատմում, ասում է, հաւատա՝ բոյը երկինք էր հասնում, ձեռներ ունի գերանի պէս, տաս մարդու չափ մի անգամ է

քայլ ձգում, աչքերից, ասում է, կրակ էր թափւում, ինչպէս էլ ձէն էր հանում, ինչպէս ձէն, որ Աստուած ազատի, մարդ զարզան-դում էր։ Զէ, ջանըմ, դև է, դև՛։

Վերջինս իր խօսքը հազիւ էր վերջացրել, երբ շները կատաղի հաչոցով թռան և անյայ-տացան խաւարի մէջ։ Երբ հովիւներն էլ մէկէն վեր թռան տեղներից, հրացանները ա-ռան և դէպի այն կողմը դիմեցին։

— Ո՞վ է, պոռաց հովիւներից մէկը։

— Աշիր եմ, լսելի եղաւ խաւարի միջից, քշեցէք շներին։

Հովիւները միասին երկիւղով առաջացան, շներին հալածեցին։

Յայտնուեց, որ եկողը մի հոգի է, ոտքից գլուխ զինուած։

— Եվարէ-բա-խեր (բարի իրիկուն), ասաց եկողը։

— Խէր հատի (բարի եկար), պատասխա-նեցին հովիւները, և միասին դէպի կրակը դիմելով՝ տեղ ցոյց տուին հիւրին կրակի ա-ռաջ, իրանք էլ հանգստացած՝ կրկին շարուե-ցին իրանց տեղերում։ Այդ ժամանակ նրանք իրանց սովորականին համեմատ կրկին ողջու-նեցին նորեկին՝ աջ ձեռքները շրթունքների և ապա ճակատի վրա դնելով, կամենալով ասել, թէ մեր գլխի վրա ես եկել, ցանկալի

հիւր ես։ Ապա սկսուեց սովորական հարց ու փորձը հիւրի ով լինելու և ճանապարհորդութեան նպատակի մասին. երևաց, որ եկողը շինականների Աւգի աղայի մարդկանցից է և գնում է Նաղօ աղայի որդու՝ Հակկի բէգի օգնութիւնը խնդրելու թշնամի ցեղի դէմ։ Ճանապարհին գիշերը վրա է հասել, ցուրտը նրան նեղել է, կրակ տեսնելով նա շեղուել է ճանապարհից, եկել է մի փոքր տաքանալ, հանգստանալ և անցնի։

— Խէր հատի (բարի եկար), դարձեալ կրկնեցին հովիւները նրա կարճ պատմութիւնը լսելուց յետոյ և բոլորովին հանգստացան. շները մռմռալով գնացին իրանց նախկին տեղերում շնթռելու, հովիւներից մէկը կրակի վրա տարթ շարելով սկսեց փչել, որը բորբոքուեց և առատ ծուխ արձակեց դէպի խաւար երկնակամարը և ապա կապտագոյն բոցերով սկսեց վառուել ու պլպլալ մի հաճելի ջերմութիւն տարածելով իր շուրջը։ Մի ուրիշ հովիւ քանդեց իր պարկը և մի կտոր պանիր և գարու հաց հանելով տուեց հիւրին ասելով՝։

— Ա՛ռ, անուշ արա, բրա, սոված կը լինես։

Հիւրն առաւ պանիրն ու հացը և սկսեց ախորժակով ուտել, պարզ էր, որ նա վաղուց բան չէր կերել։

Ընդհատուած խօսակցութիւնը կրկին շարունակուեց:

— Գիտե՞ս, բրա՛, ասաց մի հովիւ Նորեկին դառնալով, այս կողմերում ղաչաղ է լոյս ընկել, մենք այսպիսի անօրինակ բան տեսած չէինք, ցաւն այն է, որ ոչ ոք էլ տեսած չէ այդ անիծած ղաչաղին. մէկն ասում է՝ թէ դև է, միւսներն ասում են՝ թէ ջանֆիդան է, արի ու բան հասկացի. իսկ այդ անիծած ղաչաղը թէ դևը շարունակում է մերոնց կոտորել ու կոտորել, քանիսին սպանեց հա՜... շատերի դիակներն էլ չենք գտել, ասում են թէ փախցնում ուտում է: Ռաշիդից ու Բանոնից պրծանք, հիմա էլ այս ղաչաղների—դևերի կրակն ենք ընկել. լաւ որ դու սալամաթ եկար:

— Տօ ջամէր (ա՛յ մարդ), ասաց Նորեկը, ղաչաղը մեզ ի՞նչ պիտի անէ, նա էլ մեզ նման մարդ չի՞, մեզ նման ձեռք ու ոտք չունի՞. ես զարմանում եմ, որ ասում էք՝ մեզ կոտորում են. տօ դուք աշիր չէ՞ք, որ այսպիսի բաներ էք խօսում, ամօ՛թ է՝ դևս ո՞րն է, ես դևերից հէչ չեմ վախենում:

— Այդ այդպէս է, ասաց դևերի մասին կասկած յայտնող հովիւը. բայց արի տես, որ այդ ղաչաղը կամ դևը հէնց ինքը Ռաշիդը լինի, այն ժամանակ վայն եկել է մեզ տարել.

նա հայրիք կառնի, հայրիք. ես ասում եմ, սրանք չեն հաւատում։

— Կուռօներ, գիտէք ի՞նչ կայ, ասաց մի հովիւ խորհրդաւոր եղանակով. ասում են, որ Ռաշիդին մեր ձեռքից ազատողը Զարէն է եղել, նրանց խուլամը (ծառան) տեսել է, թէ ինչպէս նա լալիս էր, երբ Ռաշիդին կապած բերին. ախր Զարէն ինչու պէտք է լար, եթէ նա մի ծածուկ բան չունէր։ Մէկ էլ՝ նրա բխօվներն ո՞վ բացեց, խօմ չարդել չէր կարող։

— Տօ, ի՞նչ ես խօսում, անխելք, այդպէս էլ բան կը լինի՞, ասաց հիւրը. Զարէն ինչու պէտք է նրան օգնէր փախչելու, նա չը գիտէ՞ր, որ Ռաշիդը «գեավուր-ֆլա» է... Մէկ էլ՝ ո՞վ ասաց, թէ նրա ոտները բացել են, նրա բխօվներն էլ հէչ չերևացին, ո՞վ գիտէ, ի՞նչ սատանայական միջոցով է փախել, Զարէն ինչու պէտք է նրան ազատէր։

— Ո՞վ գիտէ, ախպէր, շարունակեց առաջինը, կնիկ ազգէն, դրանց հաւատալ չի լինի, շա՜տ բաներ էլ են ասում... այ հիմայ էլ Ամին ազայի տղան ուզում է Զարէին, բայց սա չի առնում. տղան վճռել է փախցնել, իսկ Զարէն խաբար է արել, ասել է, թէ փախցնեն, կամ իրան կը սպանի կամ փախցնողին։

Այս տարօրինակ յայտնութիւնը բոլորի վրա էլ անախորժ տպաւորութիւն գործեց. մի փոքր ժամանակ տիրեց խորին լռութիւն։

— Կուռօնէ՞ր, ընդհատեց լռութիւնը մի հովիւ, երնէկ նրան, ով կառնի Զարէին, մարդ նրա պէս կնիկ ունենայ, թռռուն է, թռռո՜ւն։

— Դու էլ թռռուն գտար էլի՛, վրա բերեց երկրորդը, ես իմ Փլա-Մարօի մի ոտքը նրա գլխի հետ չեմ փոխի. որ տեսնես էլ՜, կասես հիւրի փէրի լինի. ափսոս անիծածը շատ է նազ անում, շատ է տզտզում։

— Տօ, էտ որտեղից ես ճանկել, չը լինի՞ թէ Բանոնից է, ասաց հիւրը։

— Բա որտեղից, տնաշէն, էլ ո՞վ չը տարաւ, հիմա մեր էլի մէջ մերոնցից շատ Փլա կնիկներ կան, էնպէս սիրունները, էնպէս սիրունները, չոկել ենք էլ՜, գէշերին կտորեցինք։ Մեր դրքէները նախանձից տրաքւում են, ամեն օր կռիւ, կալմաղալ, Փլաների հետ ծեծւում են. օյին է, օյին։ Բայց ես իմ կնկան չեմ թողնում Մարօի մաղին դիպչի. շա՜տ սիրուն էլ՜... ափսոս, շա՜տ է լալիս...

— Ինչո՞ւ է լալիս, հետաքրքրուեց հիւրը։

— Երբ գիւղը կրակ տուինք, շարունակեց խօսակիցը. ես մտայ մի տուն. տեսնում եմ մարդ չը կայ, ընկայ բան-ման հաւաքելու, յանկարծ թոնդրից մի երեխայի ձայն եկաւ,

մտիկ անեմ, տեսնեմ՝ էտ իմ Մարօն երեխու-
հետ կծկուել է թոնրի մէջ. դո՛ւրս արի, ա-
սացի,—դուրս կը գամ, ասաց, ամա քո բախ-
տըն եմ ընկել, երեխուս խնայիր: Ես խօսք
տուի, նա դուրս եկաւ: Տեսնում եմ, շատ
սիրուն է, երեխան խլեցի, դէն գցեցի, իսկ իր
ձեռքից բռնելով քաշ տուի: Մաղեար գալի՜ս
է. «երեխէս, երեխէս» գոչում էր անդադար և
ձգւում է դէպի երեխան: Ես սուրս բարձրացրի,
ասում եմ՝ թէ չը գաս, կը սպանեմ:—Սպանի՛ր
ասում է, բայց առանց երեխուս չեմ գալ:
Հերսն ինձ կտրեց, իրան թողեցի, երեխային
հասայ, թըռով կէս արի. շան քած, ասացի,
դէ ա՛ռ քեզ երեխայ, պրծա՞ր... դէ գնանք.
քաշ տուի, թուլացաւ, ընկաւ. ճարս կտրած
շալակեցի տարայ. հիմա լալիս է իր լակոտի
համար:

Ինչքան և աղօտ էր կրակի լոյսը, այնու-
ամենայնիւ եթէ հովիւները ուշադրութեամբ
նայէին, կարող էին տեսնել, թէ ինչպէս այդ
բոլոր պատմութեան ընթացքում Նորեկի
դէմքը մերթ բորբոքւում էր, կարմրում,
մերթ սպրդնում, գունատւում, վերջին դէպ-
քում նա ատամներն իրար վրայ էր սղմում,
կրճտում, թուքը դժուարութեամբ կուլ տա-
լիս, իսկ աչքերը փառւում էին մի անսովոր
կատաղութեան կրակով. կարելի էր կարծել,

որ այդ մարդը գերմարդկային ճիգեր էր գործ դնում խեղդելու իր մէջ աւելի և աւելի զօրացող զայրոյթի մի բուռն զգացմունք, որ մօտ էր պոռթկուելու նրա ուռած ու անհանգիստ կրծքից։

— Ախպէր, ես ֆլաներից բան չեմ տարել, ասաց երկրորդ հովիւը. ոչ կնիկ հասաւ ինձ, ոչ ապրանք, ես ուշ հասայ. բոլոր Թալանից ինձ միայն մի դանակի կոթ է բաժին ընկել։ Մի օր քշում եմ ոչխարներս, տեսնեմ շները դաշտում մի հատ մեծ դիակ են ուտում, անիծածի ոսկորներն այնպէս մեծ էին, այնպէս մեծ, արեւն էլ տուել էր, ճենճը դուրս եկել, ոսկորները դեղնացրել։ Թամահս եկաւ, պոկեցի կռան ոսկորը և տեսէք, թէ ինչ փառաւոր դանակի կոթ դուրս եկաւ. և նա ցոյց տուեց իր դանակը՝ դեղին ոսկէ կոթով։

— Դու բան չես տարե՞լ, վրա բերեց երրորդը, բա իմանաս ձեր Մահմուդի արածը. անաշէնը շա՜տ ագահ է, շատ ագահ։ Թալանի օրն է, ես ու Մահմուդը տուն ենք դառնում. մի քարի տակից մի ձայն եկաւ. Մահմուդը կանգ առաւ. «Կա՛ց, ասում է, այս տեղերը ֆլայի հոտ է գալիս»։ Ման եկանք, մի չահէլ կնիկ՝ երեխան գրկին գտանք մի քարի յետեւում թագնուած։ Անիծածն էլ լաւ հագնուած էր. գիտէ՞ք, այդ շները միշտ այդպէս

են, փախչելու ժամանակ ամենալավ շորերն են հագնում, որ տանեն հետները։ Այս կնիկը մեզ տեսավ թե չէ, ընկավ մեր ձիերի ոտների ա-ռաջ, աղաչեց թե ինձ մի՛ սպանեք։ Չենք սպանիլ, ասացինք, միայն դու խոսք տուր մեզ հետ գալ և կրոնդ փոխել։—Հա՛, կը փո-խեմ ասաց, միայն ինձ ու երեխայիս խնայեցեք, մի՛ սպանեք… Դե առաջ ընկիր գնանք, ասա-ցինք։ Գնացինք։ Ճանապարհին ես Մահմու-դին ասում եմ՝ Կուռօ, մենք լավ կնիկներ տարել ենք, սա էլ էնքան սիրուն չի, ինչնե-րի՞ս է պետք։ Թողնենք կորչի երթայ, զուր ենք տանում, գլխներիս ցավ շինում։

— «Չէ, պետք է տանեմ, ասում է, աւել թիքան աչք չի հանի։

— «Տեսայ ագահութիւն է անում, սուս կացայ։ Մի քիչ էլ գնացինք, յանկարծ Մահ-մուդը դարձավ դէպի ինձ.—«Գիտես ի՞նչ կայ, ասաց, ես էլ փոշմանեցի, նայում եմ այդ քածին, դուրըս չի գալիս, սպանենք, անցնենք. ափսոս միայն շորերին եմ գալիս, կարիւնո-տուեն»։—Այդ բանը դու ինձ յանձնիր ասացի, ես սրան այնպէս կը սպանեմ, որ շորերի վրա մի կաթիլ արիւն էլ չի թափուի։ Մենք ա-ռաջ գնացինք և հասանք մի առուի։

— «Է՜յ, կնիկ, ձայն տուի ես. կա՛ց, լաւ որ առուի հասանք. դէ՛ շուտ, շորերդ հան

մտիր ջուրը լողացիր, մաքրուիր, որ կրօնդ փոխես, դառնաս մեր կրօնին։ Կնիկն աղաչանք, պաղատանք ընկաւ, թէ ամօթ է, ախր ձեզ մօտ ես ի՞նչպէս շորերս հանեմ, տկլորանամ, թողէք տուն հասնենք, այնտեղ կը լողանամ ձեր ուզածի պէս։ Ես ականջ չարի։ Չէ՛, իլլահ պէտք է այստեղ լողանաս, ասացի։ Տեսաւ ճար չը կայ, սկսեց շորերը հանել, մենք էլ նայում, թամաշա էինք անում։ Մտաւ ջուրը լողացաւ, դուրս եկաւ, որ շորերը հագնի, ասացի՝ կնի՛կ, դեռ շորերդ մի՛ հագնիր, կա՛ց այդպէս, տեսնենք սիրո՞ւն ես։ Նա երեսը մեզ դարձրեց, կանգ առաւ, ամաչելով, կծկուելով. դէ՛ շուտ արի, միւս կողմդ էլ նայենք. Նա շուռ եկաւ, մէջքը դէպի մեզ. ես այդ րոպէին հրացանս քաշեցի և հէնց մէջքից տուեցի, վեր ընկաւ երեխայի մօտ և շունչը փչեց։ Մօտեցանք շորերը հաւաքեցինք, իսկ երեխան այդ ժամանակ թաթերով դէպի մօր մարմինը գնաց և ձեռներն արեան մէջ թաթախելով՝ սկսեց զարկել մօր մարմնին, խաղալ, և մէկ մեզ էր նայում, ծիծաղում, մէկ՝ մօրը։ Մենք ձիերս քշեցինք և...

Այս խօսքի վրա հիւրը յանկարծ ոտքի կանգնեց և կատաղած որոտաց ահռելի ձայնով.

— Ա՛խ, դուք անաստուած գազաններ, այժմ ո՞վ կազատէ ձեզ Ռաշիդի վրէժխնդրու-

թիւնից... Աւօ՛, գոչեց նա անազնազդորդ ձայնով և սարերում արձագանքը կրկնուեց՝ «օ՜օ՜օ՜»: Ռաշիդի անունը, որոտալեց ձայնը սարսափով պատեց երեքին էլ և մինչև որ նրանք կը կարողանային փախչելու կամ պաշտպանելու մասին մտածել, Ռաշիդի հրացանը որոտաց և վերջին պատմութիւնն անողը թրպրտաց իր արեան մէջ, սոսկալի խռխռոց արձակելով: Նոյն ժամին, խաւարի միջից յայտնուեց Աւօն. այս նոր մարդու երևալը միանգամայն սրտաճաք արաւ մնացած երկսին, որոնք կարծեցին թէ բազմաթիւ թշնամիներով են շրջապատուած և սկսեցին փախչել. բայց Աւօի գնդակը երկրորդին էլ տապալեց. երրորդը միայն կարողացաւ անհետանալ խաւարի մէջ:

«Հաւա՜ր, հաւա՜ր», լսուեց ամենայն կողմից. ասխանցիների ամբողջ էլխաթը՝ մարդ թէ կին, ծեր թէ մանուկ, տղայ թէ աղջիկ, ով միայն կարող էր որ և է զէնք վերցնել, որ և է կերպով օգնել իւրայիններին՝ դուրս եկան վրաններից, և ով ինչպէս կարող էր զինուեց: Բերանէ բերան թռչում էր այն յուզիչ լուրը, թէ դև-դաչաղն ինքը Ռաշիդն է՝ կատաղի քաջերի հետ միացած. և ահա այդ սարսաելի խումբն է, որ վերջին ամիսների ընթացքում ահ ու սարսափ է տարածել լեռներում:

Այդպիսի պատմութիւնից յետոյ թէ՛ պատմողը և թէ լսողը միաբերան գոռում էին՝ «հաւա՜ր, հաւա՜ր»։ Ամենքը քաջալերում էին իրար, վառւում էր ընդհանուր ֆանատիկոսութիւնը դէպի այդ մի բուռն ֆլաները, որոնք իրանց յանդուգն յարձակումներով այնքան զոհեր էին խլել նրանցից, այնքան սարսափ տարածել նրանց մէջ։ Պէտք էր և այս խմբից ազատուել, և ահա ամենքը վճռական գործողութիւնների համար վազում էին։ Քիչ յետոյ բոլոր զինուած բազմութիւնը դիմեց դէպի դաշտ։ Կանայք ու աղջիկները յետ չը մնացին տղամարդկանցից, նրանք էլ էին վազում, որպէս զի գոնէ մի-մի քար գարկեն այդ անիծած ղաչաղների գլխին, որոնք այնքան շատերին այրիացրին։

Լոյսը բացուելու վրա էր, երբ դէպի Աստուածածնի բլուրը վազող Ռաշիդն ու Աւօն յետ նայելով՝ տեսան ահագին աղմկուող բազմութիւնը, որ սեւին էր տալիս դաշտում։ Հայհոյանքի, նզովքի և սպառնալիքի ձայները հարիւրաւոր բերաններից թռչելով հասնում էին նրանց ականջին։ Նրանք զգացին, որ վճռական րոպէ է մօտենում. փախչել անյայտանալ աւելի հեռու տեղ, կամ պաշտպանութիւն փնտրել որ և է մէկի մօտ՝ անհնարին էր. միակ ելքը ժամ առաջ Աստուածածնի

բլուրը բարձրանալն էր. Եթէ հետքերը չը գտնեն, կամ չը վստահանան բարձրանալ՝ նրանց կարծիքով այդ դևերի բոյնը, լաւ կը լինի, մտածում էինք նրանք, իսկ եթէ յամառ կերպով հալածեն և փորձեն գագաթը բարձրանալ, այն ժամանակ թո՛ղ Աստուծոյ կամքը լինի, գոնէ նրանք կը կարողանան մի քանի տասնեակ էլ իրանց հայրենիքի արիւնարբու թշնամիներից այն աշխարհն ուղարկել.—վրէժխնդրութեամբ լցուած, բորբոքուած սրտերի համար դա կը լինի մի քանի կաթիլ զովացուցիչ ցօղ։ Եւ նրանք Աստծուն յանձնելով իրանց՝ զօռ տուեցին ոտներին։ Առաւօտեան աղջամուղջն օգնում էր փախստականներին, թշնամիները դեռ նրանց չէին տեսնում, բայց և այնպէս շտապում վազում էին դէպի Աստուածածնի բլուրը, նրանց բնազդով թւում էր, որ այդ բլրակը պիտի լինի ղաչաղների ապաստանը, չէ՞ որ այդ տեղից էր միշտ իջնում մարդակեր դևը։ Դաշտերն ու լեռները թնդում էին խառնիճաղանճ ձայների արձագանքներից, որոնք առաւօտեան զով օդի մէջ աւելի հեշտութեամբ և աւելի հեռու էին տարածւում ու կրկնւում հազար ու մի եղանակով։ Անընդհատ լսւում էր հրացանների որոտը, սախանցիները կրակ էին տալիս տարածութեան մէջ աննպատակ, առանց թշնա-

մուտ տեսնելու. ընդհանուր զայրույթով և վրէժխնդրութեամբ լցուած բազմութիւնը ինքն իրան հաշիւ չէր տալիս իր արածի համար, նրա գործողութիւնները որոշ կարգի, չափի տակ չէին ընկնում, մարդիկ գիտէին միայն, որ առաջներին թշնամի կայ և որ պէտք է հրացան կրակել և վազել: Փախստականները չէին պատասխանում՝ կրկնակի նպատակով. նախ՝ որ խնայում էին իրանց փամփուշտի պաշարը աւելի նեղ ժամանակի համար, և երկրորդ չէին կամենում մատնել իրանց տեղը. նրանք դաղտագողի, քարերի ետևից, փոսերի միջից շտապում էին դէպի բլուրը: Ահա վերջապէս նրանք բլրի ստորոտի զառիվայրի վրա են: Լոյսը բացուեց, ասիանցիք նկատեցին, թէ ինչպէս երկու հոգի շտապ դէպի բլուրն են բարձրանում. զայրոյթի մի ընդհանուր աղաղակ դուրս թռաւ ամենքի կրծքից—«սէր պսան ֆլա» (շան տղայ հայ), գոռացին ամենքը և հրացանները կրկին միանգամից որոտացին: Սւօն կուրծքը բռնեց և ընկաւ, վէրքը մահացու էր: Այս դժբաղդութիւնը սոսկում ազդեց Ռուշիդին: Ինչ անելը չիմանալով՝ նա սկզբում կանգնած մնաց, և ապա թէ ուշքի գալով հասկացաւ, որ ուրիշ ելք չը կայ, ուստի և վճռեց կանգնել ընկերոջ մօտ և մինչև մահ պաշտպանել նրան իր կրծքով:

— Ռաշի՛դ… ես մեռնում եմ… փախիր և ազատուիր… գոնէ դու… ես…

Աւօ՜, Աւօ՜… քեզ [թողնե՞լ…

— Փախի՛ր, եղաւ պատասխանը և Աւօն շունչը փչեց։

Էլ ճար չը կար․ Ռաշիդը խորին ցաւով ստիպուեց շարունակել իր փախուստը մենակ։ Նա բարձրանում էր աշխատելով՝ որքան կարելի է պաշտպանուած գիրքի մէջ լինել քարերի յետևում։ Այնա՛ վերջապէս նա բլրի կատարի վրա է․ անա՛ նա յետ դարձաւ և նրա-ջանի մի հատիկ-հատիկ պայթիւններով գնդակներ է ցցում դէպի վար, դէպի ստորոտը, ուր հասել է թշնամիների բազմութիւնը, որոնք իրար են խառնուել, աղմկում, ճչում են։ Ռաշիդի գնդակներն ապարդիւն չեն անցնում․ նրա հրա-ջանի ամեն մի ձայնից յետոյ ներքևում մէկն ու մէկը ոռնոցով վայր է գլորւում և բազմութիւնը զարհուրելի նզովքի աղաղակ է բարձրացնում, բայց և ոչ ոք չի շտապում դէպի վեր բարձրանալ։ Նրանք դեռ խորհում են այն մասին, թէ արդեօք բարձրանա՞լ թէ ոչ․ նրանք համոզուած են, որ բացի այս մէկից բլրի գագաթին՝ ո՞վ գիտէ քանի ճարպիկ մարդակերներ կան դարան մտած և թէ այս մէկը միմիայն նրանց վեր հանելու նպատակով է մէն-մենակ տնկուել բլրի ծայրին

և անվախ ու համարձակ գնդակներ է թափում այս ահագին բազմութեան վրա։ Ոմանք առաջարկում էին յետ դառնալ՝ բոլոր աշիրէթներին լուր տալ և մի քանի հազարով միասին յարձակուել, ուրիշները ամօթ էին համարում փախչել մի խումբ Ֆլաների առաջից. իսկ Ռաշիդը շարունակում էր գնդակները թափել թշնամիների գլխին։

— Պօյ պօյ, Ռաշիդ, ես էլ եկայ, յանկարծ կոչեց ծուռ Մանիշակը և ո՞վ գիտէ որտեղից ցցուեց Ռաշիդի կողքին։ Նա կատաղաբար սկսեց սարից քարեր պոկել և գլորել դէպի թշնամիները. նրա դէմքը սարսափելի էր, աչքերը վառւում էին, բերանը ծռուած էր մի կողմը, նա զարհուրելի աղաղակ էր բարձրացնում քարերը գլորելով։ Եւ մինչդեռ բազմութիւնն այսպէս շարունակում էր տատանուել, վիճել, աղմկուել, յանկարծ մի վերին աստիճանի անսպասելի բան պատահեց,—բլրի կատարին հէնց Ռաշիդի կողքին քրդական տարազով մի գեղեցիկ աղջիկ երևաց, և նրանք երկսով անմիջապէս հեռանալով անյայտացան բլրի աւերակների մէջ, ծուռ Մանիշակին մենակ թողնելով՝ կռուելու ահագին բազմութեան հետ։ Այս բանը տեսան ամէնքը, բայց ոչ ոք չէր հաւատում իր աչքերին. ախր ի՞նչ գործ ունէր ախանցու աղջիկն այնտեղ. ո՞վ է նա, ի՞նչպէս,

Երբ և ի՞նչու համար պիտի բարձրանար այնտեղ, ահա՛ այն հարցերը, որ տալիս էին իրար, բայց ոչ ոք չէր կարողանում գոհացուցիչ պատասխան տալ։ Ոմանք նրան մի չար ոգի էին համարում, որ երևաց այնտեղ իրանց խաբելու, վերև հանելու համար, որ կոտորուեն. ուրիշներն ասում էին, որ նա աղջկայ շորեր հագած մի տղամարդ է, որ ո՛վ գիտէ ի՞նչ չար նպատակով է այդպէս այլափոխուել, և ամենքին պատեց նախապաշարմունքի, սնահաւատութեան սարսափը, ամենքը եկան այն համոզման, որ վտանգաւոր է բարձրանալ այդ դևերի բոյնը և արդէն պատրաստւում էին յետ դառնալ, փախչել, երբ բազմութիւնից մէկը յանկարծ գոռաց.

— Զարէն է՞ր...

— Զարէն է՞ր, Զարէն է՞ր, կոչեցին այստեղից, այնտեղից մի քանի ձայներ. Զարէն է անհաւատների մօտ բարձրացել։

Եւ նրանք չը սխալուեցին. բլրի կատարի ոգին ոչ այլ ոք էր, բայց եթէ Զարէն։ Հէնց այն րոպէից, երբ հաւարն ընկաւ և յայտնի եղաւ, որ բազմութիւնը Ռաշիդի վրա է գնում, Զարէն վճռեց ինչպէս և լինի Ռաշիդին հասնել, նրան մենակ չը թողնել այդ ծանր ժամին, կամ նրա հետ ազատուել, կամ նրա հետ մեռնել։ Բազմութեան հետ նա էլ դաշտ

վազեց, ամենից արագ, ամենից առաջ։ Բլրի ստորոտում բազմութեան սպասելը, տատանուելը մի յարմար միջոց եղաւ նրա համար իր նպատակին հասնելու և մինչդեռ ախոյանցիները մտածում էին՝ բարձրանալ թէ ոչ, Զարէն բլրի հակառակ կողմից, համարեա անմատչելի տեղերից ամենից ծածուկ, արհամարելով ամեն մի վտանգ, գաղտնագողի կերպով բարձրացաւ, կախուելով մացառներից, չանգռելով ժայռերը, արիւնոտելով ձեռներն ու ոտները։ Սա մի աննման հերոսութիւն էր, որ յանձն առաւ ի սէր Ռաշիդի այս տարօրինակ լեռնական աղջիկը, և գլուխ տարաւ անսպասելի աջողութեամբ։ Ապշութիւնը և հիացմունքը տիրեց Ռաշիդին, երբ յանկարծ տեսաւ իր մօտ Զարէին, արիւնաթաթախ, հեւալով, քրտնաթոր։ Նրա ձեռները թուլացան, մի անսահման հաճելի, մի դուրեկան զգացողութիւն անցաւ նրա ամբողջ մարմնով և ախորժելի կերպով սարսռեցրեց նրա ամբողջ մարմինը, երբ զգաց իր ձեռքի մէջ սիրած աղջկայ դողդոջուն ձեռքը, երբ առաւ իր գրկի մէջ նրա մարմինը։ Էլ ինչո՞ւ կռուել, մտածում էր նա. վրէժխնդրութիւնը յագեցած է, նա այժմ երջանիկ է, սիրած էակը իր մօտն է, մահը նրան այլ ևս սարսափելի չէ, այսքան երջանկութեան համար նա պատրաստ

է հազար անգամ մահ ընդունել։ Այսքան անձնուիրութիւն, այսքան սէր մի լեռնական աղջկայ մէջ՝ նա երեւակայել անգամ չէր կարող։ Այժմ միայն զգաց, թէ ի՛նչպիսի սիրտ էր բաբախում այս անվեհեր հերոսուհու կրծքի տակ և նրա հոգին համակուեց մի անսահման ցաւով այս պարզ անմեղ աղջկայ համար, որ կամաւ իր բաղդը նրա բաղդի հետ է միացրել և յանձն է առել նրա սիրոյ համար այսքան անօրինակ մարտիրոսութիւն։ Ռաշիդն իր սիրած մէկ ընկերից զրկուել էր. բաղդը էր նրա համար այս երկրորդն ունենալ, ուստի նա վճռեց ամէն հնար գործ դնել ազատուել, ապրել Զարէի համար։ Կեանքի մասին նա մինչև այժմ շատ քիչ էր մտածում, որովհետև կորցրել էր ամէն ինչ, կեանքը ներկայանում էր նրա համար որպէս մի սոսկալի դատարկութիւն, բայց այս աղջկայ անօրինակ սէրը լցրեց այդ դատարկութիւնը և նա վճռեց շնչել, ապրել և փայփայել իր Զարէին... Այս մտքերով բռնուած, Ռաշիդը Զարէի հետ միասին շտապով շարժուեց բլրի զանազան կողմերը փախչելու մի ճանապարհ փնտռելով, բայց նրա յոյսերն ի դերև անցան. բլուրը բոլոր բաց կողմերից շրջապատուած էր թըշնամիներով, ազատ էր մնում միայն մի կողմը, որ ահեղ շառաչելով հոսում էր սրընթաց,

կատաղի գետակը: Յուսահատ ու խորտակուած սրտով նրանք յետ դարձան և շուարած մնացին աւերակների մէջ կանգնած:

— Զարէն էր, կրկին պոռաց բազմութիւնը բլրի ստորոտում, երբ ամեն տեղ փնտրելով, նրան չը գտան, մինչդեռ ճանապարհին նրան ամենքն էլ տեսել էին՝ յուզուած, մտախոհ:..

Զարէն էր, նզո՛վք նրա գլխին, մռմռացին ամենքը և սկսեցին չորս կողմից բարձրանալ դէպի բլուրը զարհուրելի աղաղակներով: Այդ տեսնելով՝ ծեր Մանիշակը վազեվազ եկաւ և առանց մի բառ ասելու բռնեց Ռաշիդի ձեռքից և շտապով դիմեց դէպի գետակը. ինչ էր կամենում նա անել, այդ չը գիտէին Ռաշիդն ու Զարէն, բայց ուրիշ որ և է հնար չունենալով՝ նրանք գնացին նրա ետևից: Ծեր Մանիշակը մօտենալով այն տեղին, ուր ժայռի հատուածը իջնում էր դէպի գետակը, կանգ առաւ. այստեղ բարձրանում էր աւերակ մենաստանի խորանի մի պատը, իսկ այդ պատի հիմքի մօտ բուսել էին հազարենի բազմաթիւ թփեր. պառաւն շտապով յետ քաշեց այդ թփերը և բացուեց մի պտուտակաւոր անցք, որ ոլոր մոլոր շաւիղներով իջնում էր դէպի գետի յատակը: Հինօրեայ մենաստանի առաջին բնակիչները երևի փո-

րել էին այս անցքը վտանգաւոր ժամանակ գետից ջուր վերցնելու համար. սա մի կատարեալ երկնային պարգև էր։ Ռաշիդը մինչև այժմ այդ անցքի գոյութեան մասին ոչինչ չը գիտէր, չը գիտէին և ուրիշները. իսկ պառաւը որտեղից էր իմացել, այդ միայն ինքը գիտէր։ Երկու սիրահարները շտապով ցած թռան այդ փոսի մէջ և շարունակեցին ցած իջնել, մինչև ժուռ Մանիշակը թփերը կարգի բերեց հորի անցքի վրա և հեռացաւ գնաց։ Հէնց այդ ժամանակ զինուած ու կատաղած բազմութիւնը կատարին հասնելով՝ սկսեց փընտռել իր զոհերին, բայց նրանց ջանքերն ի զուր անցան. նրանց առաջ ներկայացաւ միայն ժամաժռութիւններ անող պառաւը, որ կասես թէ ծաղրում էր այդ բազմութեանը։ Ընդհանուր կատաղութեանը չափ չը կար։

— Ի՞նչ եղան նրանք, հարցնում են նրան ամեն կողմից հարուածելով։

— Պօյ պօյ, չեմ գինա, սարը կերաւ, չեմ գինայ, սարը կերաւ, անդադար կրկնում էր պառաւը ի պատասխան նրանց բոլոր հարցերին։

Զայրոյթով լցուած ասիանցիները քաշ տուին պառաւին դէպի ժայռի բարձր քարափը և բոլոր թափով վայր գլորեցին նրան

անդունդի մէջ, ուր գոռում էր գետակը՝ գլորելով իր պղտոր ալիքները։

Իսկ այդ ժամանակ Ռաշիդն ու Զարէն նստած էին իրանց խոր ապաստարանում, և սկզբում բաւական ժամանակ լուռ ականջ էին դնում մերթ գետի շառաչին, որ այստեղ աւելի զօրեղ էր լսւում, և մերթ վերևից լսւող աղաղակներին։

Վերջապէս լռութիւնն ընդհատեց Ռաշիդը։

— Զարէ ջան, այս ի՞նչ արիր, ասաց Ռաշիդը, ախր ինչո՞ւ եկար, մի թէ չէիր հասկանում, որ իմ կեանքը վտանգի մէջ է, որ ես գլուխ դնելու տեղ չունեմ։

— Ս՜, Ռաշիդ ջան, դու Զարէին դեռ չես ճանաչում, պատասխանեց աղջիկը, խաւարի մէջ աւելի և աւելի մօտ կպչելով սիրած երիտասարդին. ես եկայ հէնց այն պատճառով, որ դու վտանգի մէջ ես. էլ ինչո՞ւ մնայի, երբ պէտք է դու վտանգուէիր, չէ՞ որ քո մահը իմ մահն էլ է. լաւ չէ՞ր գոնէ քեզ հետ միասին մեռնել. ես եկայ, որ ցոյց տամ, թէ արժանի եմ եղել իմ աննման Ռաշիդին։

— Բայց դու մոռացար, Զարէ, որ ես ձեր ցեղի, նոյն իսկ ձեր տան թշնամին եմ, քանիսին սպանեցի ձերոնցից։ Ամաչում եմ ասել, ես իմ կեանքով քեզ եմ պարտական, դու ինձ ազատեցիր, իսկ ես քո հօրն էլ չը խնայեցի,

ես... ես... չէի կարող դու գիտես, իմ վաթանը... իմ ծնողները...

Նա չը կարողացաւ շարունակել, ձայնը կերկերաց և լռեց, աղջիկն զգաց իր ձեռքի վրա մի կաթիլ տաք արտասուք, ուստի մօտեցաւ և համբուրեց նրա աչքերը ասելով.

— Լսիր, Ռաշիդ ջան, մի՛ խօսիր այդ բաների մասին, մենք ասիանցիներս արեան տեղ՝ արիւն, զոհի տեղ՝ զոհ, թալանի տեղ՝ թալան և սիրոյ փոխարէն սէր տալ գիտենք։ Դու ես սպանել իմ հօրը, ես այդ գիտեմ, հապա քո հօրը... քո վաթանը... Օ՜, Ռաշիդ, մեր վիճակը նոյնն է, բացի սիրուց մենք իրար այլ ես պարտական չենք։ Երբ դուրս գանք այս տեղից, առ և տար ինձ այնտեղ, ուր ձեր ֆլաները շատ են. ես էլ ֆլա կը դառնամ։ Յիշում ե՞ս, ես քեզ առաջ էլ ասացի, այն ժամանակ չը համաձայնեցիր։ Կը տանե՞ս ինձ, Ռաշիդ ջան, հա՞, կը տանե՞ս... կրկնում էր աղջիկը փաթաթուելով իր սիրածի պարանոցին,

— Կը տանեմ, կը տանեմ, Զարէ ջան, էլ ի՞նչ մնաց ինձ այստեղ, որ մնամ։ Սպասիր գիշերը վրա հասնի, ն ր ա ն ք հեռանան։

Երկու սիրահարները, սիրոյ բուռն արտայայտութեան գիրկն ընկած, երևակայել ան-

գամ չը կարողացան, թէ ի՞նչ սարսափելի վախճան ունեցաւ խեղճ պառաւը։

Իսկ թշնամիները բլրի վրա երկար փնտռելուց յետոյ վերջապէս համոզուեցին, որ երկու սիրահարները, երեւի յուսահատուած, ժայռի կատարից ցած են գլորուել գետի մէջ և այնտեղ մահ գտել... Այդ մտքով մասամբ գոհացած՝ նրանք կամաց-կամաց թողին հեռացան։

Հասաւ խաւար գիշերը, նրա հետ միասին հասաւ նաեւ Աշխէի և Զարէի փրկութեան ժամը...

1897 Թ.

# ԲԱՑՕՆ

---

Աշնան վերջն էր: Վաղ առաւօտեան ցուրտը խիստ զգալի էր. պարզկայ, ցուրտ գիշերուայ հետքերն երեւում էին. սառած, կարծրացած գետինը ծածկուած էր եղեամի նուրբ, բազմանկիւն թերթիկների բարակ սփռոցով: Դա մի սիրուն, սպիտակ քօղ էր, որ կարծես գիշերային ցրտից կուչ եկած, մրսած գետինը շտապել էր գցել իր վրա, ծածկել իր մերկութիւնը, և այդպիսով մի փոքր տաքանալ, նիրհել մինչև արեւի ծագումը: Հորիզոնը եզերող լեռնաշղթայի ամենաբարձր գագաթները, որոնք անհոգութեամբ ցցուել էին իրար կողքի, նոյնպէս սպիտակ էին. մօտեցող ձմեռը իր տիրապետութիւնը հաստատել էր այնտեղ, նրանք արդէն ձիւնով ծածկուած էին և սպառնալից հայեացքով նայում էին դէպի վար, դէպի իրանց ոտների տակ սփռուող դաշտն ու գիւղերը:

Ճերմակ հագնուած լեռների թիկունքից արեգակը բացեց իր կենսատու աչքը. երկիրն էլ կարծես հէնց դրան էր սպասում. նա դէն գցեց իր վրա փռած թափանցիկ, փայլուն քօղը. սառած գետինը մի առանձին հաճոյքով սկսեց ներս ծծել արևի տաքութիւնը, որ բուրաւոր ճառագայթներով թափւում էր անամպ, ջինջ երկնակամարից: Գետնից խիստ թափանցիկ, հազիւ նկատելի գոլորշի էր բարձրանում, ամբողջ գիշերը շունչը պահած, մնջած երկիրը կարծես այժմ էր միայն ազահաբար շունչ առնում. արեգակը շոյում էր նրան: Սակայն պատերի ստուերները դեռ մի առանձին հաճոյքով շարունակում էին պահպանել անցած գիշերուայ ցրտի նշանները. այդ տեղերում դեռ փայլում էր եղեամի սպիտակ շերտը իր մրսեցնող տեսքով: Խաւարն ու ստուերը եղբայրներ են, առաջինի սկսածը՝ երկրորդը յամառութեամբ շարունակում էր:

Դէպի արևելք նայող պատերի տակ հաճելի էր կուճուռուել, նստել. այդ տեղերում արևը նիրհեցնող քնքշութեամբ շոյում էր մերկ մարմինը. տաքութիւնն առատ էր այնտեղ: Դաժան ձմեռուայ խստութիւնները կրող ամէն մի թշուառ, ամէն մի մուրացիկ քաղցր յիշողութիւններ է պահպանում աշնանային պատերի տակ տաքացնող արևի մասին: Դա

մի անցած երջանկութիւն է, որի մասին երազելն անգամ ախորժելի է լինում խեղճերին։

Օրը կիրակի էր. Ի... աւանի խանութները փակ էին. բայց չը նայելով դրան, վաղ առաւօտից շուկայում մի արտասովոր կենդանութիւն էր սկսուել։ Աշունը, մանաւանդ ուշ աշունը, տենդային գործունէութեան, կենսական տագնապի մի շրջան է մարդկանց համար։ Այն անհաճոյ, խստասիրտ հիւրը, որ ձմեռ անունն է կրում, այդ ժամանակ զգացւում է ամենուրեք բնութեան մէջ։ Անսանձ ու ցուրտ հողմերը, իրանց անախորժ շշուկով, սուր վզվզոցով սարսեցուցիչ բաներ են պատմում այդ անխուսափելի հիւրի մասին։ Թէև միայն խեղճութիւնն է դողում այդ սպառնալի ձայներից, բայց և այնպէս ամենքն են շտապում, ամենքն են անհանգիստ լինում. ունևոր և չունևոր, բախտաւոր ու թշուառ հաւասար եռանդով սկսում են պատրաստութիւններ տեսնել, որ դաժան հիւրի գալստեանն անպատրաստ չը գտնուեն։ Գիւղացին այդ ժամանակ շտապում է իր արդար քրրտինքի պտուղները, Աստուծոյ տուած բարիքը դաշտերից հաւաքել, ծառերից պոկել, գետնից դուրս հանել, տուն բերել, կամ քաղաք տանել վաճառել. իսկ քաղաքացին ամբողջ տարին վաստակաբեկ գիւղացիներից կամաց-կա-

մաց դուրս կորզած դրամի մի մասը այժմ ստիպուած է կամայ ակամայ յետ տալ իր նախկին տիրոջը,—նա իր ձմեռուայ անհրաժեշտ պաշարը պիտի գնէ գիւղացիներից։

Այդ օրը Ի... աւանի շուկայումն էլ դերերը փոխուել էին. վաճառողն այս անգամ երկրագործ գիւղացին էր, գնողը՝ վաճառական քաղաքացին։ Շուկայի ընդարձակ հրապարակը ծածկող գեղջկական սայլերն ի՞նչ բարիք ասես, որ չէին բերել։ Բազմալեզու և բազմատարազ խայտաբղէտ ամբոխը լցրել էր շուկայի ամէն մի անկիւնը և բոլոր խօսակցութիւնը, աղաղակը, հայհոյանքը, կանչն ու ծիծաղը միախառնուելով՝ կազմում էին մի ընդհանուր, անհասկանալի հսկայական մռամռոց։ Ոտաբոբիկ, կիսամերկ, թուխ մարմինը մի բարակ մաֆրաշով հագին ծածկող թուրքը, սայլի վրա կանգնած, մի խումբ գնորդներին կաղամբ էր վաճառում. մեծ փափախով չուխաւոր հայը՝ վառելիք. ռուս զինուորը՝ հին զինուորական շորեր և ահագին երկարավիզ կօշիկներ. մի խումբ քրդեր ձիւնոտ սարերից ցած գալով հրապարակ էին բերել մի քանի եզներ, ոչխարներ ու գորգեր։ Դէմքերն այլանդակ, մազերը խռուխ, կուրծքն ու սրունքները բաց, կեղտոտ և թուխ մարմինը մի հատիկ շապկով միայն ծածկած գնչու կանայք և աղ-

ջիկները շալակներով դաշտերից հաւաքած ցախ էին բերել և իրանց դողդողացող մերկ յամուկների հետ մի անկիւնում կծկուել էին. հայ բօշաները՝ մաղեր ու շիւերից գործած սալաներ էին վաճառում:

Դեռ ցուրտ էր, բայց ասես թէ ոչ ոք չէր մրսում, և՛ գնողը և՛ վաճառողը հաւասար եռանդով էին բռնուած. Նրանց համար երևի այդ ցուրտն անզգալի էր դարձել: Մրսում էին միայն նրանք, որոնք ոչինչ չունէին գնելու կամ վաճառելու, որոնք անողորմ ճակատագրի վճռով անմասն էին մնացել այդ աղմկալի կեանքից և լոկ տխուր հանդիսատեսներ էին — դրանք հայ գաղթականներն էին:

Շուկայի արևմտեան կողմի խանութների բարձր պատշգամբն էր նրանց մշտական կայանը: Այդ պատշգամբը նայում էր դէպի արևելք, առաւօտեան արեգակն ամենից առաջ այնտեղ էր թափում իր ջերմ շողերը և մերկ մարմինները բնազդօրէն այնտեղ էին դիմում, աշխատելով՝ որքան կարելի է աւելի մօտ լինել պատին, որքան կարելի է աւելի ճառագայթներ որսալ: Ո՛չ մէկը միւսի վրա ստուեր չէր գցում, այդ լաւ չէր լինի, դա խեղճերի հարևանութեան օրէնքին հակառակ էր, ստուերը կը մրսեցնէր: Բաց, մաղոտ կրծքեր,

տխուր, յոգնած դէմքեր. մերկ, փտիտ, ջլուտ ոտներ մի գծով խիտ առ խիտ շարուած էին արևոտ պատի տակ և լուռ, անմռունչ դիտում էին շուկայի կենդանի իրարանցումը տխուր հայեացքով:

Շուկան լցնող բազմութիւնը այդ ժամին երկու բանակի էր բաժանւում և նրանցից ոչ մինը միւսի հետ գործ չունէր, ոչ մինը միւսով չէր հետաքրքրւում. առաջինը վաճառող և գնող մարդկանց բանակն էր, որ շտապում էր իր եսասէր կեանքի պահանջներին գոհացումն տալ. այդ էր նրա ամենամեծ հոգսը: Իսկ երկրորդը՝ այս խղճալի հանդիսատեսների խումբն էր, որի ամենամեծ ջանքը, հոգսը, հետաքրքրութեան առարկան այդ րոպէին այն էր, որ ինչքան կարելի է պատի տակ աւելի տաք անկիւն գրաւի, աւելի մօտ կպչի իր հարևանի մարմնին: Արևի տաքութիւնը շուկայումն անգամ չէր վաճառւում, ինչու խեղճերը չօգտուէին գոնէ բնութեան ձրի շնորհից:

Արևը կամաց-կամաց բարձրացաւ. պատի տակ տաքութիւնն այժմ աւելի առատ էր. մերկ միսն այլ ևս չէր սրթսրթում: Մրսող մարմինները տաքացան, մտքերն այդ հոգսից պրծան, իրար կողքի նստած հարևաններն այժմ միայն պահանջ զգացին մի բան ասել,

ձայն հանել, խօսակցել, տպաւորութիւններ հաղորդել իրար։ Շարքի մէջ այս ու այնտեղ թեթեւ փսփսոց սկսուեց, որ կամաց-կամաց տարածուելով ու մեծանալով՝ բռնեց ամբողջ շարքը եւ դարձաւ բաւական բարձր շշնջիւն։ Խօսակցութեան նիւթ շա՜տ կար. այդ օրը շուկան կարծես դիտմամբ մի այնպիսի տեսարան էր ներկայացնում, որ կեանքի ամենամեծ դաժանութիւնները ճաշակած, հազար ու մի զրկանքների ենթարկուած, հալածական, անապաստան թշուառներն աւելի խոր զգան իրանց կացութեան բոլոր սարսափը։ Խուլ մռմռոց բարձրացնող այս ամբոխը կարծես նրա համար էր այդպէս իրար գլխով դիպած, նրա համար էր եռանդով առնում, վաճառում, որ խեղճերի այն շարքն աւելի լաւ հասկանայ, թէ մինչեւ ո՛ր աստիճան ինքը թշուառ է եւ թէ ինչպէս անպատրաստ պիտի դիմաւորի մօտեցող ձմրանը, որն ահա այն սարերի կատարներից իր ցուրտ, սպանիչ հայեացքն ուղղել է այս խեղճերի վրա, ինչպէս որսը դիտող գազանը։ Հարստութիւնից մինչեւ մուրացկանութիւնը մի քայլ է միայն եւ այդ ճակատագրական քայլն արել էր այդ շարքը. նա համոզուած էր, որ ինքը միմիայն մուրալ կարող է, ուրիշ հնար չունի։ Մուրա՜լ... ի՞նչ հեշտ է ասել. սայլի վրա դողդո-

գացող այն քաղցած, կիսամերկ Թուրքը չի մուրում, նա իր արդար քրտնքի արդիւնքն է վաճառում, այն մաղեր և զամբիւղներ վաճառող բօշաներն էլ չեն մուրում, իրանց ձեռագործն են հրապարակ բերել, մինչև իսկ անասունից ոչնչով չը զանազանուող այն գնչուների խումբն էլ այսօր գաղթականի նախանձն էր շարժում, նա էլ էր ապրանք վաճառում, նա էլ էր փող աշխատում: Հապա այն ծոյլ վայրենի՞ն, այն աւազակ քո՞ւրդը, որ երբեք աշխատել չը գիտէ, բայց երբեք էլ չի մուրում. Նա էլ է հպարտ-հպարտ վաճառանոց բերել «իր» ապրանքը: Ոչ ոք չի մուրում, ամենքը փաստակ ունեն, ապրուստի ճար, հնար ունեն, մտածում էին շարքի խեղճերը: Ինչո՞ւ միայն իրանք պիտի մուրան, ինչո՞ւ միայն իրանք են զրկուած պատուաւոր կերպով ապրուստ հայթայթելու միջոցներից: Այդ հարցերի մասին նրանք երկար փսփսացին, երկար խօսեցին, բայց ո՛չ մի ուրիշ պատասխան գտնել չը կարողացան բացի այն, որ դա նրանց բ ա ղ դ ն է, նրանց ճ ա կ ա տ ա գ ի ր ն է. Աստուած է այդպէս կամեցել, ուրիշ ճար չը կայ: Ճակատագրական այս եզրակացութեանը հետևեցին զանազան կողմերից լսուող հառաչանքի ձայներ, և ապա մի երկար յուսահատական «ո՜խ» անցաւ շարքի մի ծայրից միւս ծայրը: Մռայլ,

կնճռուած ճակատները ասես քաշ ընկան ճնշող մտքերի ծանրութիւնի՛ց, յօնքերը կիտուեցին, ջլուտ ձեռները իրար հետ փակուեցին և մի առժամանակ լռութիւն տիրեց և ապա կրկին սկսեցին խօսել իրանց սև օրի՛ց, իրանց «օլուղ չօջուղի» սովածութիւնից, իրանց անծայր խեղճութիւնից:

Սկզբից մինչև վերջը լուռ էր միայն նրանցից մէկը, այն թխադէմ մազոտ մարդը, որ շարքի բոլորովին վերջումն էր նստած: Նա իր կեանքի վերջալուսին մօտեցած մի ծերունի էր. այդ վկայում էին նրա բոլորովին ճերմակ միրուքն ու մազերը. նա միջահասակ էր, նիհար, բայց ամուր մարմնակազմով, որ իր վրա կրում էր դեռ անցեալ զօրութեան հետքերը: Մռայլ և կնձռուած դէմքի վրա ամենից աւելի աչքի ընկնողը նրա չափազանց խիտ և հաստ սպիտակ յօնքերն էին, որոնց հովանու տակ վառւում էին մի զոյգ խոր ընկած, բայց խիստ աչքեր. չը նայելով իր խղճուկ արտաքինին, այդ մարդու հայեացքը չափազանց յանդուգն և վճռական էր: Թանձր, երկար ճերմակ միրուքը, որ ծածկում էր նրա թաւամազ կուրծքը, սկսւում էր հէնց աչքերի տակից՝ տալով նրա դէմքին մի վայրենի կենդանու մռայլ տեսք: Նրա դէմքը մի այնպիսի արտայայտութիւն ունէր, որ կարծես

ստեղծուած էր կատաղի բարկութեան, մռայլի, տխրութեան համար և չը գիտէր, թէ ինչ ասել է ժպիտ ու խնդութիւն. Նա խաւար, ամպամած երկինք էր յիշեցնում, որ այնպէս հաշտ է շանթ ու կայծակների հետ։

Նա Ս..-եցի գաղթական էր. հարևանները նրան աւչի Ղզրօ էին կանչում, որովհետև նա իրանց գիւղի մի հատիկ որսորդն էր։ Ղզրօն նստած էր, իսկ նրա պատառոտուած վերնազգեստի փէշով փաթաթուած, մի կողմում կծկուած էր նրա եօթ տարեկան թոռը՝ փոքրիկ Թումօն, մի տխուր, մռայլ երեխայ։ Այս էր դաժանատեսիլ որսորդի ամբողջ ընտանիքը։ Նա ունեցել էր նաև ուրիշ հարազատներ, բայց նրանք այլ ևս չը կային։ Ղզրօն երբէք չէր խօսում նրանց մասին. մարդկային ոչ մի ոյժ չէր կարող նրան ստիպել, որ պատմի, թէ ուր են մնացել զաւակները, իր հարազատները։ Արեան մի զարհուրելի քօղ ծածկում էր նրա սիրելիների պատմութիւնը և Ղզրօն չէր կարողանում յետ քաշել այդ քօղը, —այդ նրա ոյժից վեր էր։ Օտարի թշուառութիւնը հեշտ է պատմւում. Ղզրօի հարևանները, համագիւղացիները պատմում էին նրա ընտանիքի անցքերը, պատմում էին մի արիւնոտ գործի մանրամասնութիւններ, բայց միշտ ծածուկ, միշտ զգուշութեամբ, այնպէս

որ Ղզրօն երբէք չիմանայ, թէ իր գաղանիքը տարածւում է աշխարհում:

Իր արտաքինի նման մի մռայլ, դաժան հոգի էր բնակւում այդ մարդու մէջ: Ասում էին, որ քառասուն և աւելի տարիներ նա ոտի տակ է տուել իր հայրենի երկրի լեռները, ձորերը, ծմակներն ու դաշտերը. Նրա մազերը սպիտակել էին արիւն թափելով: Ահաւոր ժայռերի, մենաւոր, խուլ ձորերի մէջ արջերի, գայլերի և այլ գազանների հետ մղած բազմաթիւ կռիւները այդ մարդուն տուել էին գազանի սրտոտութիւն. նա չը գիտէր, ինչ ասել է վախ, զգուշութիւն. Նրա համար տարին՝ եղանակների փոփոխութիւն, և օրը՝ գիշեր ու ցերեկ, ցուրտ ու խաւար չունէր: Տարուայ ամեն մի եղանակում շաբաթներով դրսում, դաշտում, ձորում գիշերելը նրա համար ամենասովորական բան էր. բնութեան խստութիւնները նա տանում էր այնպիսի անհոգութեամբ և անտարբերութեամբ, ինչպէս իր սիրած լեռների ժայռերը, որոնց մրրկածեծ կուրծքերը միշտ բաց են խռոված երկնքի ամպրոպների առաջ: Գիւղում, իր տանը, ուր նա խիստ սակաւ էր երևում, սովորաբար նա մի՛շտ մռայլ էր, մի՛շտ դաժան: Գիւղում դեռ ոչ ոք նրա ժպիտը չէր տեսել. ասում էին միայն, որ նա էլ ժպտալու ժա-

մանակ ունի, որ նրա մռայլոտ դէմքն էլ երբեմն ցնծութեան արտայայտութիւն է ստանում, որ նրա շրթունքների վրայից էլ ժպիտը երկչոտ կերպով սահում է և անցնում, բայց այն ժամանակ միայն, երբ քարափի գլխին իր ձեռքով գնդակահար եղած գայլը, արջը կամ աղուէսը գլխի վրա պտոյտներ գործելով՝ արնաթաթախ ընկնում էր նրա ոտների տակ. Ղըրօն այդ ժամին նայում էր իր որսին և ժպտում այնպէս, ինչպէս ամպամած երկինքը սիրում է երբեմն իր մի պատառուածքից ցոյց տալ արևի ժպիտը:

Ղըրօն վայրենի լեռների նոյնքան վայրենի զաւակն էր. նրա մէջ ապրում էր բնութեան այդ հսկաների անընկճելի, դաժան ոգին. նա մարդկային հասարակութեանը չէր պատկանում և կարծես թէ խառնուել էր լեռների վայրենի բնակիչների մեծ ընտանիքին և նրանց պէս նա էլ էր սիրում սպանութիւն, նա էլ էր սիրում արիւն: Շաբաթ չէր անցնի, որ աչքի Ղըրօն մի որ և է սպանած կենդանու արիւնաթաթախ դիակ ուսին գցած գիւղը չը մտնէր: Դուրս էին թափւում տներից գիւղի բնակիչները՝ մեծ ու փոքր, մարդ ու կին, մանր երեխաներ՝ տեսնելու Ղըրօի նոր որսը և նրա յաղթական մուտքը: Այդ ժամանակ անցնում էր գիւղի փողոցներով այդ

մռայլ մարդը առանց իրան ուղեկցող բազմութեանը նայելու և իր որսը տանում էր կամ իրանց տունը, կամ տէրտէրենց տունը և այդ դէպքում չէր մոռանում Աստուծոյ պաշտօնեայից թողութիւն խնդրել իր թափած արեան համար։ Մի երկու օրից յետոյ Ղզրօն կրկին անյայտանում էր։

Մի անգամ էլ Ղզրօն գիւղ մտաւ մի անօրինակ, մի զարհուրելի որս ուսին դցած։ Դա ո՛չ այծեամ էր և ո՛չ վայրի գազան, այլ մի սպանուած երիտասարդի արիւնաթաթախ դիակ։ Այդ օրը Ղզրօն ժպտում էր մի սպանիչ, մի զարհուրելի ժպիտով և աչքերը գետին չէր գցել, բայց երևում էր, որ այս անգամ նա ընկճուած էր իր բեռի ծանրութեան տակ. Նրա գնացքը իր նախկին խրոխտութիւնը չունէր։ Բազմութիւնը չորս կողմից վրա վազեց։

— Հէ՛, ի՞նչ ժողնվաք, որոտաց նա, Ղզրօի աւ չէ՞ք տեսեր. էս էլ էլման աւ ի, եա՞, քըրդերու աւն ի, իմ նէձիր ջանավար ի, էնոնց նէձիր խայերն էն։

Բազմութիւնը սոսկման ճիչ արձակեց. այդ զարհուրելի մարդը այդքան անտարբերութեամբ իր միակ որդու արիւնաթաթաւ դիակն էր բերում դաշտից։ Տան հոգսը, դաշտային բոլոր աշխատանքները ծերունի որսորդը

վաղուց իր այդ որդու ուսին էր թողել. և այդ օրը դժբաղդ երիտասարդը դաշտում վար էր անում. քրդերը յարձակուել էին նրա վրա զոյգ եզները խլելու համար. բայց Ղզրօի որդին անմասն չէր հօր քաջութիւնից, նա հեշտութեամբ չէր ընկճուել և արիւնալի կռիւը վերջացել էր մի քրդի և Ղզրօի որդու մահուամբ: Եզները տարել էին: Որսից շատ ուշ վերադառնալով Ղզրօն իր սեփական արտի մէջ գտել էր որդու դիակը և այժմ բերում էր մի այնպիսի սառնասրտութեամբ, որ աւելի սոսկում էր պատճառում ամենքին, քան թէ արիւնաթաթախ դիակը: Նա հասաւ վերջապէս իրանց տունը, դիակը վար դրեց տան մէջ և մինչ ուրիշները ողբ ու կական բարձրացրին, ինքը նստեց նրա կողքին առանց մի կաթիլ արտասուքի: Երկար ժամանակ լուռ էր, ապա վերցրեց մեռած որդու ձեռքը, նայեց, նայեց և ասաց՝

— Չօ՜, ափօն հէյրան էսա ձեռիդ լաօ՛, էստօ՞վ սպանիր քրդուն.

Ծերունին իր ծանր վշտի մէջ մխիթարւում էր այն բանով, որ աւչի Ղզրօի որդին թանգ է ծախել իր կեանքը, առանց զոհ առնելու զոհ չէ տուել:

Անցան օրեր. Ղզրօն կրկին անյայտացաւ: Այս անգամ նա այլ ևս վայրի կենդանիներ

չէր ուսում․ Նրա զարհուրելի վրէժխնդրութիւնը բաւականութիւն էր պահանջում, նա իր որդու սպանողներին էր փնտրում։ Քիչ յետոյ յայտնի եղաւ, որ նա այս ու այն կիրճի առաջը փակելով, այս ու այն ժայռի տակ կծկուելով՝ վերջապէս աջողեցրել է սպանել մի քանի հոգի․ դրանցից մէկը իր իսկական արնպարտն է եղել։ Ղզրօն իր այրած սիրտը հովացնելու համար՝ այս վերջինի արիւնից մի բուռն խմելուց յետոյ վերադարձաւ գիւղ։ Այստեղ բաղդը նրան առաջինից աւելի մեծ փորձութիւն էր պատրաստել․ Նրա բացակայութեան ժամանակ Ա... գիւղը քրդական մի կատաղի հրոսակի յարձակման էր ենթարկուել․ շատ ուրիշների հետ Ղզրօի այրի հարսն ու աղջիկը գերի էին տարուել։ Այս սարսափելի անցքն իմանալով՝ ծերունի որսորդը մի առժամանակ քարացած մնաց, պարզ էր, որ իր ընտանեկան պատւի այդ աստիճան կոպիտ անարգանքը նրան շանթահարեց։ Նա զարհուրելի անցքի մանրամասնութիւնների մէջ չը մտաւ, միայն հարցրեց դէպքի ժամանակի մասին և իմացաւ, որ չարաբաստիկ օրից երկու շաբաթ է անցել։

Ղզրօն կրկին անյայտացաւ․ սգաւոր գիւղն այժմ բնազդով սպասում էր, որ նա մի անօրինակ, նոյն իսկ զարհուրելի գործ կը կատարի․

դրա հետ միասին ոչ ոք չէր հաւատում, թէ նա կարող է իր սիրելիներին յետ խլել և ի՞նչ միտք ունէր, երբ պատւի անարգանքը կատարուած էր արդէն, երբ անշուշտ գերի վարուած կանայք զոհ էին դարձել դահիճների պղծութեան. բայց ծեր որսորդը գնաց: Մի ամբողջ շաբաթ նա չը կար, և ահա մի օր յանկարծ նա երևաց գիւղում մէն միայնակ, ոչ ոք չիմացաւ, թէ նա ու՛ր էր գնացել և ի՛նչ է արել: Բայց գիւղ հասնելուն պէս նա մի այնպիսի գործ կատարեց, որ ամէնքը շուարած մնացին, իսկ աւելի շատերն սկսեցին կարծել, թէ ծերունին վշտից խելագարուել է: Եւ յիրաւի նա խելագարի արժանի գործ կատարեց. իր բոլոր ունեցած չունեցածը հաւաքեց, ածեց իր խրճթի մէջ և իր ձեռքով կրակ տուեց բոլորին: Որսորդի տունն ու ստացուածքը կորաւ բոցերի և ծխի մէջ, իսկ ինքը, այդ զարմանալի մարդը, փոքրիկ Թումօի ձեռքից բռնած անխօս կանգնած էր հրդեհի առաջ և շարունակում էր նետել նրա մէջ ինչ որ ձեռքն էր ընկնում. նա կանգնած մնաց, մինչև որ վառուեց վերջին գերանը, մոխիր դարձաւ վերջին չոփը: Այս խելագար գործը վերջացնելուց յետոյ, շալակեց իր թոռանը՝ որբ մնացած փոքրիկ Թումօին և առանց մի բառ արտասանելու դուրս

գնաց գիւղից։ Ոչ ոք չիմացաւ, թէ նա ուր գնաց. սակայն Ս... գիւղը շուտով իմացաւ, որ այդ քարասիրտ մարդը մի սոսկալի գործ է կատարել. իր խրճիթը կրակ տալուց առաջ նա գնացել, գտել էր իր առևանգած հարսին ու աղջկան և նրանց վիրաւորուած պատիւը փրկելու ուրիշ ոչ մի հնար չունենալով՝ իր ձեռքով սպանել էր երկու հարազատներին, որպէս զի վերցունէ աշխարհից նրա ընտանեկան պատուի անարգութեան այդ կենդանի վկաները։ Իմացուեց նոյնպէս, որ նա կրակ էր տուել իր խրճիթը բոլոր ունեցած չունեցածով, որ ոչինչ չընկնի ատելի քրդերի ձեռքը։ Այսպէս էր հեռացել Ղզրօն իր հայրենի գիւղից փոքրիկ Թումօի հետ։

Եւ այժմ այս տարօրինակ զոյգը թափառում էր աշխարհի երեսին անտուն, անապաստան։ Ղզրօն մուրում էր և Թումօին կերակրում. այդ վնաս չունէր, խեղճութիւնը միշտ սևերես է եղել, ծերունին իր վիճակի դառնութիւնը տանում էր անտրտունջ. բայց կար մի ուրիշ բան, որ կրծում էր նրա սիրտը, դալարում էր նրա աղիքները և առանց այն էլ նրա դաժան դէմքը դարձնում էր է՛լ աւելի մռայլ, է՛լ աւելի ահաւոր։ Նրան տանջում էր Թումօն, այդ խղճուկ որբը. Երբ Ղզրօն երկար նայում էր այդ մանկան մե՜ծ

կապոյտ աչքերին, երբ դիտում էր նրա քայլուածքը, այն ժամանակ նրա մարմնով մի սպանիչ սարսուռ էր անցնում, արիւնն ասես թէ կանգ էր առնում նրա երակների մէջ. փոքրիկ որբի աչքերը, հայեացքը, քայլուածքը այնքան յիշեցնում էին իր տարաբաղդ մօրը, որի անմեղ արեան մէջ թաթախել էր նա իր ձեռքը: Ճիշդ այդպէս նայեց թշուառ զոհը իր երեսին, երբ նա մահացու հարուածն իջեցնում էր նրա կոծքին: Ապա աղջիկը... Նախշուն Հէրիքը, որ իր առանձին սիրոյ, առանձին գգուանքի առարկան էր... Ո՞ր մէկին մոռանար Ղզրօն, ի՞նչպէս մոռանար: Ժամանակը ջնջել էր նրա մտքից իր կատարած այդ զարհուրելի, անսիրտ, արիւնոտ գործի արդարացուցիչ բարոյական պատճառները, նրա ճնշուած, շփոթուած միտքն այլ ևս չէր կարողանում հաշիւ տալ իրան, թէ ինքը մինչև ո՞ր աստիճան բարոյական իրաւունք ունէր թափել իր հարազատների արիւնը: Այն ժամանակ, ո՜, այն անէծքի արժանի ժամանակը, նա լաւ յիշում է, այդ բանը նրան բոլորովին բնական, բոլորովին հասկանալի, արդար, իրաւացի էր թւում, բայց այժմ... Իր բնտանիքի պատիւը այդքան անսիրտ, այդքան զարհուրելի միջոցով անարատ պահելու նախկին գիտակցութիւնը տեղի էր

տուել մի անսահման խղճահարութեան, որ անքուն որդնի պէս օր ու գիշեր անդադար կրծում էր նրա սիրտը, ճմլում աղիքները, այնպէս որ նա երբեմն սրտի անսահման ցաւից ծալում էր ձեռները, կծկւում, գալարւում էր, ինչպէս վիրաւոր օձ։ Աւելի սարսափելի էին նրա համար այս ու այն գոմում, այս ու այն անմարդաբնակ, չոր ընկած խրճիթում, կամ աւերակի մէջ անցրած գիշերները. իր զոհերի արիւնոտ ուրուականները հազար ու մի ձեւերով յայտնւում էին խաւարի մէջ, նիհար ջղուտ ձեռներով խեղդում էին նրա կոկորդը. զարհուրած ծերունին փակում էր աչքերը, աշխատելով չը տեսնել այդ ուրուականներին, բայց իզո՜ւր, նոյն իսկ խաւարի մէջ պարզ ծրագրւում էին նրանց վէրքերը, որոնցից ցայտում էր արիւնը, պարզ լսւում էր նրանց օրհասական խռխռոցը։ Օ՜, գոնէ այդ Թումոն չը լինէր, որպէս զի այլ եւս ոչինչ չը կապէր նրան այս անիրաւ աշխարհի հետ, այն ժամանակ նա շատ հեշտութեամբ վերջ կը տար իր զարհուրելի տանջանքներին. արիւն թափելու սովոր որսորդի ձեռքը մի վայրկեան անգամ չէր դողայ, նա հանգիստ սրտով կը կտրէր իր կոկորդը, և Աստուած իրաւունք չէր ունենայ նրանից հաշիւ պահանջելու ինքնասպանութեան համար, որովհետև նա

Ամենակալի աթոռի առաջ այնպիսի պատմու-
թիւններ կանէր, որ երկնայիների բնակա-
վայրը կը դողար, հրեշտակներն անգամ սուգ
կանէին, աստղերի փայլուն դէմքը կը մռայ-
լուէր. խե՜ղճ Ղզրօն ինչպէս տանէր այդքան
ցաւը։ Բայց Թումօն կայ, նա ապրում է, ո՞ւր
թողնել նրան, ո՞ւմ յանձնել այս անտէր, ան-
տիրական որբիկին։ Եւ Ղզրօն ապրում էր,
ապրում էր միայն և եթ իր Թումօի համար,
ուրիշների պէս նա էլ էր դռները թակում,
հացի փշրանքներ հաւաքում և կերակրում
Թումօյին։ Համարեա ո՛չ ոքի հետ չէր խօսում
Ղզրօն, նրա երեսին դեռ ոչ ոք ժպտի նման
մի բան չէր նշմարել. միշտ մռախոհ, միշտ
տխուր ու վշտաբեկ էր նա։ Շրջելու ժամա-
նակ նա երբէք չէր բարձրացնում իր ալեզարդ
գլուխը. նայողը կարող էր կարծել, թէ այդ
ծերունին մի խիստ թանգագին բան է կոր-
ցրել, որ անդադար փնտրում է։ Երբեմն-երբեմն
նրա շրթունքները ջղաձգաբար շարժւում,
քաշքշւում էին, կարծես թէ մի բան էր ա-
սում, խօսում էր մէկի հետ, բայց ոչ ոք չէր
կարող ասել, թէ ինքը երբ և իցէ լսել է, թէ
ի՞նչ է ասում նա։ Նրա միակ և անբաժան
ընկերը իր Թումօն էր, որին փայփայում էր
լռութեամբ, ձեռքից բռնած ման էր ածում,
պաշտպանում էր փողոցների շներից, և գի-

շերները իր վերնազգեստի ծուէնների մէջ փաթաթելով նրա փոքրիկ մարմինը՝ գրկում էր ու քնում իր որջի մէջ: Զարմանալի էր նաև այդ փոքրիկ երեխան. նա դեռ իր մանկութիւնը չանցրած ծերացել էր արդէն: Դաժան, մռայլոտ պապի յարատև թախիծն էր պատճառ, թէ՞ իր ծնողներից այդքան վաղաժամ և այդպէս եղերական ձևով զրկուելու բնազդը, այդ յայտնի չէր, բայց մանուկը նոյնպէս տըխուր էր, նոյնպէս մռայլ ու լռակեաց, որպէս իր պապը: Նրանք շատ քիչ էին խօսում իրար հետ, բայց լռութեամբ հասկանում էին իրար. ոչ մէկին չէր զարմացնում միւսի դէմքի տխուր արտայայտութիւնը. մշտական թախիծն ու տրտմութիւնը նրանց հետ եղբայր էին դարձել և ընդհակառակը նրանցից ամէն մէկը կապշէր, եթէ միւսի դէմքի վրա յանկարծ ժպիտ նշմարէր:

Ամէնքի հետ միասին այսօր Ըզրօն էլ էր նստել շուկայի արևոտ պատի տակ և հակառակ իր մշտական սովորութեան գետնին չէր նայում—նրա հայեացքն ուղղուած էր դէպի այն քրդերի եզների նախիրը: Նա նայում էր դէպի այն կողմը անվերջ, առանց ձանձրանալու, առանց յոգնելու, անթարթ աչքերով, որոնք այսօր թէև ճերմակ յօնքերի տակից էլ աւելի դաժան, էլ աւելի մռայլ էին երևում:

Ի՞նչ էր որոնում նա այն կողմում, ի՞նչ էր մտածում: Կամաց-կամաց նրա աչքերը սկսեցին թացանալ և այդ մարդը, որ իր միակ որդու արիւնաթաթախ դիակը շալակել բերել էր դաշտից առանց մի կաթիլ արտասուք թափելու, որ իր հարազատներին իր ձեռքով խողխողել էր դժոխային սառնասրտութեամբ, որին ծանօթ չէր սրտի թուլութիւն, լաց, արտասուք,—այդ երկաթէ մարդը գուցէ իր կեանքում առաջին անգամ արտասուել սկսեց: Խոշոր էին արտասուքի կաթիլներն այս անգամ, նրանք թափւում էին առատ, անընդհատ, ասես թէ մի անսպառ աղբիւրից: Կարծես թէ տարիներից ի վեր մթերուած այդ հեղուկը այսօր առաջին անգամ քանդել էր իր պատուարը և անարգել թափւում էր ներքև, թրջելով նրա թանձր միրուքն ու կուրծքը: Պապի արտասուքները տեսաւ Թումօն և առանց պատճառն իմանալու ինքն էլ արտասուել սկսեց. քիչ յետոյ նա էլ իր հայեացքն ուղղեց դէպի այն կողմը, ուր պապն էր նայում: Ի՞նչ կար այնտեղ, ինչո՞ւ էր արտասւում Ղզրօն:

Ծուկայում կեանքը շարունակւում էր եռդալ շատ բան վաճառուեց, գնուեց, վաճառուել էին նաև քրդերի եզները, բացի մէկից, որի համար խիստ մեծ գին էր պահանջում

տէրը։ Դա մի բարձր, հաստավիզ, կարմրադոյն եզ էր. գեղեցիկ էր մանաւանդ նրա գլուխը. երկու սուր եղջիւրները աղեղնաձեւ կորացել էին դէպի գլխի վերի մասը, իսկ լայն ճակատի հէնց կենտրոնում մի մեծ սպիտակ բիծ ունէր, որ մի առանձին շքեղութիւն էր տալիս նրա գլխին։ Ահա այս եզանն էր նայում Ղզրօն և կարծես թէ այդ կենդանին էլ իր մեծ աչքերը ուղղել էր յատկապէս Ղզրօի վրա։ Նայում էին իրար այդ կենդանին և այդ մարդը, նայում էին յամառութեամբ, առանց յոգնելու և ասես թէ լուռ խօսում էին իրար հետ, բաներ էին պատմում և հասկանում իրար։ Ի՞նչ էին խօսում նրանք, ո՞վ կարող էր իմանալ, ո՞վ էր ուշադրութիւն դարձնում նրանց վրա, ո՞վ կարող էր կարծել անգամ, թէ մի անասունի և մարդու մէջ մտքերի փոխանակութիւնը հնարաւոր է։ Բայց այդ երկու էակները շարունակում էին նայել իրար, նըրանց հայեացքների միջոցով կարծես էլեքտրական հոսանք էր հաղորդւում. մարդն արտասւում էր, իսկ եզը կարծես դիտում էր այդ արտասուքները. երկար շարունակուեց այդ տեսարանը։ Յանկարծ փոքրիկ Թումօի դէմքի վրա անսահման բերկրութիւն փայլեց. նա սաստիկ զարմացած ու յուզուած իր նիհար մատը դէպի եզը մեկնեց ու բացականչեց.

— Բաշո՛ն, պապէ՜, մեր Բաշոն...*):

Եւ առանց իր պապի պատասխանին սպասելու, երեխան ցած թռաւ պատշգամբից, եզանը հասաւ, անսահման երջանկութեամբ գրկեց նրա գլուխը և սկսեց իր մանկական շրթունքներով անվերջ, տաք համբոյրներ տալ նրա դնչին, ճակատին։ Կենդանին գլուխը քաշ էր գցել, դունչը չէր հեռացնում երեխայի կրծքից, ասես թէ նրան հաճելի էր երկար մնալ այդ վիճակում. նրա մեծ աչքերը կարծես ասում էին «ի՜նչ լաւ է, ի՜նչ դուրեկան է այսպէս մնալ։» Բայց երեխան թողեց նրան, կրկին յետ եկաւ և կարծելով՝ թէ իր պապը չի հասկացել բանի էութիւնը, չի իմացել, որ ինքը գտել է իրանց Բաշօին, բռնեց նրա ուսից, ցնցեց և ձեռքը դէպի եզը մեկնելով՝ յուզուած, շնչակտուր գոչեց.

— Պապէ՛, ա՛յ պապէ՛, էսա մեր Բաշօն ի, վա՛յ, եաման պապէ՛, էմալ չի՞:

— Խա, քե մեռնի՛մ, մեր Բաշօն ի, պատասխանեց Ղզրօն արտասուքից խեղդուելով՝ բայց առանց տեղից վեր կենալու։ Այս անգամ նրան նայեցին շատերը հարևաններից, իր արտասուքն այլ ևս ծածկել չէր կարող,

---

*) Հայ գիւղերում բաշօ են կոչւում ճակատներին սպիտակ բիծ ունեցող անասունները։

ուսուի քաշեց իր ցնցոտիների մի ծուէնը և նրանով սրբեց աչքերը. մինչդեռ երեխան պատասխանով քաջալերուած կրկին ցած Թռաւ պատշգամբից, շտապով վազեց հասաւ եզանը, գրկեց նրա գլուխը, շոյեց, համբուրեց և ի վերջոյ ականջից բռնելով՝ քաշ տուեց դէպի պատշգամբը, դէպի արտասուող պապը:

Ահագին կենդանին զարմանալի հնազանդութեամբ սկսեց քայլել այդ փոքրիկի յետևից հանդիսաւոր դանդաղութեամբ: Մինչև այդ ժամանակ այդ բոլորը կատարեալ անտարբերութեամբ դիտող քիւրդը յանկարծ առաջացաւ դէպի «իր» եզը, իսկ այս ու այն կողմից հետաքրքիր բազմութիւն հաւաքուեց և շրջապատեց եզանը, երեխային ու քրդին:

— Դէն, դէն, ճամպայ տուէ՛ք, ճվւում էր Թումօն, մերն ի, Թորգէք տանեմ, մեր Բաշօն ի, մատաղ էղնիմ Բաշօին:

Եզը շարունակում էր գնալ. քիւրդը նրանց առաջը փակեց:

— Ի՞նչ ես անում, տղա՛, ասաց նա, Թող տուր, ո՞ւր ես տանում իմ եզը:

— Մերն ի, մեր Բաշօն ի, քեզ ի՞նչ, կը տանեմ, պատասխանեց Թումօն, աշխատելով առաջ գնալ:

— Ձերը չի, մեռնեմ քեզ, ասաց քիւրդը

քաղցրութեամբ, խմն է, մատաղ, թող տուր, մի տար։

— Պապէ ջան, այ պապէ՛, ճչաց երեխան բարկացած ու լացակումած, բայց առանց թողնելու եզան ականջը, քիւրդը չէ թորգում Բաշօն բերեմ էէ՞...

Ղզրօի ձայնը չը լսուեց, նա չէր էլ երեւում, որովհետեւ շրջանաձեւ բոլորած բազմութեան յետեւումն էր մնացել իր տեղում նստած։ Նա չէր կարողանում տեսնել, թէ ի՞նչ է կատարւում այնտեղ, միայն լսում էր իր Թումօի յուսահատ մանկական աղաղակները։

Քիւրդը տեսաւ, որ գործը քանի գնում մեծանում է. նա ժանրակշիռ առիթներ ունէր այդ հանգամանքից վախենալու. նա լաւ հասկանում էր, որ այդ փոքրիկը չի սխալւում. այդ եզը՝ Բաշօն, այն երկրից էր բերուել, որ իր արիւնածարաւ եղբայրների ձեռքով մոխրակոյտերի էր վերածուել, ուր մարդիկ իրանց բոլոր ստացուածքը, բոլոր ունեցած չունեցածը տալով հանդերձ մի ստրկական կեանք վարելու իրաւունք անգամ ձեռք բերել չէին կարողացել և փախել էին այնտեղից առանց յետ նայելու։ Եւ մի՞թէ չէր կարող պատահել, որ այս եզը հէնց այստեղ նստած գաղթականներից մէկին ու մէկին պատկանէր։ Այս մտքերը մի վայրկեանում անցան քրդի գլխից. նա

վճռեց խոյս տալ և այդ կասկածաւոր տեղից հեռացնել եզը, ուստի մօտեցաւ, որ կենդանու ականջը դուրս քաշի երեխայի ձեռքից. բայց նա կախուել էր իր բոլոր մանկական ուժով, չէր բաժանւում, ճչում էր.

— Մեր Բաշօն ի, չեմ տայ, պապէ՛, այ պապէ...

Քիւրդը վերջապէս տեսնելով, որ այդ փոքրիկից հեշտութեամբ ազատուելու ճար չը կայ, մինչդեռ շտապելն անհրաժեշտ է, թափով հրեց Թումօին եզան առաջից։ Երեխան ընկաւ և սկսեց աղիողորմ ձայնով արտասուել պոռալով. «Բաշօ՜ն, Բաշօ՜ն»։ Քիւրդը քշեց եզը։

Ղզրօն լսեց Թումօի աղիողորմ արտասուելու և հառաչանքի ձայնը. ապա տեսաւ թէ ինչպէս քիւրդը տանում է իր Բաշօին, այն եզը, որի հետ այնքան տարիներ վարել է իր արտերը, կրել է, ծեծել է իր ցորենը։ Բաշօն նրա ամբողջ գոմի զարդն էր, նրա սիրելին, նրա երկրորդ որդին, ա՜խ... Նրա համար սպանուեց իր ջահիլ ջիւան կտրիճը, իր մի հատիկ որդին։ Այսօր՝ երբ առաջին անգամ տեսաւ Բաշօին, նրան թուաց, թէ իր զաւակին է տեսնում, նրա աչքերին է նայում, նրա հետ է խօսում։ Ահա թէ ինչու արտասուքները թափուեցին նրա աչքերից, վաղո՜ւց կուտակուած արտասուքներ. ախր միշտն էլ մի

սահման ունի, որից այն կողմը տանել այլ ևս անհնարին է լինում նոյն իսկ ամենապինդ սրտերի համար։ Բաղդի բոլոր հարուածները մինչև այժմ հետզհետէ, կամաց կամաց էին թափուել նրա գլխին. նա իր չար ճակատագրի դառնութեան բաժակը միանգամից չէր խմել, այլ կաթիլ կաթիլ, ահա թէ ինչու նրա սիրտը չէր պատռուել վշտից, աչքերը չէին կուրացել արտասուքներից և նա կարողացել էր ապրել, կարողացել էր կրել անպատմելի ցաւերը։ Բայց այսօր... Օ՜, այս եղը, այդ անգութական Բաշօն, իր մէջ միացնելով Ղզրօի բոլոր թշուառութիւնները, միանգամից թափեց նրա առաջ վշտերի մի ծով, միանգամից բացեց դեռ նոր փակուած վէրքերը. սար լինէր կը փլէր, ժայռ լինէր կը հալուէր, Ղզրօի սիրտն ինչպէս դիմանար... Եւ նա արտասուեց, արտասուեց տաք, ախորժ արտասուքներով, որոնցից նրա կրակուած սիրտը հովանում էր, ուռած կուրծքը թեթևանում։ Արտասուելուց բացի ուրիշ ինչ կարող էր անել. աւելի լաւ կը լինէր բոլորովին չը տեսնէր Բաշօին և նա կը շտապէր հեռանալ, եթէ կարողանար, եթէ ոտները չը դողդողային, չը ծալուէին. վկա՜յ է Աստուած, խօսք կը տար արտասուելով, որպէս զի չը տեսնէ իր դժոխային ցաւերի այդ մարմնացումը, իր Բաշօին. ուրիշ ինչ անէր.

փորձէր քրդից խլել այդ մի հատիկ ե՞զը, այն բոլորից չետոյ մի ե՞զ... Ինչի՞ համար, ինչի՞ էր հարկաւոր. բայց Թումօն չի թողնում, տե՛ս, ի՞նչպէս է ճչում նա, ի՛նչպէս արտասւում է ողբալի ձայնով։ Օ՜, ինչ զոհեր էր բերել Ղզրօն միայն քիւրդ չը տեսնելու համար, ինչքա՜ն ճանապարհ էր կտրել, որքան սարեր ու ձորեր անցել իր այդ արիւնարբու Թշնամիներին այլ ևս երբեք չը պատահելու համար. բայց... դարձեալ քիւրդ...

Ղզրօն զգաց, թէ ինչպէս մի ինչ որ բան եռաց իր կրծքի մէջ, թէ ինչպէս մի զօրեղ հոսանք անցաւ նրա բոլոր ջղերի մէջ, շարժեց, ցնցեց, դողացրեց մարմինը, մկանունքները ձգձգուեցին և լայնացած, մեծացած աչքերը փառւեցին կատաղութեան կրակով. զայրոյթի՞ թէ վրէժխնդրութեան փոթորիկ էր այդ, որ անցաւ նրա ամբողջ մարմնով. նրա շնչառութիւնն ընդհատւում էր, արիւնն սկսեց աւելի և աւելի արագութեամբ շարժուել երակների մէջ, սրտի բաբախումը սաստկացաւ, ծեր որսորդի մէջ զարթնեց արիւն թափելու, սպանութիւն գործելու անյագ, անյաղթելի տենչը. Թումօն ճչում էր, հառաչում էր, և Ղզրօին թւաց, որ այդ քիւրդը, օ՜, դարձեալ քիւրդը, Թումօին էլ սպանեց, սպանեց օրը ցերեկով, շուկայի ահագին բազ-

մութեան մէջ. դէ քիւրդը, երբ սպանել կամենայ, ո՛ւմ կը նայի, ո՛ւմ կը հարցնի. քի՞չ այդպիսի դէպքեր են եղել այն «վերան» երկրում: Ղզրօն համոզուած էր նոյն իսկ, որ այդ անիծեալ քիւրդը այն ծխնոտ սարերի յետեւից յատկապէս դրա համար է վեր կացել եկել, յատկապէս Թումօին մորթելու համար է այստեղ հասել. այդ արդէն անտանելի էր. Ղզրօն յանկարծ ամեն բան մոռացաւ, այլ եւս ոչինչ չէր յիշում, ոչինչ չէր տեսնում, չը գիտէր, թէ ո՛ւր է գտնւում. մի հատիկ միայն գիտակցութիւն մնաց նրա գլխում, այդ այն էր, թէ անմիջապէս պէտք է այդ զարհուրելի քրդի կոկորդը կտրել, ինչով և լինի: Եւ ահա նա կատաղած վեր ցատկեց տեղից, մի ակնթարթում պատռեց ամբոխի շղթան, հասաւ քրդին, և բազմութիւնը միայն այն ժամանակ տեսաւ Ղզրօին, երբ նա երկու ձեռքով գրկած յաղթանդամ քրդի իրանը, գազանի կատաղութեամբ կրծում էր իր ախոյեանի կոկորդը: Ամբոխը սոսկման ճիչ արձակեց. դա կռիւ չէր, այլ մի ուրիշ զարհուրելի բան. միայն կատաղած էգ վագրը կարող էր այդպէս կրծել իր ձագուկների թշնամու կոկորդը: Քիւրդը ցաւից ոռնում էր, ճիգ էր գործ դնում դուրս պրծնել կատաղի որսորդի ձեռներից, ձգձգւում էր, ոլորւում, կուչ գալիս, կամ հարուածում Ղզր-

բօխն, փետում նրա մազերը, բայց իզո՜ւր. այդ վոխտ, ջարդուած ծերունին մի կատաղած առիւծ էր դարձել. նրա ջլուտ, չորացած ձեռները մի երկաթեայ օղակ էին կազմել, որ վայրկեան առ վայրկեան սղմւում, նեղանում էր և նրա միջից դուրս պրծնելու ասես ոչ մի հնար չը կար։ Ղզրօն ոչ մի բառ չէր արտասանում, նա միայն խռպոտ մռնչիւններ էր արձակում և կարծես ուխտել էր քրդի ահագին մարմնի բոլոր կենսական հիւթը, բոլոր արիւնը ծծելով դուրս քաշեց կոկորդից, մինչդեռ փոքրիկ Թումօն պապի փէշերից քաշ ընկած ճչում էր, արտասւում էր աղէկտուր ձայնով։ Եւ այս բոլորն այնքան արագ կատարուեց, որ բազմութիւնն սկզբում շուարած մնաց, շուկայում առևտուրը դադարեց, ամէնքը դէպի այդ զարհուրելի տեսարանը վազեցին և մինչև որ մարդիկ կը կարողանային հաշւի առնել կատարուող իրողութիւնը, կը հասկանային բանի էութիւնը, քրդի վիճակը յուսահատական դարձաւ, նրա կոկորդից զզուելի արիւնը դուրս ցայտեց և կարմիր գոյնով ներկեց երկուսի կուրծքը։

— Օգնեցէ՜ք, հառաչում էր քիւրդը, մեռա՜յ, օգնեցէ՜ք։

Յիրաւի, նա մօտ էր ուժասպառ լինելու։ Այդ նկատեցին համարեա ամէնքը և բազմու-

*թիւնից մի քանի ձեռներ միանգամից մե-
կնուեցին դէպի երկու ախոյեաններր նրանց
իրարից բաժանելու համար։ Բայց այդ այն-
քան էլ հեշտ չէր։ Ծեր որսորդի մէջ գլուխ
էր բարձրացրել նրա ներսում քնած գազանը.
վաղուց հետէ նրա սրտում մթերուած վրէժ-
խնդրութեան թոյնը դուրս էր թափւում մի-
անգամից. կատաղած Ղզրօն տզրուկի պէս
կպել էր հսկայ քրդի կրծքին, համարեա
ծածկուել էր նրա գրկի մէջ և ոչ իր թշնա-
մու երկար ձեռների հարուածները, որոնք
անընդհատ վերևից թափւում էին նրա գըլ-
խին, ոչ այս ու այն կողմից քաշքշող ձեռները
չէին կարողանում ազատել քրդին նրա ձեռքից։*

*— Վայ մեռայ, ոռնում էր քիւրդը, օգ-
նեցէ՜ք։*

*Սակայն իզո՜ւր. Ղզրօն ահաւոր մռնչիւններ
արձակելով՝ խեղդում էր քրդին, որ վերջի-
վերջոյ ուժասպառուած գետին փռուեց և
Ղզրօն էլ վրան ընկաւ։ Հէնց այդ ժամին վրա
հասաւ ոստիկանը և հազիւ կարելի եղաւ Ղըզ-
րօին վերցնել և զոհին խլել նրա ձեռքից։ Արիւ-
նաթաթախ քրդին ոտքի կանգնեցրին. նրա
կոկորդի վրա խոշոր վէրք էր բացուած և ա-
րիւնն առատութեամբ հոսում էր։ Սոսկալի
էր նաև Ղզրօի տեսքը. նա շնչասպառւում,
հեւում էր. լայնացած քթածակերը քիչ էր*

մնում տրաքուէին, բորբոքուած, արիւնով լցուած աչքերը քիչ էր մնում դուրս թռչէին իրանց խորշերից, մազերը խռիւ, իսկ շըրթունքներն ու երկար ճերմակ միրուքը ներկուած էր բոսորային հեղուկով. այդ րոպէին նա նմանում էր մի արիւնարբու գազանի, որ հէնց նոր պատռել, լափել էր իր որսը։

— Օ՜, անօրէններ, հառաչում էր նա, էսա երկրի մէջ էլ չը խլանք ձեր ձեռէն. սարեր չափինք, ձորեր ընդանք, խեղճ ու կրակ մեր ճժերու խէտ էլանք էկանք, զըմմէն լէ ձե թորգինք, էլմա՞ն չը պրծանք, էլ դո՞ր էրթանք, դո՞ր թաղենք մեր սեւաւոր գլօխներ, դո՞ր...

Ոստիկանը մօտեցաւ նրան, ուսը բռնեց ասելով՝

— Դէ՛հ, ծերունի, գնանք, արի իմ յետեւից։

Ղզրօն զարմացած ու ապուշ կտրած նայեց ոստիկանին, առանց բան հասկանալու, վերջինս կրկնեց իր հրամանը։

— Եա՛, դու ի՞նչ կուզես, դո՞ր էլթանք, հարցրեց Ղզրօն։

— Բանտ։

— Ինչի՞ համար։

— Արիւն ես թափել, տե՛ս, արիւն թափեցիր, աւելացրեց ոստիկանը դէպի վիրաւոր քիւրդը ձեռք մեկնելով։

— Խայեր լսա՞ք, քրդու արունն եմ թափեր, քրդու արո՜ւն... ասաց Ղզրօն և երկար ու ջղաձգաբար ծիծաղեց խելագարի ծիծաղով։—Քրդի արունը թանգ ի, խա՛, խա՛, ես գինամ, գինամ, էսա երկրի մէջ շան արունն էլ թանգ ի, շարունակում էր Ղզրօն։

— Գնա՛նք, կրկնեց ձանձրացած ոստիկանը, ընդհատելով նրա խօսքերը։

— Էթանք, էթանք, թախսիրքեարեմ, սուչ ունեմ, էթանք հաֆս, աղա՛. ես արունք էրի, քրդի գեօզալ ջանէն արուն խանի։ Հէ աղա՛ ջան, քո ռտաց մեռնիմ, ապա էնա վէրան երկրի մէջ բսկի մէկ չը խարցուց, ո՞ն մոլթեց մեր ճժեր, եսիր տարաւ մեր օղլուշաղ, ո՞ն քանդեց մեր գեղեր, կրակեց մեր տներ, դէզեր, արտեր, տօ, զըմմէն էսա արնխում շներ արին էէ... Տօ էնա իմ եղն ի, վա՜խ, իմ խորոտ Բաշօն ի, իմ տղէն էնոր մատաղ էլաւ, քե մեռնիմ. դէ ես ի՞նչղ էնիմ, ո՞ր ջուրն ընկնիմ։ Շէն մնա ձեր երկիր, էսա տեղ քրդու էրկու պուտ արունն էլ թանգ ի, հա՜յհո՜ւ... Խայեր, էլ ընչի խամար կապրէք, դէ թորգ ծովեր դան զըմմէննուս ծածկեն, թորգ սարեր փլեն վըր մեր կօախն, արնի ակլափ մեր երկիր բռնեց, չօլեր, ձորեր, դաշտեր զըմմէն կուփ արուն կտրեց. ո՞րն ասաց խայլի արուն թանգ ի։ Էթանք, աղա՛, էթանք, թախսիրքեարեմ,

խողն էսա սեւուր գլխուս—վերջացրեց նա, երկու ձեռքով պինդ հարուածեց իր գլխին և ոստիկանի առաջն ընկնելով դէպի բանտ գնաց։

— Պապէ՛, դո՞ր կերթաս, քուրդն էլ ման Բաշօն տարաւ, գոռաց Թումօն դէպի պապը վազելով, երբ տեսաւ, որ քուրդն սկսեց քշել եզը։

— Թորդ լաօ, թորդ, ասաց Ղզրօն, Բաշօն մեր չի, քրդուն ի, թորդ տանի, քե մեռնիմ, մեր տուն լէ մերը չի, մեր արտ լէ մերը չի, մեր արուն լէ մերը չի, խայը բանըմ չունի, ըրմմէն լէ քրդուն ի, էնոր արունը թանգ ի։

Նա գնաց։

Թումօն արտասուելով՝ կրկին յետ դարձաւ և վազէվազ Բաշօին հասաւ. մէկ էլ փորձեց կախուել նրա ականջից, մէկ էլ «պապէ՛» գոռաց. բայց այս անգամ պապը նրան ուշք չէր դարձնում և առանց յետ նայելու քայլում էր։ Երեխան մղկտալով թողեց եզան ականջը, վազեց դէպի պապը, կախ ընկաւ նրա փէշից արտասուքի միջից պոռալով՝ «Բաշօ՛ն, պապէ՛, Բաշօ՛ն, պապէ՛»։ Եւ այսպէս երկար ժամանակ երեխան չէր իմանում, թէ երկու սիրելիներից որին առաւելութիւն տայ. նրա պապէն ու Բաշօն գնում էին զանազան կողմեր, նրանք այլ ևս ուշք չէին դարձնում այդ փոքրիկի անհագին վշտի վրա և աւելի ու աւելի հեռանում էին իրարից. մանուկը չէր իմա-

նում Բաշօ՞ի յետեւից վազի, որի՞ն քիւրդն էր տանում, Թէ՞ պապէի յետեւից, որի՞ն ոստիկանն էր տանում։ Էլի մի քանի անգամ նա շշկլուած վազեց դէպի Բաշօն, կրկին յետ դարձաւ դէպի հեռացող պապը, քաշ ընկաւ նրա փէշերից, աղաչելով՝ որ յետ դառնայ, Բաշօին խլի քըր-դից, ապա տեսնելով, որ պապը չի լսում ի-րան, Թափով յետ դարձաւ, վազեց դէպի եզը և առաջը կտրեց. բայց յանկարծ նկատեց, որ պապին ու Բաշօին բաժանող տարածութիւ-նը խիստ մեծացաւ, և պապն այլ ևս նրա ձայնն էլ լսել չի կարող, նա մի յուսահատա-կան ճիչ արձակեց, վերջնականապէս Թողեց Բաշօին, որ քուրդը տանի, իսկ ինքը յետ դառնալով՝ վազեց դէպի պապը, դէպի բանտը։ Բայց պապէն չը կար այլ ևս, նրան ներս էին տարել բանտը և դռները փակել էին... Իզո՜ւր էր մանուկը իր փոքրիկ բռունցքներով Թա-կում հաստ, երկաթապատ դուռը, որի յե-տեւում ծածկուած էր նրա պապէն, իզո՜ւր էր ճչում, աղեկտուր ձայնով արտասուում, ոտները գետին տալիս, դուռը չը բացուեց։ Յոգնած, ուժասպառ ու յուսահատ նա նստեց բանտի դռանը, փոքրիկ գլուխը ձեռների մէջ առաւ և սկսեց մեղմիկ արտասուել։

Նա այժմ կատարեալ որբ էր։

Ո՛չ պապէն կար, ո՛չ Բաշօն։

---

# ԶՆԴԱՆՈՒՄ

(ՅԻՇՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ).

---

«Ես բանտարկուած էի, 189... թ-ի ամառը. ինչպէս և ինչո՞ւ համար, այդ ես չը գիտէի, չը գիտեմ և այժմ, այդ բանն այնքան արագ, այնպէս անսպասելի կերպով կատարուեց, որ ես անկարող եղայ հասկանալ, թէ ինչ է կատարւում ինձ հետ։ Բայց ես բանտարկուած էի, այդ անկասկած էր, բոլորը, ինչ որ ինձ շըրջապատում էր, անողորմ կերպով վկայում էր, որ ես բանտարկուած էի։ Իսկապէս բանտ չէր այն, այլ մի՛ բուն. մեր երկրում նրան «զնդան» են անուանում։ Այդ զնդանը նեղլիկ էր ու ցածր, բայց այդ բառերով դժուար է արտայայտել, թէ՛ ո՛րքան ցածր էր նա։ Երբ ես փորձում էի ոտքի կանգնել, ստիպուած էի լինում կուանալ մինչև մէջքս, իսկ երբ կամենում էի պառկել, պէտք էր լինում մէջքս մի պատին

դէմ տալ և ոտներս հակառակ պատին ցից անել՝ կազմելով մի աղեղ։ Խաւար էր ներսը, համարեա գիշեր, լոյսի մի քանի խիստ աղօտ շիթեր ասես վախվախելով թափանցում էին դուան վրայի փոքրիկ, շատ փոքրիկ ճեղքից, որ հազիւ եղան աչքի մեծութիւն ունէր։ Այդքան չնչին լոյս գուցէ մեռելներն էլ իրանց գերեզմանում ունենան. վատատես չէի, այդքանով էլ կարողացայ պատերը նշմարել։ Ինչ գոյն ունէին նրանք, այդ դժուար էր որոշել, միայն ինձ թւում էր որ նրանց գոյնը և՛ սև էր, և՛ կանաչ, և՛ կարմիր, և՛ սպիտակ. քանի մի գոյների զզուելի խառնուրդ, տեղ-տեղ խոնաւութիւնից մամռակալած, բորբոսնած։ Պատերը ճեղքեր ունէին, մանր, հազիւ նկատելի ճեղքեր. դրանցից մինի մէջ ես կարողացայ նշմարել մի սպիտակ բան, և մատներով դուրս քաշեցի այն, դա լուցկու ամանի մի կտոր էր, որի վրա ինչ որ գրեր կային. ես հետաքրքրուեցի իմանալ, թէ ի՞նչ է կտակել իր տարաբաղդ յետնորդներին մի նախկին բանտարկեալ, որ այս դժոխքից գուցէ կախաղան է առաջնորդուել կամ աքսորավայր... Բարեբաղդաբար լուցկի կար մօտս։ Լուցկին վառեցի. «ո՛վ և լինես դու, իմ խեղճ բաղդակից և յաջորդ, գրած էր այնտեղ, ոչինչ չը խոստովանես, ո՛չ մի անուն չը տաս, եթէ գիտես. քաղցր

խօսքերով չը խաբուես, խոստովանութիւնը չի՛ փրկի քեզ»։ Հանգի՜ստ ոսկորներիդ, եթէ մեռած ես, մրմնջացի ես։ Ի՞նչ խորհրդաւոր դաս էր այդ, որ այս մահու աշխարհի բնակիչները տալիս էին իրանց յետնորդներին։

«Յատակի վրա նշմարեցի ինչ որ ծակեր․ միայն մկներն են այդպիսի ծակեր բաց անում, երևի այնտեղ ներքևում նրանց մի ամբողջ գիւղ կայ, մտածեցի ես։ Այս հանգամանքն ինձ ցաւ չը պատճառեց, նոյն իսկ մխիթարեց։ Բանտի, այն էլ այսպիսի բանտի ճնշող, սպանիչ միայնութեան մէջ որ և է կենդանու գոյութեան գիտակցութիւնը սփոփիչ է, փոյթ չէ նոյն իսկ, եթէ դա մի զզուելի մուկ լինի։ Ժամեր անցան, ծանր, յաւիտենականութեան չափ երկար ժամեր, թախիծը ճնշում էր հոգիս։ Ես՝ աչքերս ակամայ ուղղած յատակի ծակերին, ակնապիշ դիտում էի, սպասելով՝ որ գոնէ մկներից մէկն ու մէկը դուրս գայ․ միայն կենդանի շունչը կարող էր մի փոքր թեթևացնել իմ ծանր վիճակը, յիշեցնել ինձ, որ աշխարհը դեռ կայ, դեռ ապրում է, որ օր ու արև, աստղեր ու լուսին, երկինք ու երկիր անցած գնացած բաներ չեն, որ բնութեան կեանքը դեռ չի դադարել, շարունակւում է։

«Բանտ, ի՜նչ մօտ է զգում մարդ այդտեղից

գերեզմանը․ մի քայլ միայն, մի հատիկ քայլ է մինչև յաւիտենական բնակարանը․ և մի՞թէ նոյն իսկ այդ բանտը հէնց գերեզման չէր, ուր ես թաղուած էի կենդանի… Օդը զարհուրելի էր, այնպէս ծանր, որ անկարելի էր շնչել, գարշահոտութիւնն անտանելի էր․ մկներն իրանց ներկայութեամբ պատճառած մխիթարութիւնը շատ թանգ էին փոխառում բանտարկեալին․ գարշահոտութիւնը նրանց բացած անցքերից էր փչում, որովհետև հէնց բանտի տակից էր անցնում քաղաքի աղբատար խողովակը։

«Օրուայ ո՞ր ժամն էր, ես չը գիտէի․ կէսօ՞ր էր արդեօք, երեկո՞յ, թէ՞ գիշեր, բայց իմ զ ն դ ա ն ո ւ մ արդէն խաւար էր և լուռ, միայն պատի մի ճեղքում ճռճռացնում էր իր տխուր միակերպ երգը խաւարի և միայնութեան սիրահար ճպուռը։ Ես ականջ էի դընում․ «ճր՜րռ, ճր՜ռ»․ այդ էլ մի բան էր, այդ էլ սփոփիչ էր… Յանկարծ զգացի ձեռքիս վրա տաք, քնքոյշ շնչառութիւն։ Առանց այդ ձեռքս շարժելու, ես զգուշութեամբ մօտեցրի միւս ձեռքս և բռնեցի մի փափկիկ առարկայ․ դա մի մեծ մուկն էր, փափուկ թաւշանման մորթիով․ նա երկիւղի կամ անհանգստութեան ոչ մի ցոյց չարեց, այլ շարունակում էր լիզել ձեռքերս և ո՞վ գիտէ՝ քանի դժբաղդ-

ների արիւնոտ վէրքերն էր լիզել այս կենդանին... Նա կամաց-կամաց բարձրացաւ դէպի ուսս, նա խաղում էր մազերիս հետ, ես նրան չը քշեցի, չը հալածեցի, և իրաւունք էլ չունէի, նա իր սեփական բնակարանումն էր, նա այստեղ տէր էր, ես էի միայն անկոչ հիւրի պէս ներս եկել խռովելու նրա կեանքի միակերպութիւնը, խանգարելու նրա հանգիստը։ Ահա՛ նա վար իջաւ և հեռացաւ. ինձ վրա երևի ոչինչ ախորժելի բան չը գտաւ, արի՞ւն էր փնտրում, ո՞վ գիտէր... Նա ծածկուեց իր բնում, ես մնացի դարձեալ միայնակ. միայն ճպուռը անհասկանալի եռանդով շարունակում էր իր երգը՝ «ճ՜րռ, ճ՜րռ». միակերպ, միաձայն, ասես թէ վերջ առնելու չէր ողորմելի միջատի այս տխուր մեղեդին. ի՜նչ էր որոնում այդ խղճալի կենդանին այս զարհուրելի բնում. մի՞թէ ամբողջ աշխարհում մի այլ յարմարաւոր տեղ չէր գտել իր բնակութեան համար, ո՞վ կարող էր իմանալ. բայց ինձ թւում էր այդ րոպէին, որ ճպուռի երգի համար յիրաւի ամենայարմար տեղը հէնց այս բանտն էր. մահու մեղեդի մահու աշխարհում...

«Ահա նա էլ լռեց: Լուռ էր շուրջս, խո՜ր, ահաւոր լռութիւն, միայն դրսից լսւում էր պահապանի ոտնաձայնը, նա անվերջ գնում

գալիս էր խաւար միջանցքում, մերթ ընդ մերթ կանգ էր առնում, ականջ դնում և կրկին շարունակում գնալ գալ միշտ միակերպ, միշտ համաչափ քայլերով։

«Գուցէ կէս գիշերն անցած լինէր, բայց քունը շարունակում էր խուսափել իմ աչքերից, մարմնիս մի փոքր յարմար դրութիւն տալու բոլոր փորձերս անաջող անցան, ես անկարող եղայ նոյն իսկ խոնաւ գետնի վրա հանգիստ առնելու բարիքը վայելել։ Ստիպուած նստեցի և մտածում էի իմ դրութեան վրա, մտածում էի անվերջ... մտածելու էլ շատ և շա՜տ բան կար։ Ես ապշած էի մնացել, այն աստիճան այս կացութիւնս ինձ յանկարծակի եկաւ։—Մի՞թէ ես բանտարկուած եմ, մտածում էի ես. ինչո՞ւ, ո՞ր յանցանքիս համար. ես յանցանք չեմ գործել, ի՞նչպէս կարող եմ ես բանտարկուած լինել. մի՞թէ բոլորովին անմեղ մարդը այս ահաւոր զնդանի մէջ կը նետուի, այդ անհնարին է։ Աշխարհում օրէնք ու արդարութիւն չը կա՞յ այլեւս։ Մի՛ գուցէ այս բոլորը երազ է միայն, և՛ այս բանտը իր զզուելի պատերով, և՛ այս մկները, և՛ այս ճպուռն իր միաձայն տխուր մեղեդիով, բոլորը, բոլորը, գուցէ երազ են և ուրիշ ոչինչ։ Այո՛, ուրիշ կերպ չէր էլ կարող լինել, սա երա՛զ է, երա՛զ է...

«Երազ է, մրմնջում էի ես գոհունակութեամբ... տան մեր տունը, տան կինս, տան զաւակներս... խեղճե՜ր, ի՛նչ սարսափելի կը լինէր ձեր վիճակը, եթէ այս սարսափելի երազն իրականութիւն լինէր, եթէ չիրաւի ես բանտարկուած լինէի։ Վաղ առաւօտը ես անկողնից վեր կացայ, կինս ջուր տուեց ինձ լուացուելու, սա նրա ամենօրեայ պարտքն է, ապա բոլորեցինք թէյի սեղանի շուրջը. չարաճճի Հրաչեան անպատճառ ուզում է իմ ծնկան վրա նստած թէյ խմել, այս բանի դէմ բողոքում է ամենափոքրիկը, այն սեւաչեայ Շուշանիկը, որ թաթիկները մեկնած, մօր գրկից ձգւում է դէպի ինձ. ես նրան էլ եմ առնում և նստացնում միւս ծնկանս վրա, երկու փոքրիկ զանգուր գլխիկները ծածկւում են կրծքիս վրա. ես ժպտում եմ, նայում եմ ամուսնուս. նա էլ է ժպտում. ի՜նչ լաւ է, ի՜նչ քաղցր է. երջանիկ ենք մենք։

«Ճ՜րռռ» բացուեց դուռը. դա երեւի խանութի աշակերտն է, որ գալիս է բանալին տանի դուռը բանայ, մինչև իմ գնալը. ես յետ նայեցի դէպի դուռը, ծնկանս վրայից ցած սողաց փոքրիկ Շուշանիկը և վայր ընկաւ յատակի վրա, նա ճչաց ցաւից, ես նրա ձայնից վեր ցատկեցի, իմ առաջ կանգնած էր յամպը ձեռքին բռնած մի դաժան պատկեր,

մի դև։ Ո՞վ էր դա, ի՞նչ եղաւ խանութի շակերտը։ Աչքերս տրորում եմ, նայում, նայում, Տէր-Աստուած, սա թիւրք է, ի՞նչ է ուզում ինձանից, ինչո՞ւ է այսպէս վաղ առաւօտ ներս խցկուել մեր տունը. դարձեալ նայում եմ և չեմ կարողանում հասկանալ, թէ երկու պատկերներից ո՞րն է երազ. իմ տունն ու ընտանիքը, թէ՞ այս ներս մտնողը՝ իր դաժան զարհուրելի պատկերով. ո՞վ է սա…

— Վե՛ր կաց, բաւական է մրափես, գոչեց անծանօթ պատկերը և ոտքի մի ծանր հարուած հասցրեց կողքիս։ Ցաւը խիստ էր, քունս իսպառ փախաւ, ես ոտքի կանգնեցի, ամեն բան պարզուեց. իմ առաջ կանգնած էր ինքը բանտապետը և այս վերջին սարսափելի պատկերը անողորմ իրականութիւն էր, միայն այն՝ իմ երջանկութեան, իմ տան ու ընտանիքի պատկերն էր երազ, որ չքացաւ. տես թէ դառն ճակատագիրը ցոյց տուեց ինձ այդ մխիթարական երևոյթը, որպէս զի աւելի ծանր լինի իրականութեան պատճառած ցաւը…

— Հետևի՛ր ինձ, հրամայեց բանտապետը դուրս գալով դռնից. ես անխօս դուրս եկայ։ Դրսում, դռան առաջ մեզ սպասում էին երկու զինուորներ հրացաններն ուսներին. նրանք անցան իմ աջ ու ձախ կողմերը և մենք

առաջ շարժուեցինք. զինուորների հրացանների սուինները պարզ, սարսեցուցիչ փայլ էին արձակում բանտապետի լամպի աղօտ լոյսի տակ, որը քայլում էր իմ առջեւից: Մենք անցանք բաւական երկար, նեղ ինչպէս խողովակ միջանցքը, դուրս եկանք բակը: Չորս կողմերս խաւար էր և անմարդ. վերև նայեցի, երկինքն իր տեղում, աստղերն ամէն օրուայ պէս պլպլալով փայլում էին այնտեղ՝ կատարելով իրանց սովորական ընթացքը: Ես ագահութեամբ ծծում էի թարմ օդը. բակն ընդարձակ էր, գնում ենք գնում, վերջ չը կայ:

— Ո՞ւր էք տանում ինձ, հարցրի ես վերջապէս:

Դա մի սխալ էր իմ կողմից, լաւըն աւելի խոհեմութիւն էր, որովհետև պատասխանի փոխարէն ես թիկունքիս վրա մի սաստիկ հարուած զգացի, զինուորներից մէկը հրացանի կոթով վերջ դրեց իմ հետաքրքրութեանը:

— Գնա՛ առանց խօսելու, ասաց նա: Սակայն հարուածից յետոյ այդ հրամանն աւելորդ էր, ես այլ ևս խօսելու չէի, փորձը շատ դառն էր:

Ահա՛ վերջապէս մի երկար, ուղղաձիգ դրուած, նեղ, փլթած սանդուղք, որով վերին յարկն ենք բարձրանում. իւրաքանչիւր աստիճանը ճռճռում է մեր ոտների տակ, բայց

մենք բարձրանում ենք խարխափելով, ահա և երկրորդ յարկը. մի պատշգամբի վրա ենք, բանտապետը մի դուռ բացեց, ինձ ներս տարաւ: Նեղ, կիսախաւար ու երկար սենեակ էր այն, խիստ ցածր առաստաղով, որը սենեակին աւելի անախորժ, աւելի ճնշող տեսք էր տալիս: Սենեակի խորքում դրուած էր մի սեղան, որի վրա դրուած մոմը աղօտ, վախկոտ ճառագայթներ էր արձակում իր շուրջը՝ հազիւ լուսաւորելով մի փոքրիկ տարածութիւն և մի քանի անորոշ դէմքեր: Սեղանի ճակատին նստած էր մի դաժան, մռայլ պաշտօնեայ և թերթում էր ինչ որ թղթեր. նրա աջ և ձախ կողմերում կանգնած էին երկու ահաւոր մարդիկ՝ ունենալով ձեռքերին մի-մի հաստ պարան, ծայրերին երկաթէ հաստ գնդեր ամրացրած. Նստող պաշտօնեան ինձ տեսնելով՝ գլուխը բարձրացրեց, ձեռքով աչքերի վրա հովանի արաւ և սկսեց դիտել:

— Լսի՛ր, զաւակս, ասաց նա քաղցրութեամբ, յանցանքը գործելուց և բռնուելուց յետոյ, փրկութիւնը միմիայն խոստովանութիւնն է. քեզ ազատութիւն կը շնորհեմ, եթէ դու ինձ կը խոստովանես բոլոր քո արածները ամենայն անկեղծութեամբ, և մանաւանդ՝ կանուանես քո ընկերներին:

— Բայց ես ո՛չ մի յանցանք չունեմ, որ

խոստովանուեմ, ես նոյն իսկ չը գիտեմ, թէ ինչո՞ւ համար եմ բանտարկուած. աղաչում եմ, նախ դուք ասացէք ինձ, թէ ո՞րն է իմ յանցանքը:

— Դու լաւ գիտես.

— Ես ոչինչ չը գիտեմ:

— Ասա՛, շուտ, ո՞վքեր են ընկերներդ:

— Ես ընկերներ չունեմ:

— Չունե՞ս:

— Ո՛չ:

— «Հալա՛թ», գոռաց քննիչը ահաւոր ձայնով. ես սկզբում այդ բառի միտքը չը հասկացայ, բայց երբ երկու զինուած պահապանները երկաթածայր պարանները ձեռներին մօտեցան ինձ և կանգնեցին իմ աջ ու ձախ կողմերում, մինչդեռ միւս երկուսը բռնեցին ձեռներս, այն ժամանակ ես հասկացայ, որ խոստովանութիւն դուրս կորզելու համար ուզում են տանջել ինձ: Ես յիշեցի բանտի պատի մէջ դրուած լուցկու տուփի այն կտորը իր խորհրդաւոր բառերով: Այդ խօսքերը կատարելու ահաւոր ժամն էր, թոյլ մարմինս առաջիկայ տանջանքի երկիւղից դողում էր. գայթակղութիւնը շատ մեծ էր, բայց իւրաքանչիւր բառը սրտիս վրա էր փորագրուած, սարսափը նրանց ջնջել չէր կարող:

— Սկսեցէ՛ք, հրամայեց քննիչը: Ես տեսայ,

Թէ ինչպէս երկու պարանների հաստ գնդերը բարձրացան օդի մէջ, սպառնալից պտոյտ գործեցին գլխիս վերև. էլ այնուհետև չեմ յիշում, թէ ինչ կատարուեց, միայն գիտեմ, որ աչքերիցս կայծեր ցայտեցին, գլուխս պտըտուեց, սենեակը արագ շրջան կատարեց, մի մոմի և քնիչի փոխարէն վայրկեանապէս տասնեակները տեսայ, ականջներումս լսուեց ինչ որ աղմուկ և ես գետին փռուեցի բոլորովին անզգայ...

Երբ ես աչքերս բաց արի, ինձ բանտում գտայ. երևի ցերեկ էր, որովհետև պատերը որոշել կարողացայ: Շորերս բոլորովին թաց էին. ամբողջ մարմինս սաստիկ ցաւում էր. մի աչքս գոցուած էր, ոչինչ չէր տեսնում, դէմքիս կէսը անտանելի ցաւում էր. ես շօշափեցի, յօնքիս վրա մի մեծ ուռոյցք կար. ի՞նչ էր պատահել ինձ հետ, հասկանալ չէի կարողանում երկար ժամանակ. ինչո՞ւ էին թաց շորերս, ի՞նչ ցաւ, ի՞նչ յոգնածութիւն էր, որ պատել էր մարմինս, ի՞նչ ուռոյցք էր յօնքիս վրա և ես մտածում էի երկար... Դուռս թխկաց, ներս մտաւ բանտապետը. այդ դէմքը դարձեալ տեսել էի, անցեալ գիշերն էր. օ՜, ես յիշեցի բոլո՜րը, բոլո՜րը. խաւար գիշերը, հրացանի կոթի հարուածը, այն սարսափելի սենեակն իր նոյնքան սարսափելի մարդկան-

ցով, հարց ու փորձը, այն ահաւոր «հալաթ-ները», անողորմ ծեծը, որից յետոյ անշուշտ ես ուշաթափուել եմ, ջուր են ածել գլխիս, որ ուշքի գամ, երբ ջանքերն ապարդիւն են անցել, բերել են ձգել գնդանը՝ ապրելու կամ մեռնելու համար. բայց ես ապրում էի դեռ... Եւ այս զարհուրելի բանտապետը ինչ որ ուտելիք էր բերել ինձ՝ ողբալի կեանքս շարունակելու համար:

— Ա՛ռ, լակի՛ր, ասաց նա ցած դնելով մի կեղտոտ խեցատ՝ անտանելի հեղուկով լի, ուր վխտում էին մամուկների և այլ միջատների մարմինները:

Բանտապետը հեռացաւ, դուռը փակուեց: Վաղուց էր ինչ բան չէի կերել, քաղցս խիստ մեծ էր, բայց և այնպէս զգացի, որ անկարող եմ ուտել այդ զազրելի հեղուկը, եթէ նոյն իսկ սովամահ լինելու վտանգի մէջ լինեմ: Ի՞նչ պէտք էր անել. մէկ էլ կռացայ խեցատի վրա, մէկ էլ խառնեցի հեղուկը. մամուկները շատ էին, իզուր էր, պէտք էր մի ուրիշ ճար տեսնել: Յանկարծ յիշեցի, որ երբ ինձ բանտ էին առաջնորդում, մի քանի ոսկիներ վերցրի հետս, բայց մնացե՞լ էին արդեօք, թէ՞ զինուորները հանել են. նայեցի, մի բաղդ էր, դահիճներս մոռացել էին գրպաններս խառ-նել, դուռը թակեցի, բանտապետը մօտեցաւ:

— Լսի՛ր, բանտապետ, աղաչում եմ քեզ, ի սէր Աստուծոյ, ողորմած եղի՛ր, ես մեռնում եմ քաղցից, բայց այս հեղուկն ուտել չեմ կարող, գնի՛ր ինձ համար մի փոքր հաց ու պանիր:

— Բախշի՜շ, բացականչեց նա:

Ես տուի մի ոսկին, ուրիշ ճար չը կար. նա գնաց և քիչ յետոյ բերեց ինձ մի փոքր հաց ու պանիր և դուռն ծակից ներս դցեց. ես խարխափելով ճանկեցի յատակի վրայից և ագահութեամբ ուտել սկսեցի: Շուտով կշտացայ, մնացածը պահեցի գրպանումս՝ ուրիշ անգամ ուտելու համար: Յոգնած, ջարդուած մարմինս քնի անյաղթելի պահանջ ունէր տակաւին. Ծեծն այդ կողմից մի բարիք էր, ես քնում էի անվերջ՝ մոռանալով կացութեանս սարսափը: Դեռ հազիւ աչքերս փակուել էին, երբ գրպանիս մէջ ինչ որ կենդանու խշխշոցը ինձ զարթեցրեց: Այնտեղ մի մեծ մուկ կար, նա եկել էր գողանալու իմ պաշարը: Դժուար թէ աշխարհում երբ և իցէ որ և է աւելի անխիղճ գողութիւն կատարուած լինէր, քան այն, որ այս մուկն էր կամենում անել: Սա կատարեալ ոճրագործութիւն էր: Ես շտապեցի հալածել նրան և պանիրն ու հացը ծոցս դրի, պինդ փաթաթեցի. այժմ ապահով էի, որ պաշարս վտանգից դուրս էր, ուստի նո-

րէն աչքերս գոցեցի և քուն մտայ: Սակայն մի երկու րոպէից կրկին զարթնեցի, որովհետև մուկն աշխատում էր ծոցս մտնել, կրրծոտում էր շորերիս կարերը, խառնում էր կուրծքս յամառ, աներես կերպով: Ես կրկին հալածեցի նրան և կրկին քնեցի, բայց նա դարձեալ եկաւ ինձ զարթեցրեց: Եւ այսպէս երկար ժամանակ մենք կռւում էինք, ինձ համար դա կեանքի և մահու կռիւ էր, մուկն էլ երևի զարմանալի ախորժակ ունէր պանիր ուտելու: Միւս կողմից քնելու պահանջն անընկճելի դարձաւ. ես թուլանում էի, ճարս կտրուած զոհեցի պաշարս, սրտի առանձին ցաւով ծոցիցս հանեցի այն հացն ու պանիրը, գցեցի յամառ մկան առաջ և խոր քուն մտայ:

Երևի կէս գիշեր էր, երբ ինձ արթնացրեց ռնապետն իր ոտի սովորական հարուածով: Աչքերս բաց արի. նա դեւի պէս առաջս էր ցցուած լամպը ձեռքին. ես հասկացայ, որ այս անգամ էլ ինձ սպասում է նախորդ գիշերուայ տանջանքը, բայց հաշտուած լինելով վիճակիս հետ, առանց մի բառ արտասանելու վեր կացայ: Լամպի լոյսն ընկաւ յատկապէս այն ճեղքի վրայ, ուր սպիտակին էր տալիս լուցկու տուփի այն չնչին կտորը. ինձ թւում էր, որ իմ նահատակ ընկերն է այնտեղից դգու-

շուլթեամբ Թարթում իր աչքը և ինձ քաջալերում, ես կարծես թե լսում էի նրա փրփսոցը՝ «ոչի՜նչ չը խոստովանես»: Ես դուրս եկայ բանտապետի հետ, դարձեալ ինձ ուղեկից եղան երկու զինուորներ, որոնցից մէկը խիստ կարճահասակ, փոքրիկ մարդ էր, նիհար, բայց տարօրինակ երես ունէր, զզուելի ու չար՝ փոքրիկ կատուի աչքերով: Ինձ ներս տարան մի և նոյն սենեակը, ուր նստած էր նոյն քննիչը, սկսուեց նոյն հարց ու փորձը՝ որը կրկին վերջացաւ անօգուտ ծեծով. միայն այս անգամ երևի իմ անկնչայտնի ուժասպառութիւնը տեսնելով և վախենալով յանկարծամահ անել, հարուածում էին ինձ հալաթների հակառակ ծայրով, որ երկաթ չունէր: Բայց և այնպէս՝ ծեծից վերջը ես արդէն ուժասպառ էի, ոտքի վրա կանգնել չէի կարողանում, գլուխս պտըտւում էր. վիրաւորուած և ուռած յօնքս հարուածներից պաշտպանելու ջանքերս իզուր անցան, մի ծանր հարուած էլ նոյն ուռուցքի վրա իջաւ, աչքս կրկին փակուեց. ցաւն անտանելի էր: Այս վիճակում ինձ յանձնեցին այդ փոքրիկ զինուորին՝ որ բանտ առաջնորդի: Հազիւ քայլում էի երերալով:

— Տուտ-շուտ գնա, գեաւուր, շտապեցրեց ինձ զինուորը:

Ես ոչինչ չասացի, այլ լուռ շարունակեցի քայլել՝ հազիւ ոտներս փոխելով։

— Շո՛ւտ գնա, ասում եմ քեզ, կրկնեց զինուորը, հրելով ինձ հրացանով. ես վար ընկայ ծնկներիս վրա և կրկին ոտքի ելայ։

— Տեսնում ես, որ չեմ կարողանում աւելի արագ գնալ, ախր Աստուա՛ծ ունես, պատասխանեցի ես համբերութիւնս հատած։

Հասանք սանդուղքի ծայրին. ես դեռ նոր ոտքս առաջին աստիճանի վրա էի դրել, երբ զինուորը յետևիցս մի քացի տուեց, ես բոլոր աստիճանների վրայից գլորուելով ներքև ընկայ և մնացի ընկած։ Ծալուած ոտքս անտանելի ցաւում էր, ինձ թւում էր՝ թէ կոտրուել է։ Ես չէի համարձակւում նոյն իսկ շարժել, այդ ժամանակ իմ դահիճը վերևը սանդուղքի ծայրին կանգնած հռհռալով ծիծաղում էր, ապա սկսեց հանդարտ ցած իջնել՝ շարունակելով ծիծաղել և ծաղրել իմ անծայր թշուառ վիճակը։ Տեսնելով այդ աստիճան անխիղճ, քարասիրտ անամօթութիւն, մի այնպիսի կատաղութիւն եկաւ վրաս, որ եթէ ոտքի կանգնել կարողանայի, եթէ ոյժերս մի փոքր ինձ չը դաւաճանէին, անպատճառ կը խեղդէի այդ հրէշին։ Վերջապէս նա ցած իջաւ։

— Վե՛ր կաց, գնանք, ասաց։

— Ոտքս կտրուեց, չեմ կարող գնալ, պատասխանեցի ես։ Նա մի փոքր կանգ առաւ, մտածեց, ապա բռնեց ոտքիցս և փորձեց քաշէքաշ տանել, բայց չը կարողացաւ, դա նրա ոյժից վեր էր։

— Վե՛ր կաց, ասում եմ քեզ, ատամները կրճտելով կրկնեց նա և կրկին խփեց հրացանի կոթով։ Սա արդէն չափազանց էր. այդ աստիճանի ամարդի վարմունքը արիւնը գլուխս խփեց, ես վայրկենապէս փոխուեցի. մի անօրինակ զօրութիւն ցնցեց իմ բոլոր թուլացած անդամներս, մոռացայ ամեն ինչ՝ և՛ բանտը, և՛ ծեծը, և՛ ոտքիս անտանելի ցաւը, և՛ սարսափելի վտանգը, գերմարդկային ճիգ գործ դրի, վեր ցատկեցի, երկու ձեռքով բռնեցի այդ գաճաճի զզուելի կոկորդը... փորձեց ճչալ, բայց իզո՜ւր, ես սղմում էի քանի կարող էի. յուզմունքից ատամներս ճարճատում էին իրար վրա սղմած։ Կրածս տանջանքներից սրտումս մթերուած վրէժխնդրութեան բոլոր թոյնը թափում էի այս մի հատիկ անպիտանի վրա, որ իր զզուելի արտաքինի պէս էլ չար հոգի ունէր։ Բանտի խաւար բակում ոչ ոք չը կար, նա ծամածռւում էր իմ ձեռների մէջ, ոլորւում էր, աշխատելով գոռալ։ Իմ ոյժերն էլ նուաղեցին. զգացածս զօրութիւնը մի վայրկենական յուզմունքի

արդիւնք էր, որ արագութեամբ անցաւ. Նրրան յաջորդեց իմ մարմնի համարեա մեռելային դրութիւնը, և ես կրկին վայր ընկայ. Նա ազատուեց և ճչաց: Եկան մի քանի հոգի. իմ վիճակը սարսափելի եղաւ. ես չը գիտեմ, թէ ինչ կատարուեց ինձ հետ. գազանների մի խումբ քրքրում, բզկտում էր իմ վիրաւոր, ուժասպառ մարմինը: Այնուհետև երբ էին ինձ բանտ տարել՝ ես չը գիտեմ. միայն յաջորդ օրը, երբ աչքերս բաց արի, ոտներս շղթայակապ գտայ. ծանր, ժանգոտած շղթաներ, որոնց շարժելու անգամ ես էլ ույժ չունէի: Նայեցի բռնութեան և ստրկութեան այդ գարաւոր բարեկամին, որ առանձին սիրով գըրկել էր իմ վիրաւոր ոտները. չը գիտեմ ինչու, ձեռքով շօշափեցի նրա ժանգոտ օղակները, նրանք սառն էին, մահու սառնութիւն, որից սարսռեց մարմինս. ձեռքս յետ քաշեցի, փորձեցի ոտքի կանգնել, շղթան ահաւոր շառաչիւն հանեց, կարծես դժգոհ նոյն իսկ այդ անմեղ շարժումից. չէ՞ որ նա անշարժութեան խորհրդանշանն էր:

Այսպիսով անցաւ տասն օր: Իմ վիճակի մէջ ոչ մի փոփոխութիւն տեղի չունեցաւ: Ամէն գիշեր իմ զարհուրելի շղթան հազիւ քաշ տալով ես տարւում էի վերև, ինձ սովորական եղանակով ծեծում էին՝ յանցանքս խոս-

տովանել տալու համար, և քաշ տալով, էլլի ետ բերում՝ բանտն էին գցում խալյառ ուշաթափ։ Վերջին օրերը ես զգացի, որ եթէ էլլի մի քանի օր այսպէս շարունակուի իմ դրութիւնը, ես անպատճառ կը մեռնեմ։ Սակայն օգնութիւնը հասաւ. կինս վաճառել էր իմ խանութի բոլոր ապրանքը, մի խոշոր գումար էր տուել իմ քննիչին, միւս օրն ինձ ազատեցին շղթաներից և հանեցին բանտի ընդհանուր բաժինը տարան, ուր կեանքը համեմատաբար աւելի տանելի էր։

Բանտի այս ընդհանուր բաժինը երկույարկից բաղկացած մի ընդարձակ շինութիւն էր, թէև հոտած, կեղտոտ, միջատներով լի, բայց համեմատելով իմ զնդանի հետ, սա արքայութիւն կարող էր համարուել և ես երջանիկ համարեցի ինձ, որ վերջապէս դուրս եկայ այն դժոխքից։ Այստեղ գոնէ մարդիկ կային, լայն արձակ տեղ կար, կարելի էր ոտները ձգել, մեկնուել քնել. անկողին իհարկէ չը կար, բայց մի փսիաթ ճարւում էր՝ տակներս գցելու համար, այդ էլ մի բան է, և ես շատ գոհ էի։ Բանտն էլ մի հետաքրքիր աշխարհ է, ուր ամէն տեսակ մարդիկ ակամայ կենակցութեան են դատապարտուած, և մի հոգեբանի դիտողութիւնների համար առատ ու հետաքրքիր նիւթ է ներկայացնում։ Մարդ-

կային հողին նման է ծովին, որի մակերևոյթը խաղաղ է, սիրուն, հարթ-հաւասար, բայց իր ներսում, յաւիտենական խաւարի և խորհրդաւոր անյայտութեան մէջ բազմաթիւ պատկերներ, հրաշալի երևոյթներ ունի թաղցրած: Ահա մի բանտարկեալ. մռայլ ու անհամբոյր է նրա դէմքը, խոժոռ, նոյն իսկ թունալից են աչքերը, իսկ և իսկ աւազակ, չարագործ: Ահա մի ուրիշը. դէմքը ժպտուն, պայծառ ճակատ, գրաւիչ աչքեր. ահա մի երրորդը՝ վշտահար, մտազբաղ դէմք ունի, լուռ է, բայց ոչ ոք սիրտ չի անում խօսել հետը, կարծես թաղնուած հրաբուղխ լինի. մի ուրիշը՝ յանդուգն ու անվախ, կարծես իր տանը լինի, բոց ու շանթ ունի աչքերի մէջ, արհամարհում է ամեն ինչ: Եւ սրանք բոլորն էլ բանտարկեալներ են. բոլորն էլ օրէնքով՝ աւելի կամ պակաս չափով յանցաւոր են ճանաչուած: Բայց ո՞վ է իսկական յանցաւորը, ոճրագործը, և ո՞վ է անմեղ, ո՞վ է կոչումով՝ ի բնէ չարագործ, և ո՞վ պատահարի, շրջանի, տեղական ձախող պայմանների զոհ. ի՞նչպէս իմանալ, ի՞նչպէս որոշել: Այստեղ էլ մարդիկ ապրում էին բանտին յատուկ մի կեանքով, ասում խօսում էին, զբօսնում, ուրախանում էին, խաղեր էին սարքում, պարում էին, երբեմն էլ կռւում էին: Ես ամենից շատ փախե-

նում էի այդ կռիւներից, որովհետև հէնց առաջին օրը ես նկատեցի, որ կռիւների ժամանակ բանտարկեալներից ոմանք իրանց զգեստի ծածուկ տեղերից փայլուն դանակներ էին դուրս քաշում: Բանտում, դատապարտուած չարագործը զինուա՞ծ, կա՞յ աւելի վտանգաւոր բան. ինչի՞ց է վախենում նա: Կային այնպիսիները, որոնք մի քանի օրից յետոյ պիտի առաջնորդուէին դէպի աքսոր և նրանք էլ դանակ ունէին: Դանակները բերում էին բանտի վերակացուները բախշիշ ստանալով. բանտարկեալներն իբր թէ բերել էին տալիս իրանց առօրեայ պէտքերի համար, բայց իրօք ամենայանցաւոր նպատակներով. այդ դանակների սպառնալիքով նրանք կողոպտում էին համեմատաբար աւելի հարուստ բանտարկեալներին և նրանցով պաշտպանում էին կռիւների ժամանակ:

Դանակ չունէր միայն ըստ երևոյթին մի խեղճ բանտարկեալ, որ իմ գիշերային հարևանն էր, կողք-կողքի տուած էինք պառկում: Մենք կամաց-կամաց բարեկամացանք. երկուս էլ խեղճ էինք, երկուս էլ առանց դանակ, չարագործների բազմութեան մէջ երկուս էլ կարօտ պաշտպանութեան: Նա կարճահասակ էր, բայց ջլուտ մարմին ունէր. դէմքն առանձին աչքի ընկնող, արտայայտիչ գծեր չու-

նէր, աւելի մեղմ էր, քան Թէ չար, միայն կապոյտ աչքերը ինչ որ մի առանձին բան ունէին իրանց փայլի մէջ. ես նրանցից վախենում էի. բնազդն ինձ ասում էր, որ այնտեղ Թաղուած կայ ինչ որ սարսափելի կրակ, որի բորբոքումը ահաւոր հետեւանքներ կարող է ունենալ: Նա ազգով յոյն էր, անունը Միխալօ: Խե՛ղճ Միխալօ, նա պատմեց ինձ իր անցեալը, արիւնոտ դրամաներով լի մի կեանք էր ունեցել: Սա երկրորդ անգամն էր, որ նրան բանտարկել էին: Առաջին անգամ նրան բանտարկել էին իր կնոջ սիրականին սպանելու համար, այդ սպանուԹիւնը նա պարծանքով էր յիշում. «ես իրաւունք ունէի, իմ պատիւն էր անարգուած, այնպէս չէ՞», մռմռում էր նա: Մի քանի ամիս բանտում մնալուց յետոյ, նա փախել էր և երկար ժամանակ Թափառական կեանք էր վարել: Իր կեանքի այդ աստանդական շրջանում նա ինքնապաշտպանուԹեան ժամանակ սպանել էր երկու փօլիս իր սեփական տան մէջ, ինքն ապա աջողեցրել էր փախչել, բայց նրա փոխարէն անմեղ եղբայրն էր բանտարկուել, որպէս աւազակին ապաստան տուող: Լսելով անմեղ եղբօր բանտարկուԹեան լուրը, նա իսկոյն վճռել էր իրան իշխանուԹեան ձեռքը յանձնել՝ եղբօրն ազատելու համար. բայց հէնց այդ ժամանակ նա

իմացել էր, որ վերջին դէպքում, երբ փոխս-ներն իր տեղը գտել էին, մատնողը իր մի ընկերն է եղել, այդ պատճառով նա երկար ժամանակ սկսել էր հնարքներ որոնել այդ դաւաճան ընկերոջը սպանելու, բայց այդ նրան չէր աջողուել և նա առանց իր վրէժխնդրութեան յագուրդ տալու, ստիպուած էր եղել բանտ մտնել։ Բայց նրա յոյսերը չէին իրականացել. իշխանութիւնը նրան բանտարկելով, եղբօրը ազատութիւն չէր շնորհել, նա էլ բանտումն էր։ Միխայօն սրտի առանձին ցաւով պատմեց վերջին հանգամանքը։ Իրան դատապարտել էին արդէն, իսկ եղբօր մասին կայանալիք վճռից նա տեղեկութիւն չունէր։

«Ինձ դատապարտել են 101 տարուայ բանտարկութեան, սա ինձ առանձին ցաւ չի պատճառում, ես առանց այդ էլ իմ կեանքը կորած էի համարում, աւելացրեց նա. ինձ տանջողը մէկ այս խեղճ, անմեղ եղբօրս բանտարկութիւնն է և մէկ էլ այն՝ որ չը կարողացայ դաւաճան ընկերիցս վրէժխնդիր լինել»։ Որովհետև ինքն էր եղել եղբօր դժբախտութեան պատճառը, ուստի սաստիկ ամաչում էր նրանից, նրան պատահելիս համարեա միշտ կարմրում էր և գլուխը քաշ գցում. նրանք երբէք չէին խօսում իրանց ցաւերից, բստ երևոյթին երկուսն էլ գոհ էին, որ մէկը ստո-

րին և միւսը վերին յարկումն է բանտարկուած, այսպիսով նրանք ազատուել էին յաճախ իրար տեսնելու առիթներից։

Մի առաւօտ ես իմ բարեկամ Միխայօին գտայ սաստիկ մտազբաղ և յուզուած. բանտում առանձին դէպք, առանձին փոփոխութիւն տեղի չէր ունեցել, եթէ չը հաշուէինք այն, որ նախորդ գիշերը մի նոր բանտարկեալ էին բերել և առաջնորդել վերին յարկը, ուր էր նաև Միխայօի եղբայրը։ Բայց ի՞նչ յարաբերութիւն կարող էր ունենալ այս նոր անձի յայտնուելը Միխայօի յուզմունքի հետ. ո՞վ էր այդ նոր դժբաղդը և ի՞նչ բանի համար էր առաջնորդուել այս դժոխքը, ես չը գիտէի։ Երևի բարեկամս գիտէր մի բան, նա քայլում էր անդադար, ձեռքերը շփում էր արագ արագ, և շանթալից հայեացքներ էր գցում նորեկի վրա ամէն անգամ, երբ նա առիթ էր ունենում սարքին յարկն իջնել. այդ ժամանակ նորեկն էլ էր շփոթւում, կարծես թէ իրօք նրանք հասկանում էին իրար, ինչպէս երկու ոխերիմ հակառակորդներ. կամաց-կամաց Միխայօն խսպառ լռեց, էլ ոչինչ չէր խօսում, ինձանով էլ ամենևին չէր զբաղւում, ես էլ չէի համարձակւում անհանգիստ անել նրան իմ հարցերով։ Սպասում էի։ Մի օր վերջապէս նա ինձ ասաց.

— Լսի՛ր, ընկեր, թէ սիրում ես ինձ, գնի՛ր ինձ համար մի դանակ. դու թէ փող ունիս և թէ քեզ հաւատում են. տեսնո՞ւմ ես, բոլորը դանակ ունեն, թող մէկն էլ մենք ունենանք, ո՞վ գիտէ, գուցէ հարկաւոր լինի։

Այդ պահանջը ոչ այնքան տարօրինակ, որքան չարագուշակ թւաց ինձ, իմ մարմնով սարսուռ անցաւ. մերժել չէի համարձակւում, աշխատեցի զանազան պատճառաբանութիւններով դժուարութիւններ ցոյց տալ, նա հասկացաւ, որ ցանկութիւն չունիմ կատարել նրա խնդիրը։

— Լա՛ւ, ասաց նա, քո կամքն է։

Բայց այդ երեք բառը նա այնպիսի եղանակով արտասանեց, որ ես սարսափեցի. վրէժխնդրութիւն էր հնչում նրանց իւրաքանչիւր վանկից. նրա շրթունքները ցնցւում էին, աչքերն ստացան ինչ որ զարհուրելի արտայայտութիւն. ես զգացի, որ իմ մերժումը շատ վատ վախճան է ունենալու. Միւսայօն այդ ինձ չէր ների։ Ստիպուեցի կատարել նրա ցանկութիւնը. նա դանակն ստացաւ. մե՜ծ, փայլուն դանակ էր, վրան նայեց սիրով և դրեց իր բարձի տակ։ Նա այնուհետև ինձ հետ աւելի քաղցր էր վարւում, մի անգամ նոյն իսկ համբուրեց ճակատս. բայց ես էլ աւելի վախենալ սկսեցի նրանից, մանաւանդ

գիշերները։ Եւ յիրաւի, ի՞նչպէս չը մտածէի, որ այդ արիւնարբու մարդը թէկուզ հէնց իր զուարճութեան համար այդ փայլուն պարզ երկաթը կոկորդս կը մխի։ Գիշերները նրա ամէն մի շարժման ժամանակ ես խելագարի պէս վեր էի ցատկում քնաթաթախ։ Գուցէ ծիծաղելի համարուի իմ այդքան երկչոտութիւնը, բայց հաւատացնում եմ, որ ես սարսափելի գիշերներ անց կացրի, այդ մարդը դարձաւ ինձ համար մի մշտական կ ո շ մ ա ր, որ անդադար սղմում էր իմ կոկորդը, անդադար խեղդում էր ինձ, առանց վերջնականապէս մահացնելու։

Վերջապէս մօտեցաւ իմ ազատութեան օրը, յաջորդ առաւօտ ես պիտի դուրս գայի բանտից. իմ ուրախութիւնն անսահման էր. ես պատրաստ էի այդ վերջին գիշերն անքուն անց կացնել, կէս գիշերին մօտ հազիւ քնեցի։ Որչափ ժամանակ էի քնել, ես չեմ կարող ասել, բայց յանկարծ արթնացայ սաստիկ աղմուկից, որ լսւում էր բանտի վերնայարկից, ես նայեցի, ուշադրութիւնս լարեցի, լսում էի ոտնաձայներ, վիրաւորի հառաչանք, մեռնողի հռնդիւն։ Կողքս նայեցի, ընկերս չը կար։ Մի ակնթարթում վեր վազեցի՝ սարսափելի տեսարանի ականատես լինելու նախազգացումով։ Եւ յիրաւի տեսարանն այնտեղ ահաւոր էր.

իմ ընկերոջ խեղճ եղբայրը կուրծքը պատառուած գալարւում էր իր արեան մէջ սոսկալի հառաչանքներ արձակելով. իսկ Միխայօն՝ արիւնոտ դանակը ձեռքին կանգնած էր խելագարի պէս աչքերը չռած, արիւնակալած, հեւում էր, ասես թէ նրան պակասում էր օդ շնչառութեան համար, կուրծքը բարձր ու ցածր էր լինում, ամբողջ մարմինը դողդողում էր, նա նայում էր իր շուրջը, կարծես չը հասկանալով, թէ ի՞նչ է կատարուել:

Մէկ էլ յանկարծ վիրաւորը աչքերը բաց արեց, նայեց իր եղբօրը և նուաղած ձայնով հազիւ շշնջաց.

— Միխայօ, ինչո՞ւ սպանեցիր ինձ:

Այդ ժամանակ մի աւելի սարսափելի բան կատարուեց. Միխայօի կրծքից մի այնպիսի հառաչանք, այնպիսի աղաղակ դուրս թռաւ, որ սոսկումով պատեց ամենքիս. անբաւ ցաւերի տակ ճնշուած սրտի մի զարհուրելի ճիչ էր այն, որ դեռ հնչում է իմ ականջներում. ապա նա բուռն թափով արիւնոտ դանակն իր կուրծքը մխեց և ընկաւ եղբօր դիակի վրա:

Յետոյ միայն մենք իմացանք այդ դրամայի բուն պատճառը: Դուրս եկաւ, որ Նորեկ բանտարկեալը Միխայօին մատնողն է եղել,

ահմ թէ ինչու Միխայօն այնպէս յուզուեց, երբ առաջին անգամ տեսաւ նրան։ Որոշելով այդ գիշեր նրան սպանել, Միխայօն նախապէս դիտել էր նրա պառկելու տեղը, բայց մի ճակատագրական թիւրիմացութեամբ, թէ ինքնապաշտպանութեան բնազդով յատկապէս այդ գիշեր դաւաճանը փոխել էր իր տեղը Միխայօի եղբօր հետ։ Զարագործը իր սաստիկ կատաղութիւնից կուրացած և մասամբ գիշերային խաւարի պատճառով չէր կարողացել ճանաչել իր զոհը և սպանել էր հարազատ եղբօրը, մինչդեռ նորեկ բանտարկեալը, Միխայօի արիւնարբու թշնամի հէնց նոյն գիշերը փախել էր բանտից կաշառելով պահապաններին։

Ես նայեցի այդ երկու դիակներին, և սիրտս լցուեց արիւնով։ Ես զգացի, թէ ի՞նչ մեծ մասնակցութիւն եմ յանձն առել այս զարհուրելի դրամայի մէջ՝ դանակ տալով չարագործի ձեռքը։ Յուսահատ արտասուքները խեղդեցին իմ կոկորդը. նզովեցի այն րոպէն, երբ ինձ զնդանից ազատելով այս ընդհանուր բաժինը բերին. Մկների հասարակութիւնը հազար անգամ գերադասելի էր։ Երբ ես վար իջայ, ներքին յարկն էլ արիւնով պատած էր. առաստաղի ճեղքերից կաթիլ-կաթիլ ընկնում

էր կարմիր, զարհուրելի հեղուկը։ Յաջորդ առաւօտ ինձ արձակեցին այդ դժոխքից․ բայց ես արդէն ծերացել էի»։

1896 թ․

---

## ՀԱՐԵՒԱՆՆԵՐԸ

Մարտօն և Ցօվակը լաւ հարևաններ էին. երկուսով էլ մեծ ընտանիքի տէր, երկուսով էլ աշխատաւոր, իրանց ցաւն ու հոգսը, իրանց «խէրն» ու «շառը» իմացող, սև օրուայ համար մտածող, ժիր երկրագործներ էին։ Մի բարակ պատ էր բաժանում միայն նրանց խրճիթները իրարից, բայց երկու հարևանների փոխադարձ բարեկամական զգացմունքն այնքան զօրեղ էր, որ նրանք իրանց բնակարանների այսքան մերձաւորութեամբ չը բաւականանալով՝ մի փոքրիկ ծակ էին բաց արել կից պատի վրա և այսպիսով երկու խրճիթները դարձել էին համարեա մի ընդհանուր խրճիթ, որովհետև շնորհիւ այդ փոքրիկ անցքի, պատի երկու կողմում զանազան յարկերի տակ ապրողները շատ լաւ

իմանում էին, թէ ի՞նչ է կատարւում հարևանի տանը. ո՞վ է այնտեղ, ինչ է խօսւում, ի՞նչ են անում, ե՞րբ են քնում, ե՞րբ վեր կենում: Երկու հարևանները գաղտնիքներ չունէին իրարից թագցնելու, այս պատճառով փոքրիկ անցքը ոչինչ անյարմարութիւն չը ներկայացնելուց զատ, նաև ծառայում էր իբրև յարմար միջոց զանազան ամանների, գործիքների, շատ անգամ կերակրի, փոխհացի, կրակի փոխանակութեան և որ ամենից գլխաւորն է՝ վտանգի ժամանակ դա անփոխարինելի ծառայութիւն էր մատուցանում հարևաններին—այնտեղից օգնութիւն աղաղակելը շատ հեշտ էր: Հարևաններից իւրաքանչիւրն ունէր իր արտը և այն՝ մշակելու համար մի զոյգ հաստավիզ եզը, որ իրանց զաւակների չափ սիրելի էին նրանց: Արտ ու եզ, տուն ու ընտանիք, թէև չորս հասկացողութիւններ էին, բայց երկու հարևանների համար դրանք միացել, կազմել էին մի հասկացողութիւն, որ կազմում էր նրանց կեանքի խորհուրդը, նրանց անդադրում աշխատանքի դրդիչը, յարատև հոգացողութեան, քնքոյշ խնամքի առարկան: Գիւղական ընտանեկան կեանքի զանազան երևոյթների մասին երկու հարևանները համարեա մի և նոյն հասկացողութիւնն ունէին, և իրանց գործունէու-

թեան մէջ մի և նոյն մտքերով, մի և նոյն
զացմունքներով էին առաջնորդւում: Մի
արօրինակ զուգադիպութեամբ նրանց ատ-
իքն էլ նոյնն էր և կարծես իրանց այդ
մանութիւնը կատարեալ դարձնելու համար
րկուսով էլ ծխում էին միատեսակ չիբուխ-
երով և ծխում էին անդադար, ագահաբար,
անաւանդ երբ միասին էին. այդ ժամանակ
ասես թէ իւրաքանչիւրն իր օրինակով քա-
ալերում էր ընկերին աւելի առատ ծուխ
րձակել: Գիւղամիջում, սաքւում, գիւղական
արկերում զոյգ հարևանները միշտ միասին
ին նստում և քուլա-քուլա ծուխ արձակում
էպի վեր:

Այս հանգամանքն էր պատճառ երևի, որ Ն...
իւղացիները նրանց անուանում էին «երկու
իբուխներ»: Երբ Մարտօն ու Յովակը կիրակի
. տօն օրերին չիբուխները բերաններին առն-
ած ծխի ամպեր բարձրացնելով գնում էին
իւղամէջ, գիւղացիները ժպտալով ասում
ին իրար՝ «երկու չիբուխներն եկան»: Հա-
ևանները չէին վրդովւում այդ մականունից,
րովհետև հայ գիւղերում հազիւ պատահի
ի գիւղացի, որ զոյգ անուն չունենայ, գիւղը
ականուններ դնելու բարձրագոյն իրաւունք-
եր ունի. հարևանները գիտէին, որ իրանք
չիբուխ» են, բայց հանգիստ էին, որովհետև

Ն… գիւղում կար նաև «Պոչով Հայրապետ»
«Սատանայ Սաքօ» «Աղուէս Մկօ» և այլն։
Շատ կողմերով իրար նման հարևաններ
սակայն չնչին տարբերութիւն էլ ունէի
իրարից. նախ՝ Մարտօն իր դէմքին մի մե
սպի ունէր, որից զուրկ էր Յովակը, և եր
կրորդ՝ Յովակը երկրագործ լինելուց զա
նաև հռչակաւոր սնըխչի էր *), մինչդե
Մարտօն զուրկ էր որ և է այդօրինակ հմ
տութիւնից. սակայն այս չնչին տարբերու
թիւնները մազի չափ անգամ չէին նսեմաց
նում հարևանների փոխադարձ համակրու
թիւնն ու սէրը։ Կար մի այլ հանգամանք
որ դրանցից աւելի կարևոր էր. Յովակ
քրդերի հետ առանձին բարեկամութիւն ունէր
նրանցից առանձին յարգանք էր վայելու
շնորհիւ իր բժշկական հմտութեան, մինչդե
Մարտօն քիւրդ տեսնել չէր կարողանում
նրանց ատում էր հոգու բոլոր զօրութեամբ։
— Աղջի՛ Նազէ՛, փակիր էն պատի ծակը
ասում էր Մարտօն ամեն անգամ, երբ իր խրճիթ
ներս մտնելով՝ լսում էր հարևանի տնից որ
է քրդի ձայն. Նա կատաղում էր մանաւանդ
երբ Յովակի քիրվա Ռըզգօի ձայնն էր լսու

---

*) Հայ գիւղերում սնըխչի են կոչում այն անձինք, որոն
մարմնի ջարդուած կամ դուրս ընկած ոսկորները տեղը գցել
և վարպետութեամբ կապելու հմտութիւնն ունեն։

րան նա ամենից աւելի էր ատում։ Աղջիկն
գուշութեամբ փակում էր պատի ծակը որ և
քուրջով, ապա թէ Մարտօն հանդստացած
սեղ էր բռնում թօնրան շրթին, մռմռալով՝
— Տունը շինել է քրդի տուն, հօղը խել-
ի՞զ, շունը կապում է պանրի տկին։
Այս հանգամանքը երկու հարևանների բա-
եկամութեան ամենացաւոտ կողմն էր. այս
էտի վրա ոչ մէկը միւսին զիջողութիւն չէր
նում։ Մարտօն ներել չէր կարողանում Յօ-
ակին սրա բարեկամութիւնը քրդերի հետ,
Յօվակն էլ զարմանում էր Մարտօի պնդա-
լուխ յամառութեան վրա, որ չէր ուզում
ասկանալ այն պարզ, աշկարա բանը, թէ
րդի բարեկամութիւնից ոչինչ անպատեհու-
թիւն չի ծագի և որ նոյն իսկ նա երբեմն
գտակար է։ Եւ երկու հարևանները վիճում
ին այս խնդրի վրա, վիճում էին շա՜տ վա-
ուց, մի քանի տարիներ, և ոչ մէկը միւսին
եղի չէր տալիս, ոչ մէկը միւսին համոզել
էր կարողանում։ Այժմ էլ ամեն անգամ երբ
ր և է տեղ երկու չիբուխները միասին ծուխ
ին շնչում և նրանց տէրերը վիճում էին,
ւրաքանչիւր գիւղացի հաստատ գիտէր, որ
վէճը քրդերի մասին է։ Սովորաբար նախա-
արձակը միշտ Մարտօն էր լինում, նա՛ էր
ուլի նշանը տալիս։

— Էլի երէկ ո՞ւր էիր Յովակ, հարցնու
էր Մարտօն, թէև շատ լաւ գիտէր հարևա
նի ուր լինելը։

— Ո՞ւր պիտի լինէի, պատասխանում է
Յովակը, չը հասկանալ ձևացնելով հարևան
միտքը, շէյխ Մահմուդն էր կանչել. խեղճ
տղան երէկ ձիուց ընկել ոտքը երկու տե
կոտրուել էր, գնացի կապեցի։

— Վիզը կոտրուէր, ոտքն ի՞նչ է, մռմռու
էր Մարտօն, իբր թէ ինքն իրան, բայց իրօ
հարևանին բարկացնելու համար։

— Է՛լի սկսեց։

— Ի՞նչ սկսեց, քիւրդը որ ոսկի էլ լինի
ջեբդ չը պէտք է դցես. ասել եմ, էլի կասեմ, ո
քիւրդը շուն է, ագահ է, կեղտոտ է, գող է
աւազակ է, ապերախտ է, այ դու ո՛ւմ բարե
կամն ես. հասկացա՞ր...

— Դու հէնց շարունակ քո էշն ես քշում
մէկ այնտեղ լինէիր, տեսնէիր թէ ինչ պա
տիւներ արեց ինձ շէյխը, էլ գառ մորթե՜
էլ փլաւ եփե՜լ...

— Հա՜յ հողը քո գլխին, հողը քո գլխին
այդ ո՞ւմ գառներն են, ո՞ւմ հացն է։

— Խօմ քոնը չէ՞...

— Տօ, անխելք, իմը չէ, քոնն է, քոնը չէ
հարևանինն է, մի խօսքով շէյխինը չէ, մե՛րն
է, մե՛րը։

— Ինչ ուզում ես ասա, բայց ես քրդերից՝ բացի պատուից, ուրիշ բան չեմ տեսել, վնաս չեմ ստացել։

— Տե՛ս, ցոյց էր տալիս Մարտօն իր աջ այտի վրայի մեծ սպին, որ սրի հարուածի արդիւնք էր, էն տարին, երբ ես Բայազէտ էի...

Բայց հէնց որ նա սկսում էր Բայազէտի հարիւր անգամ կրկնած իր արկածը, Յովակը ձեռքով մի անհանգիստ շարժում էր անում, չիբուխը թափ էր տալիս գետնին և խրում գօտիկը, վեր էր կենում տեղից և շարժւում դէպի տուն, մինչդեռ Մարտօն առանց կարողանալու վերջացնել իր սկսած պատմութիւնը, մատը դրած իր այտի սպիի վրա, նայում էր հեռացող հարևանի յետևից վրդովուած հայեացքով և մռմռում.

— Կը փոշմանե՛ս մի օր, տեսնենք ե՞րբ...

Մարտօի սպին իր պատմութիւնն ունէր և այն էլ ահաւոր պատմութիւնը։ 1877 թ. ռուս—թիւրքական պատերազմին քիւրդերն իրանց անզօր կատաղութեան և վրէժխնդրութեան թոյնը թափեցին Ալաշկերտի և յատկապէս Բայազէտի անզէն հայերի գլխին, որպէս ռուսաց բարեկամների։ Չար ճակատագրին հաճելի էր եղել, որ այդ սարսափելի օրերում Մարտօն Բայազէտում՝ իր քեռու տանը լինի. նա իր աչքով տեսել էր քրդերի

գործած բոլոր սարսափները, նա տեսել էր նաև իր քեռու ընտանիքի կոտորածը, ինքն էլ հրաշքով էր ճողոպրել մահից սրի մի ժանր հարուածից յետոյ, նոյն իսկ իր ազգականների՝ երեխաների, կանանց և տղամարդկանց դիակների շեղջակոյտի տակ մնալով ամբողջ երեսուն ժամ: Այդ չարաբաստիկ օրից այնքան զարհուրելի եղեռնագործութիւններին վկայ լինելուց յետոյ, Մարտօն այլ ևս քիւրդ տեսնել չէր կարողանում և նրանց ատելով ատում էր: Յովակը չէր կարող խօսք չը տալ Մարտօի առաջից, Բայազէտի արկածն այնպիսի հզօր, անժխտելի ապացոյց էր քրդերի անսիրտ գազանութեան, այնպիսի հզօր յենակէտ էր Մարտօի իրաւունքի, որ հարևանը կամայ ակամայ լռում էր և շտապում խօսք տալ վէճին վերջ տալու համար, սակայն առանց երբէք հրաժարուելու իր համոզմունքից: Եւ այսպէս տարիների ընթացքում քանի՜ քանի՜ անգամ էին վիճել նրանք մի և նոյն խնդրի մասին, Մարտօն այդ ժամանակում ով գիտէ, քանի անգամ էր կրկնել Բայազէտի սարսափների և իր սպիի պատմութիւնը, քանի՜ անգամ Նազէն փակել և բացել էր երկու խրճիթների կից պատի ծակը, բայց և այնպէս երկու հարևանները շարունակում էին մնալ լաւ բարեկամներ, շարունակում էին

միասին նստել և ծխել իրանց միանման չի-
բուխները, խօսել իրանց առօրեայ ցաւերից,
հոգսերից, իրանց դաշտային և տնային աշ-
խատանքներից։ Քրդերի մասին ունեցած նր-
րանց վէճը մի թեթև ամպ էր միայն, որ
գալիս էր մի քանի վայրկեանով մի փոքր մթա-
գնելու նրանց բարեկամութեան պայծառ հո-
րիզոնը, բայց և իսկոյն ցրիւ էր գալիս՝ տեղ
տալով արևի վառ ճառագայթներին։ Եւ
երկու հարևանները մնում էին հաշտ ու սի-
րով, ինչպէս երկու եղբայրներ։

Հասաւ 189... թ. մի չարաբաստիկ տարի և
ոչ մի անգամ երկու հարևանների կից պատի
ծակը այնպէս երկար փակ չէր մնացել, որքան
այդ տարին։ Ամրան վերջն էր, գիւղական աշ-
խատանքների ամենատաք ժամանակը, երբ մի
անգամ Մարտօն տուն մտնելով՝ բացականչեց.

— Օ՜հ, էլի էդ շան ձէնն եկաւ, աղջի,
ո՛ւտ, փակիր էդ ծակը։ Հարևանի տնից նա
սեց Որդոյի ձայնը։ Աղջիկը շտապով կատա-
րեց հօր հրամանը և այս անգամ ծակը փակ
մնաց մինչև քառասուն օր, որովհետև Որդոյի
ոտքը կոտրուել էր և նրան բերել էին իր
ջիրվայի տունը խնամուելու և բժշկուելու
համար։ Այդ բոլոր ժամանակ Մարտօի երեսից
ժպիտը կորաւ, նա էլ չէր խօսում հարևանի
հետ, չէր պատասխանում նրան և ամեն անգամ

խրճիթ մտնելով նայում էր կալած ծակին
և մռմռում. «Տունը շինել է քրդի տուն
հողը քո գլխին»։

Օրեր անցան. գիւղացիկ շտապ-շտապ վեր-
ջացնում էին իրանց աշխատանքները, ժամա-
նակը թանգ էր. շուտով բնութիւնը կը խռո-
տանար. իսկ Յովակը չը գիտէր՝ իր անկոչ հիւ-
րին խնամի, թէ՞ իր կալուկուտը վերջացնի
Նա յետ էր մնացել, մինչդեռ ուրիշները իրանց
աշնանային վար ու ցանքն էին սկսել, խեղճ
Յովակը դեռ իր հէշանն էր տակն ու վրա ա-
նում. ուրիշ դէպքում նա կը դիմէր Մարտոյի
օգնութեանը, բայց այս անգամ չէր համարձակ-
ւում, մէջտեղ Ոըզգօն կար։ Մարտոն էլ ասես
ուխտել էր թողնել, որ Յովակը այս անգամ մենակ
խմի փորձութեան դառը բաժակը, որ խրատուի
Եւ Յովակը քամեց այդ բաժակը մինչև տակը

Ուշ աշուն էր. տարուայ այն ժամանակը
երբ բնութիւնն իր տխրութեան մէջ անգամ
մի մեղմ փայլ, գունատ, մելամաղձոտ գեղեց-
կութիւն ունի. այդպէս է լինում իր կեանքի
վերջալուսին մօտեցած, իր պարդերից կապ
տուած նախկին գեղեցկուհին, որը իր սգո
զգեստի մէջ, իր խոր վշտի մէջ անգամ ան
ցեալ փառքի, անցեալ փայլի, գեղեցկութեան
թեթև ցոլքերը դեռ պահում է, որոնցից
շուտով զրկուելու ճակատագրական, անհրաժեշ

ութիւնը խորին տխրութեան քօղով պատում է նրա դէմքը։ Բնութեան սգոյ զգեստը դեղնագոյն է. սար ու դաշտ, ձոր ու հովիտ միապաղաղ դեղին գոյն են զգենում, բայց այդ համատարած դեղնութեան մէջ տեղ-տեղ երևում են մոռացուած դժոյն ծաղիկներ, խղճուկ խոտեր։ Լուռ են դաշտերն ու ամայի, մարդիկ քաշուել են դաշտերից, իրաւունքն այժմ գազաններին է. բայց և այնպէս մի ձորում, մի լեռան լանջի վրա դեռ երևում է մի աղքատ կին իր փոքրիկ աղջկայ հետ, որոնք ինչ որ հաւաքում են գետնից, բարձրանում են վեր, իջնում են ձորը, լուռ ու մունջ փորփորում խոնաւ գետինը և ածում իրանց պարկերի մէջ. ո՞վ գիտէ ի՞նչ արմատիք, ի՞նչ մոռացուած բարիք, որ բնութիւնը սիրում է ծածուկ պահել՝ իր աղքատ, խեղճ զաւակներին տալու համար։ Աւելի հեռու լայնատարած հարթութեան վրա, ուր խաղում է աշնանային հովը, վզզացնելով չոր խոտերի տերևազուրկ ծայրերը, սևին է տալիս մի հատիկ ստուեր, որ մերթ բարձրանում է, մերթ կռանում. Ծեր նախրապանն է այն, որ ամրանը այստեղ ու այնտեղ կիտակ արած իր ցախերն այժմ ի մի է հաւաքում։ Ահա նա կապում է իր շալակը և մէջքին դնելով՝ ճանապարհ է ընկնում դէպի գիւղը

ժանր տնքալով. ինչքա՜ն ճանապարհ ունի անցնելու, հեռաւոր դաշտերից մինչև գի՛ւղ... հեշտ է ասել, մարդը ծեր է, շալակը ժանր. շրջակայքի ամայութիւնն էլ աւելի է մեծացնում տարածութիւնը. բայց ծերուկը ճար չունի, պիտի տանի այդ ժանրութիւնը, ձմեռը մօտ է, վառելիք է հարկաւոր։ Երկինքն էլ է լուռ, օդը չի աղմկւում թռչունների ձայներով, բայց երբեմն յայտնւում է մի հատիկ մոլորուած կռունկ, որ տխուր կղղում է և շտապում դէպի հարաւ։ Եւ այս բոլորի վրա դեռ փայլում է վերևից արևը, տխո՜ւր, աշնանային արև, որի ճառագայթների մեղմ ջերմութիւնն այնքան քա՜ղցր են. այնքան դուրեկա՜ն ուշ աշնանը։

Այն տարին ոչ ոքի համար արևի աշնանային ճառագայթները այնքան թանգ, այնքան դրաւիչ չէին, որքան այն մի հատիկ գիւղացու համար, որ Ն... գիւղի դաշտերի ամենահեռաւոր ծայրում զոյգ եզներով դեռ վարում էր մի մոռացուած գետին, մինչդեռ չորս կողմի արտերն արդէն ծլել էին, վարուցանքը վաղուց վերջացել։ Հաստավիզ, սիրուն եզներ էին, որոնք գլուխները դանդաղ օրօրելով՝ քաշում էին արօրը, խոր ակօսներ թողնելով յետևում. գիւղացին ջլուտ ձեռքով բռնել էր մաճը և քաջալերում լծկաններին,

որ շուտ շարժուեն։ Խեղճ Յովակ, Որդգօլի հիւանդութեան պատճառով՝ նրա արտը մինչեւ այժմ մնացել էր առանց վարելու, նա դեռ մի հատիկ սերմ չէր ցցել գետին. ահա մի քանի օր է, ինչ այն անկոչ հիւրը բժշկուելով՝ վերջապէս հեռացաւ եւ այժմ Յովակը դաշտումն է. նա իրաւունք ունի շտապելու, շատ է յետ մնացել, ձմեռը մօտ է. Յովակը, սակայն, չէ յուսահատւում, երկնքում Աստուած կայ, ներքեւում զոյգ եզներ՝ այս սիրուն Բօզօն ու Կարմիրը, երեխաներն անհաց չեն մնայ… Աստուած, եզներ, ջլուտ հզօր ձեռք, այս բոլորը միասին Յովակի սրտում ծագեցրին յուսոյ մի նշոյլ,—յո՜յս, ի՜նչ սիրուն բան է յոյսը. Յովակը նայեց դէպ երկինք, այնտեղից էլ արեւը դեռ հաշտ ժպտում էր, դեռ տաք էր օրը, դեռ ժամանակ կար. Յովակն էլ ժպտաց եւ նոյն իսկ սկսեց երգել.

Արեւն իջաւ սարի մէջքին,
Դէ՛հ, շո՛ւտ, Բօզօ, քե՜ մեռնեմ
Ղշեր զլմմէն թռան գացին,
Վարուցանքս ե՞րբ անեմ։

Օրը կարճ է, գործը երկար,
Դէ՛հ, շո՛ւտ, Կա՛րմիր, քե՛ մեռնեմ,
Վա՜յ թէ ձիւնը բռնի դաշտ, սար,
Յորեն, գարին ե՞րբ ցանեմ։

Հովը փչեց սարի ծերէն,
Դէ՜հ, շո՛ւտ, ե՛զներ, ձե՛ մեռնեմ,
Ծաղիկ, կանաչ հատան դաշտէն,
Ձեր պաշարը ե՞րբ ժողվեմ.

Ոտիդ մեռնեմ, քաշի՛ր, Կա՛րմիր,
Տուտով շրջենք ակօսներ,
Սիրուն Բօղօ, շուտ արա՛, ժի՜ր,
Տո՛ւտ, որ հոգանք մեր ցաւեր։

Թո՛ղ որ երկինք վերից տեսնի
Մեր ճիգ, մեր ջանք, մեր հոգսեր,
Նա գթոտ է, դեռ օր կանի,
Դէ՜հ, շո՛ւտ, իմ ժի՛ր ընկերներ։

Դաշտերի տխուր ամայութեան մէջ, շրջակայքի խուլ լռութեան մէջ մենաւոր գիւղացու այս երգը հնչում էր որպէս հակապատվեր բնութեան մահամերձ վիճակի. դա յոյսն էր, որ սիրուն բաներ էր ասում չարքաշ գիւղացուն, որ նրան ոգի էր ներշնչում, ոյժ էր տալիս նրա ջլուտ ձեռքին՝ մաճը պինդ բռնելու համար։

— Բարի աջողո՜ւմ, եզներիդ ո՜յժ, լսեց Յովակը յանկարծ իր յետևից. նա յետ նայեց, առաջը կանգնած էր Մարտօն իր արօրով ու եզներով։

— Բարի՛ եկար. հօ՜հօ՜, եզներ, հօ՜հօ՜, եզներ։ Եզները կանգ առան։

— Լաւ շուտ ես եկել, Յովակ։

— Դէ ի՞նչ անեմ, յետ եմ մնացել, էս տարի էլ իմ բանն էսպէս էլաւ։

— Որ ա՛նցաւ գլուխդ Աւետարանի տակ դնես, յետ կը մնաս, բա ի՞նչ կը լինես, շների ցաւը քեզ են տուել, ասես Թէ երեխայի, ընտանիքի տէր չը լինես։

Երկու հարեւաններն իրար մօտեցան և նըստեցին մի Թմբի վրա, չիբուխները դուրս քաշեցին, ծուխը բարձրացրին միաժամանակ և վաղեմի վէճը դարձեալ սկսուեց։ Այս անգամ Մարտօն աւելի խիստ, աւելի անողորմ էր, քան երբ և իցէ. քառասուն օր շարունակ հաւաքած իր զայրոյԹը միանգամից Թափում էր Յովակի գլխին, վերջինս այսօր չէր կարողանում իր պաշտպանուԹեան համար նոյն իսկ մի բառ գտնել. դատապարտուածի համբերուԹեամբ նա տանում էր հարեւանի բոլոր յանդիմանուԹիւնները և միայն սպասում էր այն օրհնեալ րոպէին, երբ Մարտօն վերջապէս կըսկսի Բայազէտի պատմուԹիւնը, որ վերկենայ խոյս տայ։ Հակառակի պէս այսօր Մարտօն կարծես լաւ հասկանալով հարեւանի նեղ վիճակը, ամենեւին չէր էլ մտածում Բայազէտի արկածի մասին և շարունակում էր բզկտել Յովակին ծակող խօսքերով։

— Ախր նրանք ի՞նչ են արել քեզ, որ այդքան ատում ես, ա՛յ անաշէն, ասաց վերջապէս Յովակը:

Այս հարցը միանգամայն անտեղի և անհեդեդ էր, քանի որ յայտնի էր, թէ «նրանք» ի՞նչ էին արել Մարտօին, բայց Յովակը յուսահատուած այդ հարցը տուեց. դա խեղդուողի վերջին ճիգն էր, որը աշխատում է բռնել մի տերև: Սակայն անսպասելի կերպով հէնց այդ անտեղի հարցը նրան փրկեց: Մարտօն կատաղութիւնից իրան կորցրեց, մոռացաւ ամէն ինչ. մոռացաւ, որ ինքը պիտի միջոց չը տար հարևանին ազատուել իր ձեռքից և բացականչեց.

— Ինչպէ՞ս, ի՞նչ են արել. տե՞ս, և նա մատը դրեց իր սպիի վրա.—աչքերս կո՞յր են, չե՞ս տեսնում. էն տարին որ ես Բայազէտ էի...

Յովակը չիբուխը թափ տուեց դետնին, խրեց իր գոտին, վեր կացաւ, մածը ձեռք առաւ, իսկ Մարտօն կանչեց յետևից.

— Կը փոշմանես մի օր, տեսնենք երբ...

Յովակը չը գիտէր, թէ Մարտօն ուր է գնում իր արօրով ու եզներով, բայց երբ օրավարի ծայրը հասնելով՝ նա յետ դարձրեց իր եզները, տեսաւ, որ այդ խստասիրտ հարևանը օրավարի միւս կողմից ակօս ձգած,

հանդարտ վարում է. Մարտօն եկել էր իր
հարևանին օգնելու՝ բաւական համարելով
նրա կրած պատիժը: Յովակը ժպտաց:

Երկու հարևանները լուռ շարունակում
էին իրանց աշխատանքն արտի զանազան
կողմերից և ամեն անգամ, երբ մէկը հասնում
էր մի ծայրին միւսն էլ մի և նոյն ժամանակ
հասնում էր հակառակ ծայրին: Արևն իջա-
ներքև՝ դէպի հորիզոնը եզերող լեռները. ար-
դէն երեկոյ էր, օրավարն էլ վերջանալու վրա
էր, Յովակը կարող էր վաղը սերմ ցցել և
այն՝ դարձեալ շնորհիւ իր բարկացկոտ հա-
րևանի, որի այսօրուայ օգնութիւնն այնքան
թանկ էր, այնքան ի դէպ, ժամանակին: Յո-
վակը լաւ էր ճանաչում Մարտօին. նա գիտէր,
որ այդ խիստ մարդը նաև նոյնքան բարի է,
այց և այնպէս նա չէր սպասում, որ վըր-
դովուած հարևանը կը մեղմանայ, նրան օգնու-
թեան կը գայ: Յովակն այս էլ էր վերագրում
Աստուծու գթութեանը, Նրա անսահման
ողորմութեանը դէպի անճարները, նեղեալ-
ները:

— Բարև քեզ, քի՛րվա, հնչեց նրա յե-
տևից մի ձայն. Յովակը յետ նայեց. Նրա ա-
ռաջ կանգնած էր Օրզզօն մի ուրիշ քրդի
հետ, երկուսով էլ լաւ զինուած. ի՞նչ էր նշա-
նակում այդ:

— Հազար բարի, քիրվա Ոըզգօ, պատասխանեց Յովակը կանգնացնելով եզները. տօ, քի՛րվա, չէ՞ քեզ ասացի՝ մի առ ժամանակ տանից դուրս չը գաս, ման չը գաս, ոտքդ հազիւ մի փոքր պնդացել է, շարունակեց Յովակը բժշկի և բարեկամի հոգացողութեամբ:

— Դէ, քի՛րվա, ի՞նչ անեմ, տան, բնտանիքի, ցաւ ու հոգսի տէր ենք, գիտես էլի՛, որ դուրս չը գամ, ապրուստ չի լինում, գլուխ պահել չի լինում:

— Հէչ չէ՛, մի քանի օր էլ համբերէիր, անա՛շէն: Չե՞ս կաղում:

— Մի քիչ, բայց ցաւը վերջացել է:

— Է՜հ, փա՛ռք Աստուծու. էդ թողնե՛նք. է, խէ՛ր ընլի, քի՛րվա:

— Խէ՛ր է, փա՛ռք Աստուծու, ասաց Ոըզգօն ընկերոջ վրա խորհրդաւոր ակնարկ գցելով. խեր չէ՛լած, ի՞նչ պիտի լինի. քեզ մօտ եմ եկել, տուն գնացի, ասին արտն ես, եկայ:

— Ի՞նչ կայ:

— Քիրվա՛ Յովակ, մենք աղ ու հաց ենք կերել միասին, ես չեմ կարող մոռանալ. աղ ու հաց մոռացողի աչքերը կը կուրանան. երէկ մի բան իմացայ, Ստամբոլից հօհմ (հրաման) է եկել, որ մեր կուրմանջները (քրդեր) ֆլաներին թալանեն: Էսօր է, էգուց է, ձեր գիւղում էլ մալ, ապրանք չի մնայ: Ուղիղ

ասած, սիրտս շատ է ցաւում քեզ համար․ դէ ես մենակ ի՞նչ կարող եմ անել մեր սաղ էլխաթի դէմ. միտք արի, վճռեցի գալ գոնէ այս բանը քեզ յայտնել, որ զգոյշ լինես. մէկ էլ... մէկ էլ... ասացի՝ գնամ քիրվայիս եզները բերեմ. դէ մի և նոյն է, որ ես չը տանեմ, ուրիշները կը տանեն, ափսոս են, լաւ եզներ են, ինչո՞ւ ուրիշները տանեն. Մատօ, դու եզներն արձակիր. քիրվայի մալը քիրվայինն է հալալ, այնպէս չէ՞, քի՛րվա ջան:

Այդ միջոցին Մատօն ամենայն հանդարտութեամբ արձակում էր եզները:

Յովակը լուռ էր. նա էլ չէր հասկանում թէ ի՞նչ է կատարւում իր շուրջը. այս անակընկալ հարուածից նրա ուղեղն այնպէս ցնցուեց, որ միտքը խաւարեց. յիշողութիւնից ջնջուեց ամեն բան՝ և՛ եզները, և՛ իր վարուցանքը, և՛ տունն ու զաւակները: Նրա մտքում մնաց միայն մի հատիկ լուսաւոր կէտ, ուր նստած էր Մարտօի գայրացած պատկերը, սրտումն էլ մի հատիկ զգացմունք, և այն՝ ամօթի, անծայր ամօթի զգացմունք. նա ամաչում էր Մարտօից, ամաչում էր իր վէճերի, իր յամառութեան համար և չէր համարձակւում իսկ նայել արտի հակառակ կողմը, ուր Մարտօն կանգնած էր իր եզների հետ: Կամաց-կամաց նա իրան վատ զգաց, գլուխը

պտըտուեց, տները գողգողացին, աչքերում լոյսը պակասեց, նա հազիւ էր նշմարում Մատօին, որ աշխատում էր արձակել Բօզօի սամաթելը։ Ցոլակը նստեց նուաղած. այդպէս լաւ էր. այժմ նա նորէն աչքերը վեր բարձրացրեց, Բօզօն արձակուած էր արդէն, լուծն ու արօրը ընկած էին ցելի մէջ։ Ցոլակը նայում էր այժմ Ուրդգօին երկա՜ր, երկա՜ր. քիւրդը յանկարծ շարժուեց. նա դեռ կաղում էր. այդ նկատեց Ցոլակը և այժմ նրա մըտքերն ուրիշ կերպարանք առան, նա յիշեց քրդի ոտքը, յիշեց այն բոլոր զոհերը, որ նա յանձն էր առել այս գաղանի բժշկութեան համար, խօմ մեղք չէ՞ր գործել, նա բարիք էր արել։ Մի՞թէ աշխարհում բարերարութիւնն այսպիսի վախճան է ունենում. ո՜, Ցոլակը երբէ՛ք, երբէ՛ք աշխարհն այդ աստիճան չար, այդ աստիճան ապերախտ, անամօթ ապերախտ չէր երևակայել։ Եզները տանում են, թող տանեն, ի՞նչ արժեն զոյգ եզները այն մեծ կորուստի առաջ, որ կրեց Ցոլակը. ի՞նչ արժէ նոյն իսկ ամբողջ աշխարհը, երբ կորաւ հաւատը, որ նրան մինչև այսօր ոյժ ու ոգի էր տալիս, հաւատը դէպի մարդը, դէպի նրա գէթ մի հատիկ առաքինութիւնը, դէպի նրա երախտագիտական զգացմունքը։ Մինչև այժմ Ցոլակն ուրիշ համոզմունք ունէր. նա հաւա-

տացած էր, թէ բարիքով գազանի մէջ կարելի է զսպել արեան անզուսպ ծարաւը. չէ՞ որ շունը սիրում է այն ձեռքը, որից փշրանքներ է ստացել, իսկ մա՞րդը... խօմ շնից վատ չէ՞ նա... բայց այժմ այս ի՞նչ է տեսնում, նա սխալուած է... Մարտօն իրաւունք ունէր... է՛ որ այդպէս է, որ աշխարհում իշխողը չարն է, միայն չարն ու գազանութիւնը, միայն անսիրտ, սև ապերախտութիւնը, էլ ինչո՞ւ ապրել, էլ ինչո՞ւ համար է չէն մնում երկնքի այս հաստատութիւնը, ինչո՞ւ նա փուլ չի գալիս և միանգամայն խորտակում այս մեղսալից աշխարհը: Ջրհեղե՞ղ... ի՞նչ սիրուն բան կը լինէր. մի անգամ խօմ եղաւ, մի հողի ազատուեց, թո՛ղ մէկ էլ լինի. ո՞վ կը պրծնի... «Մարտօն... Մարտօն... Մարտօն...» կրկնում էր նա անդադար ի պատասխան իր վերջին հարցին, նա արժանի է. հա՜, միայն նա է արժանի...

— Մստօ, Մստօ՛, վազի՛ր այն եզներն էլ արձակիր բեր, հնչեց Օրդօի ձայնը. Յովակը ցնցուեց, նա հասկացաւ, որ խօսքը Մարտօի եզների մասին է, այդ արդէն սարսափելի էր. Յովակն այդ տանել չէր կարող, իր եզները թո՛ղ տանեն, իր տունը թո՛ղ աւերեն, իրան սպանեն, կտոր-կտոր անեն, կամ նոյն իսկ ողջ ողջ խորովեն, քերթեն, իրաւունք ունեն,

ինքը մեղաւոր է, որովհետև չիմար է, աւա-
նակ է․ անպէտք մարդ է աշխարհում․ իսկ
Մարտօն... նա յանցանք չունի․ աշխարհն
ապերախտ է, ինքը Յովակը չի ուզում մաս-
նակից լինել այդ սև ապերախտութեան, թոյլ
տալով՝ որ իր բարերարի եզները տանեն․ ճ,
նա այդ չի թոյլ տայ, նա կը սպանուի, բայց
Մարտօի եզները իր արտից այս օր չը պիտի
տարուեն:

— Մի՛ շարժուիր, Մատօ, այն եզները դուք
չէք տանի, նրանք իմը չեն, ասաց Յովակը
քրդի առաջը կտրելով, բռունցքները սղմած
և դողդոջուն ձայնով:

— Աւելի լաւ, որ քոնը չեն, ուրեմն քո
բանն էլ չէ խառնուել այդ գործին:

— Իմ բանն է, և դուք այն եզները ա-
ռանց արեան չէք տանի, կրկնեց Յովակը
վճռական ձայնով: Ուրդօն սպրդնեց, նա այդ
չէր սպասում այդ խեղճ, ողորմելի Յովակից
որին միշտ այնքան հլու—հնազանդ էր տե-
սել․ ուստի ասաց զայրացած․

— Քի՛րվա, դու իմ համբերութիւնն
չարն ես գործ դնում, դու մոռանում ես, որ
մի ուրիշին ես այսքան չէի համբերի:

— Այժմ էլ մի՛ համբերիր, սպանի՛ր, փառք
Աստուծու տէրդ այժմ լաւացել է, բայց այն
եզները դու չես տանի:

Նա դողում էր, բռունցքները ջղաձգաբար ցնցվում էին. Նախկին Թոյլ, բարի Յովակը, որ մրջիւն անգամ կոխ տալ չէր կամենայ, այժմ կատաղած էր և պատրաստ էր անօրինակ յանդգնութեան. «Զե՛մ Թողնի՛», ճչում էր նա,

Մարտօն արտի հակառակ ծայրից երկար դիտում էր այդ տեսարանը. բայց երբ քրդերն արձակեցին եզները, երբ տեսաւ Յովակին, որ մենակ բռնել էր երկու գազանների առաջը, ասես՝ դարձեալ ամաչելով հարևանին կանչել օգնութեան, երբ վերջապէս տեսաւ, Թէ ինչպէս այդ խեղճը յուսահատական ջանքեր է անում՝ պաշտպանելու իր ընկերոջ եզները, ինչո՞վ... ի՞նչպէս... երկու բռունցքով ընդդէմ սրերի և հրացանների, Մարտօի սիրտն արիւնով լցուեց. նա Թողեց իր եզները, շտապեց դէպի կռուողները. բայց առանց մի բառ ասելու, անցաւ նրանց մօտից, հասաւ Յովակի եզներին, մէկի ականջից բռնելով՝ քաշ տուեց դէպի լուծը, ամենայն հանդարտութեամբ լծեց, ապա գնաց միւսին բերեց և լուծը վզին դրեց, նոյնպէս լծեց, մաճը ձեռքն առաւ ու քշեց։

Թէ՛ Յովակը և Թէ մանաւանդ երկու քրդերն այն աստիճան ապշած էին այս մարդու արարքի վրա, որ դադարեցին վիճելուց և

նայում էին, սպասելով՝ թէ ինչով կը վերջանայ այս բոլորը։ Բայց երբ Մարտօն հանդարտութեամբ վարել սկսեց, Ուրզօն առաջ անցաւ կատաղած, բռնեց նրա ձեռքը գոչելով՝

— Ի՞նչ ես անում։

— Վար եմ անում։

— Քեզ ո՞վ ասաց, որ լծես եզները։

— Իսկ քեզ ո՞վ ասաց, որ արձակես։

— Դրանք իմ քիրվայի եզներն են, ինձ կը հասնեն։

— Սրանք իմ հարևանի եզներն են, բայց ո՛չ քեզ կը հասնեն և ո՛չ էլ ինձ, նրանք անտէր չեն։

— Հեռո՛ւ, քեզ ասում եմ, ա՛նխելք Փլա։

— Հօ՜ հօ՜, Բօզօ, հօ՜ հօ՜ Կարմիր, շարունակեց Մարտօն քշել եզները, անուշադիր թողնելով քրդի վերջին հրամանը. այդ արդէն չափազանց էր. քուրդը կատաղեց, նա ցած բերեց ուսից հրացանը, բայց մինչև որ կը պատրաստէր, մինչև որ կուզզէր յանդուգն Փլայի վրա, վերջինս ձեռքն արագութեամբ իր կարճ արալի տակ տարաւ, դուրս քաշեց այնտեղից մի փոքրիկ, փայլուն բան և ուղղեց իր հակառակորդի կրծքին. տարճանակը որոտաց և Ուրզօն ռռնալով գետին գլորուեց հրացանը ձեռքին. բայց հէնց նոյն վայրկենին լսուեց մի երկրորդ որոտ և Մարտօն նոյնպէս

ընկաւ ակօսի մէջ. դա Մստօն էր, որ իր ընկերոջ վրէժը հանեց, յետեւից՝ դաւաճանի պէս, գնդակահար անելով Մարտօին։ Յովակը վազեց ընկաւ ընկերոջ դիակի վրա, մազերը փետելով, գլխին տալով. իսկ Մստօն շտապեց կապեց վիրաւոր Ուրգօին մի եզան վրա, միւսներն էլ առաջ առած, քշեց գնաց։

Արեւը մայր մտաւ. խաւարն իջաւ երկրի վրա. Մարտօն ծանր հառաչում էր, նա այլ եւս հարեւանին ցոյց չը տուեց իր հին սպին. աջ ձեռքը դրել էր թարմ, արիւնահոս վէրքի վրա եւ կարծես ուզում էր ասել. «Յովա՛կ, այս էլ չե՞ս տեսնում»։ Տարիների վէճը վերջացաւ. հեռացող եզները տխուր բառաչում էին, Մարտօն շարունակում էր ծանր տնքալ. Յովակն արտասւում էր, սպասելով՝ որ մէկն օգնութեան գայ՝ այս թանկագին բեռը տեղափոխելու համար. բայց խաւարն աւելի եւ աւելի թանձրանում էր, դաշտի ամայութիւնն ահաւոր դառնում. արդէն ուշ գիշեր էր, ահաւո՜ր, ճնշո՜ղ գիշեր. երկու հարեւանները մոռացուած էին ամբողջ աշխարհից։ Մարտօն կամաց-կամաց արնաքամ էր լինում. այդ զգաց Յովակը, մահու սարսուռ անցաւ նրա մարմնով. մէկ էլ չորս կողմը նայեց, լարեց իր տեսողութիւնը խաւարի մէջ՝ մի լոյս, մի ցոյց, մի ստուեր որոշելու համար. լարեց իր լսո-

ղութիւնը՝ ոտնաձայնը լսելու համար. իզո՜ւր և ապարդիւն ջանքեր. հեռուից լսուեց միայն գայլի չարագուշակ ոռնոցը, իսկ խաւարն ասես՝ էլ աւելի խտացաւ. ոչ ոք չը կար, ո՛չ մի օգնութիւն այդ ահաւոր խաւարի, այդ խուլ ամայութեան մէջ. մ ե ն ա կ էին հարեւանները՝ գազաններով շրջապատուած: Յովակն զգաց, որ այնտեղ, ուր արիւն է հոսում, արտասուքն աւելորդ է և անօգուտ, գ ո ր ծ էր հարկաւոր՝ եղբօրը փրկելու համար: Ուստի նա վերկացաւ, գերմարդկային ոյժ գործ դրեց, առաւ իր մէջքին թանկագին բեռը և շարժուեց դէպի գիւղը:

Ճանապարհը երկար էր և սարսափելի, խորդուբորդը շա՜տ, խաւարը թանձր, հոգեմա՜շ. Յովակն ընկնում էր, բայց կրկին վեր էր կենում և խարխափելով շարունակում էր առաջ գնալ. Նրան ոյժ էր տալիս այն յոյսը, թէ շուտով արշալոյսը կը ծագի, խաւարը կը չքանայ, ընկերը կը փրկուի, և նա դնում էր աչքերն անդադար արևելքին յառած:

— «Օ՜, երբ կը բացուի արշալոյսը». մտածում էր նա:

1898

# ԱՔԱՂԱՂԸ

*Այն ժամանակ գունատ կարապը իր արցունքէ բնի մէջ սկսեց մահու տխուր մեղեդին:*

Շէքսպիր

---

Այն օրը զարհուրելի անցքեր անցան Հ... գիւղի գլխով: Օրը ցերեկով քնեց այդ գիւղը, ընդ միշտ քնեց, միանգամից քնեց. այնպիսի՜ ժամանակ էր: Վրա հասաւ մռայլ գիշերը. զարմանալի է, թէ ինչո՞ւ այնքան մռայլ են լինում մեծ ոճիրներին յաջորդող գիշերները. բնութիւնն ուրեմն կոյր, անգիտակից ույժ չէ, նա գիտակցական, քնքոյշ մայր է ամենքին, բարիներին և չարերին: Թշուա՜ռ մայր, որ ամաչում է իր զաւակների ոճիրներից և թանձր քօղով է ծածկում զարհուրելի պատկերը. կամ գուցէ երկնքի ու երկրի մէջ սրբութեան մի մրցութիւն կայ, երկիրն էլ է աշխատում նոյնքան սուրբ լինել, որքան երկինքն է, անբիծ, անարատ, արդար, ճշմարիտ:

Խե՜ղճ, անհուն դարերից նրա այդ նուիրական ճիգերն ապարդիւն են անցնում սկսած այն օրից, երբ մարդ արարածը սկսեց իր յանցագործութիւնը. և ամեն անգամ, երբ մարդկային մի նոր ոճիր պղծում է երկրի երեսը, երբ մի նոր անարդարութիւն է կատարւում այստեղ ներքեւում, խեղճ մայրն իսկոյն քաշում է իր վրա խաւարի թանձր քօղը, որպէս զի երկինքը չը տեսնէ, և այսպէս դարե՜ր... և ո՞վ գիտէ, դեռ մինչև երբ...

Այսօր առանձնապէս թանձր էր խաւարը: Հողեմաշ ամայութեան վրա իշխում էր «մեծ լռութիւնը», որ միշտ դարմանալի անցքերի պատմութիւն գիտէ և յայտնի չէ, թէ ինչո՞ւ և ո՞ւմ համար է պահում. ժամանակի հետ համրութեան դաշն են կռում և գլորում դէպի յաւիտենականութիւն: Քանի՜ քանի անցքեր մեր երկնքի տակ այսպէս անցել են գնացել: Հ... գիւղի վրա էլ այդ օրը իշխա- «մեծ լռութիւնը» իր հետ ունենալով ամայութիւնն ու խաւարը. և սրանցից վեր, սև տարածութեան մէջ մեռելութեան շունչն անտեսանելի կերպով խաղում էր ցուրտ, սպանիչ խորհրդաւորութեամբ. և այս բոլորը մարդու գործ էր, նրա ձեռքով կատարուած. երկինքն ու երկիրը տխուր հանդիսատեսներ էին, ամաչում էին...

Ամայութիւնը սարսափի մայրն է, որովհետև մահուան շունչ է փչում ամայութիւնից. կենդանին ե՞րբ չէ վախեցել մահից. գոնէ մի ձայն հնչէր, մի հատիկ ձայն. ինչո՞ւ, ի՞նչ արժէ մի ձայնը «մեծ լռութեան», այս սպանիչ խաւարի մէջ, մի՞թէ մի ձայնը կարող է լցնել այս զարհուրելի դատարկութիւնը: Խուլ սարսափի ժամին ո՞վ է քնում, ո՞վ է դատում. Թող մի ձայն լինի, դա կենդանութեան նշան է. ի՞նչ փոյթ, թէ որտեղից է գալիս, բաւական է որ ձայն լինի, նա կարծես կը մեղմացնէ խաւարի մէջ իշխող մեռելութեան ցուրտը, էլ սիրտ չի ճաքի, էլ հոգի՝ չի ցաւի, խաւար մթնոլորտն էլ այնպէս չի խեղդի, այնքան ծանր չի լինի:

Բայց ո՞վ պիտի հանէ այդ ձայնը. գիւղում կենդանի շունչ կա՞յ. ո՞վ գիտէ, գուցէ և կայ. ի՞նչպէս սիրտ անի, ձայն հանի. միակ կենդանի շունչը ընդհանուր մեռելութեան մէջ նոյնպէս մեռնում է ահից. կենդանի էակը խաւար լռութեան մէջ իր նմանին գտնելու յոյսով է ձայն հանում, այլապէս նա չի համարձակուի ճչալ: Հե՞շտ է, յանկարծ սարսափելի ամայութեան մէջ հնչուած ձայնը մեռնի մենակ, անպատասխան. դա սոսկալի է մահից:

Ձայն չը կայ, լուռ է գիւղը, շուն չի հաչում, կատու չի մլաւում, դուռ չի ճռռում,

մարդ չի հաչում, երեխայ չի ճչում, ոտնաձայն չը կայ. քնա՞ծ են ամենքն արդեօք. բայց մի՞թէ քնած գիւղն այսպէս մեռնում է, սա ի՞նչ քուն է... Խաւար է, դժուար է իմանալ, ոչինչ չի երևում, միայն լռութիւն և ամայութիւն: Կէս գիշերային հովն է միայն իր սովորական անհոգութեամբ փչում մեղմով, ինչ որ շշուկ, ինչ որ փսփսոց բարձրացնում, կամաց՝ ինչպէս դաւադրութիւն, խորհրդաւոր՝ ինչպէս ոգիների զրոյց. նա էլ է գիտակից լռութեան տակ ծածկուած գաղտնիքին, նա նոյն իսկ պատմում է ինչ որ բաներ, բայց նրա լեզուն դուցէ միայն աստղերին է հասկանալի, դա գերմարդկային լեզու է:

Ահա վերջապէս մի ձայն, աքաղաղը կանչեց, մի հաստ աքաղաղ, բարձր, զիլ ձայնով: Ո՞վ չէր ճանաչում այդ աքաղաղին. դա Մէլիքենց աքաղաղն է. մեծ, փետուրները մուգկարմիր, պոչը փառահեղ կանաչ. ամենից աւելի գեղեցիկ, ամենից աւելի կռուան, ամենից առաջ կանչող. այսպէս էր այդ աքաղաղը: Այսօր էլ նա կանչեց առաջինը բոտ իր սովորականին: Խղճուկ թևաւորի մի ճիչ էր այն, որ դուրս եկաւ Մէլիքենց գոմից, լայնատարած արձագանքներով կրկնուեց «քնած» գիւղի վրա և մեռաւ խաւար հեռաւորութեան մէջ: Կրկին լռութիւն, որ այս անգամ

էլ աւելի անաւոր դարձաւ, որովհետև այդ մի
ձայնին ուրիշները չը յաջորդեցին. մի՞թէ այս
գիւղում մի աքաղաղ կայ միայն, մի հատ կենդա-
նի շունչ, այն էլ աքաղա՛ղ... սարսափելի՜ է։

Ողորմելի Թռչունն ինքն էլ վախեցաւ, ինչ-
պէս կարող էր վախենալ մի աքաղաղ։ Նա մեծ
խիզախութիւն չունէր, բայց բնազդը նրան չա-
րագուշակ բաներ էր ասում. նա զգում էր,
որ երէկ գիշեր այս ժամին իրերն այսպէս
չէին ընթանում աշխարհում։ Նա գիտէր, որ
իրանից անմիջապէս յետոյ սովորաբար հա-
ռևանենց աքաղաղը պիտի ձայնէր, մի բան,
որ նրան սաստիկ կատաղեցնում էր և այդ
պատճառով նա երկրորդ անգամ իր հակա-
ռակորդի ջիգրու էլ աւելի ուժգին, էլ աւելի
բարձր էր կանչում։ Բայց այսօր հակառակոր-
դի ձայնը չը կար, աքաղաղն սպասում էր
զարմացած։ Լռութիւնը չարագուշակ էր։ Այդ
էլ երկար չը զբաղեցրեց մոռացկոտ Թռչունին.
նա նոյն իսկ անհոգ կերպով, ախորժ տրամա-
դրութեամբ փորձեց գուրգուրել իր ամենից
սիրելի ամուսնուն, այն սև հաւին, որ միշտ
աջ կողքին էր տեղ բռնում Թառի վրա և
սեգ ամուսնու վաղորդեան առաջին գուրգու-
րանքները վայելում հպարտութեամբ։ Աքա-
ղաղը մեկնեց իր աջ Թևն ու կտուցը, բայց
ապշած մնաց, կողքը դատարկ էր, ընկերու-

հին չը կար. Նա վշտացած ու զայրացած դարձաւ դէպի ձախ կողմի ընկերուհին, դարձեալ դատարկութիւն: Լուռ ու դատարկ էր նրա շուրջը, լուռ էր նաև իր հակառակորդը: Ժամեր անցան. կենդանին մոռացաւ կարծես իր միայնութիւնը և պատրաստուեց երկրորդ անգամ կանչել: Նա թափահարեց իր թևերը և կանչեց ուժգին. ձայնը կրկին արձագանքներով կրկնուեց խաւար տարածութեան մէջ և մեռաւ հեռո՜ւ, հեռո՜ւ, միայնակ, անպատասխան:

Աքաղաղը սպասում էր: Նա գիտէր, որ իր երկրորդ կանչից յետոյ գոմի դուռը ճռռալով կը բացուի, ներս կը գայ հօտաղը քթոցը շալակած, անասունները փնչացնելով ոտքի կը կանգնեն, նրանց կեր տալու ժամն է այն: Նա լաւ կանչեց, ուժգին, լի կոկորդով, այնպէս որ կարող էր ամբողջ գիւղը զարթեցնել և սակայն դուռը չը ճռռաց, հօտաղը չեկաւ, անասունները չը շարժուեցին, գոմը զարմանալի լուռ էր: Ի՞նչ էր պատահել, թռչնի ուղեղն այդ հասկանալ չէր կարողանում, սակայն նա սկսում էր վախենալ, այդ ամայութիւնն ու լռութիւնը նրան վախ էին ազդում, բնազդը նրան ասում էր, որ ինչ որ վա՜տ, շատ վատ բան է կատարուել, աշխարհի կարգը խանգարուել է, և թռչունը փոքրացաւ, կծկուեց, տխրեց...

Հասաւ երրորդ անգամ կանչելու ժամանա-
ը, որից յետոյ գիւղը կամաց կամաց պիտի
ոքի ելնէր: Ահա աքաղաղը կրկին Թափ ի
Թափ տուեց իր Թեւերը, բարձրացրեց, ձգեց
կարանոցը և կանչեց քանի ույժ ունէր, երկա՜ր
ի՜լ: Կանչեց և սպասեց: Նրանից յետոյ առա-
ին զարթնողը գիւղում քահանան պիտի լի-
էր, նա պէտք է դուրս գար դռնից աղօթք
րմնջալով վաղորդեան կիսախաւարի մէջ:
Մեծ երկփեղկանի դռան բացուելու և փա-
ուելու Թրխկոցը հասնում էր նոյն իսկ մին-
և Մէլիքենց տունը, աքաղաղն էլ էր լսում
ույդ Թրխկոցը, որ նրա համար այնպէս սովո-
ական էր դարձել: Դրանից քիչ յետոյ լսւում
ր գիւղական եկեղեցու կոչնակների ձայնը, որ
եղմ, Թրթռուն հնչիւններով առաւօտեան
ով զեփիւռի Թեւերի վրայ տարածւում էր
նած գիւղի վրայ, որպէս երկնային օրհնաբեր
եղեդի: Այդ ձայնից զարթնում էր. ամենքը՝
ղօթաւորներն ու աշխատաւորները. Ծեր
երանները յօրանջելով աղօթքներ էին մրմըն-
ում, պառաւները խաչակնքում էին երեսները
անդակների ամեն մի զօղանջիւնի հետ և
իսախաւար փողոցների միջից, ինչպէս ու-
ուականներ, դիմում էին դէպի Աստուծոյ
ունը: Տների մէջ էլ կեանք ու շարժում էր
կսւում:

Սակայն այսօր ոչ քահանայի դուռը թրըխկաց, ոչ զանգակի ձայնը լսուեց։ Ո՞ւր էր քահանան, ինչո՞ւ էր լուռ կոչնակը, ի՞նչ էր պատահել, այդ էլ չը կարողացաւ հասկանա աքաղաղը, բայց կրկին երկիւղի բնազդը խօսեց նրա մէջ. այսպէս չէր երէկ գիշեր։ Այ անգամ նա սկսեց կանչել անընդհատ, իրա վրա։ Այն ժամն էր, երբ հովիւը պիտի դուր քշէր իր հօտը, նրա սրնգի մելամաղձոտ ձայնը մեղմիկ, լալկան եւեւէջներով սովորաբար նախ հնչում էր գիւղին մօտիկ, ապա կամաց կամաց իր հօտի հետ միասին հեռանում էր դէպի դաշտերն ու լեռները։ Նրան հետեւու էին հօտաղ-տաւարածների խմբական երգերը գութանների և սայլերի ճռինչը, անասունների բառաչը։ Գիշերային հանգստից լեռ առաւօտեան կիսախաւարի մէջ գիւղն ամբողջ ասես ձգձգւում, յօրանջում էր ամենօրեայ աշխատանքը վերսկսելու համար։ Աքաղաղն այսօր կանչում էր և սպասում մէ ընդ մէջ։ Սրինգ չը կար, հովիւ չը կար, հօ չը կար. հօտաղներն այսօր չէին երգում, գութանները չէին շարժւում, սայլերը չէին ճռնչում, լուռ էր ամեն ի՛նչ։

Աքաղաղն էլ լռեց խապառ յուսահատուած Նա այժմ կուզէր ցած իջնել թառից, բայ վախենում էր, որ իջնել այդ լռութեան մէջ

այդ սարսափելի ամայութեան մէջ, չէ՞ որ նա էլ կենդանի էր, կեանք էր փնդրում։ Օ՜, գոնէ շուտով լոյսը բացուէր, գոնէ մի բան տեսնէր խեղճ թռչունը. բայց այսօր լոյսն էլ ծանր էր գալիս և խաւարը կարծես հեռանալու, չքանալու միտք չունէր։ Վատաբաղդ թռչնի ուղեղն էլ էր աշխատում, աքաղաղը մտածում էր երևի, ինչպէս որ կարող էր մտածել մի թռչուն, բայց հարց՚րը ծանր էին նրա ողորմելի ուղեղի համար։ Նա չը գիտէր, թէ ինչ է պատահել գիւղին, ո՞ւր են իր ընկերուհինները, ինչո՞ւ է ինքը մենակ, ինչո՞ւ չի դուրս գալիս քահանան, ինչո՞ւ է համրացել կոչնակը, ո՞ւր է հովիւը, ո՞ւր է նրա հօտը, ո՞վ տարաւ, ո՞վ թալանեց, հօտաղներն ինչո՞ւ չեն երգում, ո՞վ նրանց պապանձեցրեց այդպէս անսիրտ կերպով, մի՞ գուցէ քնած են ամենքը, այդ ի՜նչ երկար քուն է այսօրուայ քունը։ Ողորմելի թռչունը չէր յիշում իր աչքով տեսածները։

Սարսափելի՜ բան էր. ո՞վ էր կենդանի թողել այդ մի շունչը. ընդհանուր մեռելութեան մէջ ինչի՞ պէտք էր այն։ Խօսի՜ր խեղճ թռչուն, տե՛ս, ձայնդ մինչև երկինք կը հասնի՞... Եւ աքաղաղը կանչում էր ու կանչում. ո՞ւմ պիտի զարթեցնէր, շրջապատի քունը ծանր էր, յաւիտենական, և նրա ձայնն անզօր, թոյլ. բայց կանչում էր իր թառի բար-

ձրութիւնից բուռն թափով, կանչում էր ուժգին քանի կարող էր, գոնէ այդպէս էր թւում նրան. և իրօք թւում էր միայն, որովհետև նրա ձայնն այժմ կոկորդից դուրս էր գալիս մի տեսակ ողբագին, նուագած, լալագին: Նա էլ թևերը չէր թափահարում, էլ հպարտ չէր իր հնչուն ձայնով, միայնութիւնը և լռութիւնը խորտակեց նրան, նա կանչում էր և կծկւում, գլուխը քաշ գցում, ասես թէ խորհում էր, տխուր էր:

Մ՛.կ էլ յանկարծ մի ոտնաձայն լսուեց գոմում. վերջապէս նա էլ մենակ չէր. մէկը ներս մտաւ. աքաղաղն ույժ առաւ, քաջալերուեց, այս անգամ վերջապէս նա թափ տուեց թևերը և իսկապէս կանչեց իր լաւ օրերի պէս, կանչեց և ցած թռաւ թառից: Երկու աչքեր էին փայլում գոմի կիսախաւարի մէջ, պաղ, պսպղուն, սարսափելի աչքեր: Աքաղաղը տեսաւ. հասկացա՞ւ արդեօք, թէ ի՞նչ էին ասում այդ աչքերը. գուցէ, որովհետև նա նորից փորձ փորձեց թառը բարձրանալ, սակայն իզո՜ւր, երկու աչքերը մօտեցան, տաք շունչը փչեց թռչնի վրա, նա հազիւ կարողացաւ վերջին անգամ մի տխուր ճիչ արձակել գայլի բերանում:

Վերջացաւ. Հ... գիւղում էլ ոչինչ չր կար, էլ ոչ ոք չր կար...

1899

# ՄԱՅՐԵՐԸ

«Շատ ձմեռների սառնամանիքներ հալուեցին, հասաւ գարունը, եկան ծիծեռնակները, կենցաղասէր մարդիկ տեսան և խնդացին, բայց նրանք երբեք չը կարողացան տեսնել իրանց սիրելիներին»:

Եղիշէ

I.

Գիւղական փոքրիկ եկեղեցու կիսախաւարի մէջ խնկի ծուխը պարանպարան բարձրանում էր այն երեկոյ և բակ կապում փոքրիկ լուսամուտների շուրջը: Կանթեղի աղօտ լոյսի առաջ քահանան մռմռալով քաղում էր աղօթքները և բազմաթիւ ժամաւորները մերթ գետնատարած խոնաւ խսիրների վրայ, մերթ ոտքի կանգնած ու բազկատարած՝ մրմնջում էին մի ընդհանուր ու խուլ մռմռոց հանելով: Կանանց բաժնում սևացած սեան վրայ կա-

խուած էր Աստուածածնի նկարը մի մգլած, դեղնած շրջանակի մէջ և նրա առաջ կանգնած էր մի տարիքաւոր կին՝ Սուսանը։ Այդ կինը և այդ նկարը երկու մայրեր էին, որոնք նայում էին իրար ակնապիշ և կարծես ջանք էին անում հասկանալ միմեանց մտքերը, կարդալ միմեանց սրտերը։ Տիրամայրը վերևումն էր՝ սեան վրայ, Սուսանը ներքևում՝ գետնի վրայ. մէկը սուրբ էր, կարող և հրաշագործ, միւսը՝ խեղճ, վշտահար, անզօր մի պառաւ, որ եկել էր նրա առաջ լաց լինելու, աղերսելու։ Միածնի փոքրիկ, գանգրահեր գլուխը սղմած իր կուսական կրծքին, Աստուածամայրը խանդաղատանքով ու ժպտով նայում էր վար, իր ոտների տակ սողացող, գալարուող բազմութեանը, նայում էր նոյն ժպտով նաև Սուսանին, որ եկել էր ցաւոտ կուրծքը նրա առաջ բանալու։

Շրջանակի վրայ վեց փոքրիկ, գալար մեղրամոմեր, վշտատեսիլ ու դեղին, պլպլալով վառւում էին և գունատ ու խորհրդաւոր լուսով՝ երերուն, աղօտ փայլ էին տալիս Աստուածամօր հեզ դէմքին, փոքրիկ Քրիստոսի լիքը, ձիւնափայլ մարմնին, որ այդ փայլի մէջ լողում էր ինչպէս մուգ լճի վրայ վաղորդեան մշուշի մէջ լողացող սպիտակ կարապը։ Խնկի ծուխը չորս կողմէց կաթնագոյն քու-

լաներով զարդարում, պտոյտներ էր կազմում աստուածային մօր և զաւակի շուրջը և կարծես աշխատում էր իր ծալքերի մէջ պարուրել և վեր տանել այդ երկնային զոյգը. չէ՞ որ նրանք այնքան շատ բան ունէին պատմելու աշխարհից, այնքան արցունքներ Ամենակալի գահի առաջ փռելու։

Վաղուց էր այնտեղ կանգնած Սուսանը։ Եկեղեցու զանգի ձայնը լսելուն պէս նա եկաւ, հասաւ, իր դողդոջուն ու պառաւ մատներով մեղրամոմերը կպցրեց այրուած, սևացած շրջանակին, համբուրեց, երեսը խաչակնքեց և քարացաւ իր տեղում։ Մոմերի կէսն արդէն վառուել էր և Սուսանը կանգնած էր դեռ միևնոյն տեղում, արտասուաթոր աչքերը չէր հեռացնում Տիրամօր պատկերից, դողդողացող շրթունքներից բառերը թափւում էին, հա՛ թափւում, կրակի խօսքերը, ցաւի, աղերսանքի, պաղատանքի խօսքերը—Սուսանը աղօթում էր։ Արտասուքի կաթիլները ժայռի վրայ փշրուող վտակի ցնցուղների պէս յորդառատ դուրս էին ցայտում աչքերից և գլորւում ծեր դէմքի խորշումների վրայով, ու փոքրիկ հոսանուտ ակօսներ կազմում աչքերի տակից մինչև ծնօտը։ Սուսանն աղօթում էր իր միակ որդու, իր զարիբ, թափառական

Սաքօի համար, որ քանի մի օր առաջ թողեց, գնաց դէպի մութ անյայտը, դէպի հեռուն...

«Ո՛վ սուրբ Տիրամէր, ասում էր նա, բոլոր ցաւոտ սրտերի, բոլոր վշտացած հոգիների, բոլոր մղկտացող մայրերի դու գթոտ մայր, ձեռքս քո փէշն եմ ձգել, էրուած, մորմոքուած սիրտս բերել եմ քո սուրբ ոտների տակ դնելու. բա՛ց այն, Տի՛րամէր, տես, արցունքը մի կողմ, կրակը միւս կողմն են բռնել սրտիս և արցունքը վառ կրակը մարել չի կարողանում, բոցերը շա՜տ են. բա՛ց այն ու նայիր՝ անճարների մայր, չէ՞ դու սրտերի կրակը հասկանալ, զգալ գիտես, տես ինչեր կան իմ եփուած սրտում, ու յետոյ մի ճար, մի դարման, ողորմած, ողորմած Թագուհի։ Իմ ծով մեղքից էս ծեր օրերիս փալազը մի դաղ քաշեց սրտիս, մի խորը դաղ և էրուած տեղը դեռ մխում է, մխում. դու խօ տեսար, սուրբ մայր, թէ էն մէկ չիւանս, սարի պէս տղամարդ, ինչպէս կտոր կտոր արին անօրէնները. ա՜խ ցաւով ծնած, մեծացրած զաւակիս էս կոտրած ձեռներովս արիւնոտ գերեզման իջեցրի։ Ի՞նչ անեմ, գուցէ իմ մեղքից, գուցէ Աստուած էր վրաս բարկացել։ Այս մէկն էլ գնա՜ց... մղկտացի, աղաչեցի, լաց եղայ, ձեռք ու ոտքն ընկայ, որ չը գնայ, բայց գնա՜ց... Թէ ո՞ւր, այն դու ինձանից լաւ գիտես, Տի-

բամէր... հեռու սարերում, ձորերում քարը՝ բարձ, ժայռն՝ անկողին, օձերի հետ ջուրը, գազանների հետ բունը կիսելով՝ Նա թափառում է և ես անտէր, անտիրական, ձեռքս չոր գետնին, սիրտս՝ դող, հոգիս՝ ցաւած, օրս՝ սև, թաց աչքս դրանը բռնած գիշեր, ցերեկ մղկտում, վշվշում եմ։ Տիրամէր, ողորմած մէրիկ, քո տուն եմ եկել, ես էլ չեմ տեսնում Նրան, դու անշուշտ տեսնում ես, ա՜խ, քո բարի, քո ողորմած, քո քաղցր աչքը Նրանից մի՛ հեռացրու, քո սուրբ հովանին ամպի պէս Նրա գլխից պակաս մի՛ արա, չարից, ցաւից, դարդից, արիւնից Նրան ազատ պահիր, չէ՞ դու կարող ես, չէ որ թէ դու ուզես, մութ ամպն էլ Նրա գլխով չի անցնի։ Սրտիս վրայ էլ սաղ տեղ չի մնացել, ողջ խոցոտուած՝ պատառ-պատառ է եղած, էլ տեղ չը կայ նոր դանակ մխելու, էլ տեղ չը կայ մի նոր դաղ քաշելու, էլ ճար չը կայ նոր խոց բանալու․ Նրա սև յատակում, ինչպէս սև լճը մութ այրում, արիւնը ծով է կապել ու ցաւերիս բոցերից եռ է գալիս, պղպճում ինչպէս լի կաթսան օջաղի վրայ։ Փրկիր նրան, իմ գաւակին, Տիրամէր, բարեխօս եղիր Նրա մօտ, որ այնպէս սիրով գրկել, սղմում ես քո սուրբ կրծքին․ տես նա ինչպէս փարում է քո մայրական ստինքներին, ինչպէս ուզում է լսել

քո սրտի ձայնը, մա՜յր, մա՜յր, ախր ես էլ եմ մայր, ես էլ սիրտ ունեմ, կուրծք ունեմ, մայրական կաթովս քանիսին կերակրեցի, կրծքիս վրայ քանիսին ջերմացրի և էլ չը կա՜ն, չը կա՜ն, ոչ մէկը չը կայ, ութ ծնունդ նստեցի, ութ երկունք քաշեցի, և այժմ էն մէկն է։ Ի՞նչպէս դիմանամ, սուրբ Տիրամէր, կուրծքս չոր է, սիրտս մարած, մոխիր դարձած դարդի բոցից, սպիտակ մազերիս վրայ սև կապած, մէջքս երկու տակ ծալուած, մեռայ գերեզմանները լիզելով, չոր հողը գրկելով իմ շարան-շարան արնակոլոլ մեռելների ու չը կայ մէկը, որ սղմեմ կրծքիս, չը կայ մէկը, որ իմ սրտի ձայնը լսի, չէ՞ ես էլ խեղճ եմ, մեղք եմ, մայր եմ, պառաւած, անզօր մայր, ո՜վ դու բոլոր Թշուառների, խեղճերի, անճարների ողորմած մա՜յր։ Ուխտ եմ անում քո սուրբ պատկերի առաջ, Թո՛ղ լսի ինձ մեր ամենի տէրը, սուրբ Աստուածորդիդ, ամէն երեկոյ այստեղ քո առաջը կը վառեմ վեց մոմը, կ'ընկնեմ, կը լիզեմ սառը հողը. անճարի պէս փէշերից կը կախուեմ, քեզ հանգիստ չեմ տայ, քո աչքից չեմ հեռանայ, այստեղ կը ճչամ, կը սգամ, կը լամ, կ'աղաղակեմ երկընքովը մէկ, որ դու ինձ լսես, որ իմ միակ զաւակին փրկես, պահես, պաշտպանես։ Օ՜, ողորմած Տիրամէր, քո սիրտը լայն է, սէրդ՝

անչափ, մենակ նրան մի հասիր, աղաչում եմ, նախ հասիր բոլոր ուրիշ անճարներին, խեղճերին, նեղեալներին, քեզ կանչողներին, որ այնքան շատ են մեր վէրան աշխարհում, մեր սև երկնքի տակ, ամենից վերջը միայն իմ ձայնը լսիր, մեղաւոր սրտիս խնդիրը կատարիր, մայր, մայր, բոլոր վշտացած հոգիներին, անտէր-անճարների ողորմած մա՛յր»:

Մոմերը մէկիկ-մէկիկ այրուեցին ու մարեցին, Աստուածածնի և Քրիստոսի դէմքերը կամաց-կամաց լուծուեցին ու կորան խաւարի մէջ. քահանայի ձայնը լռեց, աղօթաւորների մրմունջները դադարեցին, եկեղեցին դատարկուեց, կանանց բաժնից էլ սպիտակ չարսաւաւոր ստուերներն իրար յետևից մեղմով դուրս գնացին. Սուսանն այնտեղ մնաց մենակ և դեռ աղօթում էր, դեռ նա աչքերը վար չէր բերում Տիրամօր պատկերից, դեռ չորացած բազուկները տարածած նա օգնութիւն, գթութիւն էր աղերսում և լալիս էր ու լալիս...

— Ո՛րդի, ա՛յ Սուսան խաթուն.

Սուսանը շարունակում էր աղօթքը, այժմ նա ծունկ էր չոքել և չէր տեսնում, թէ ինչ է կատարւում իր շուրջը, չէր էլ լսում ոչինչ:

— Սուսան խաթուն, ուշ է, ժամը պրծաւ, որդի:

Կինը գլուխը բարձրացրեց, խօսողը ծերունի քահանան էր։

— Տէրտէր ջան, աչքդ մեռնեմ, աղօթում եմ։

— Հա, որդի, գիտեմ, որ աղօթում ես, լաւ ես անում, թող Աստուած լսի, ասում եմ, որ ժամը պրծաւ, էլ մարդ չը կայ, տե՞ս։

— Դու գիտես չէ՞, հայր ջան, էն մէկն էնպէս բէմուրազ եղաւ, մէկէլները գնացին, արեան ծով էր, խեղդեց բոլորին, էս մէկն էլ չոլերն ընկաւ, ես եկել եմ Աստուածածնի փէշերից կախուել։

— Լաւ ես անում, զաւակս, լաւ ես անում, բայց ուշ է արդէն։

— Գիտե՞ս, հայր ջան, չեմ թողնի, չեմ թողնի նրա փէշերը. ամէն օր էսպէս կը գամ, ես ինչ եմ արել, որ էսքան սեւը մենակ քաշեմ, որ էսքան ցաւը մենակ ինձ տան, մեղք չե՞մ, մայր եմ էլէ՞, սա էլ մայր է, էս Տիրամէրը, տես, տես ինչպէս գրկել է իր զաւակին, տես ինչպէս սղմում է կրծքին, իսկ ես ոչ ոք չունեմ, ոչ ո՛ք։ Դու գիտես չէ՞, տէրտէր ջան, չէ՞ քեզ հետ դրինք հողը արնակոլոլ զաւակներիս։

— Հա՛ հա՛, որդի, դէ հիմա բաւական է, մնացածն էլ էգուց։

— Տէրտէր, ոտիդ մեռնեմ, դուման բռնեց

իմ գլխին, ի՜նչ դուման, սար ու ձոր մթնեց. էս չար օրերին, էս չար ժամանակին, նա էլ թողեց, գնա՜ց... ես էլ ո՞ւր գնամ, չոր գլուխս ո՞ւր տանեմ, դէ Տիրամէրն այստեղ է, ամեն օր կը գամ, մոմ էլ կը բերեմ, կիրակիներն էլ թազայ հաց կը թխեմ, կը բաժնեմ, մատաղ կ'անեմ, արցունք էլ դեռ ունեմ, աչքերս դեռ չեն մարել, ա՜յ էս հողը կը թրջեմ, դէ նա էլ մայր է, սիրտ ունի, սրտի մռմուռը կը հասկանայ, մի ճար կ'անի, էնպէս չէ՞, հայր ջան։

— Այդպէս է, որդի, ամեն օր արի, աղօթիր, Տիրամէրը ողորմած է, բարեխօս կը լինի, իսկ հիմա գնանք, տես այսօր ուշ է, մոմերդ մարել են։

Սուսանը կարծես միայն այժմ նկատեց, որ մոմերը վառուել, վերջացել են, նայեց վեր, խաւարի մէջ, սեան վրայ պատկերներն էլ չէին երեւում, էլ Աստուածածնի կարմիր պարեգոտը և կապոյտ ծածկոցը չէր նշմարւում, էլ նրա հեզ աչքերը ժպտով չէին նայում վար, փոքրիկ Քրիստոսի ձիւնաթոյր մարմինը եկեղեցու խաւարամած մթնոլորտում էլ չէր լողում մի կտոր ճերմակ ամպի պէս, այդ բոլորի փոխարէն, փոքրիկ, ծխոտ շրջանակի մէջ հազիւ նշմարւում էին մի քանի անորոշ բծեր, մութ ստուերներ։

Սուսանը խաչակնքեց երեսը ու կամաց-կա-

մաց երերալով դուրս գնաց։ Քահանան կանգնած նայում էր նրան յետեւից և երբ այդ փոքրիկ, դողդոջուն ստուերը իսպառ ծածկուեց դրսի խաւարի մէջ, նա գլուխն օրօրեց խորհրդաւոր ձեւով։

Խե՜ղճ կին, ասաց նա կամացուկ, ի՞նչ է լինելու վերջը, խելքն արդէն կարծես տեղը չէ. փառք քեզ Աստուած, հազար բերան փառք։

Դուրսը մութ էր։

## II.

Էլի գարուններ եկան բոլորեցին Սուսանի գլխով, էլի դաշտ ու ձորեր ծաղիկներով ու կանաչներով ծածկուեցին։ Բակի մի հատիկ խնձորենին մի քանի անգամ ծաղկեց և բուրմունք արձակեց իր շուրջը, պատերի նեղ ճեղքերի մէջ ճնճղուկները բուն դրեցին և ձագեր հանեցին. հօտերն ու նախիրները դաշտերը կենդանացրին, իսկ արագիլներն արդէն մի քանի անգամ չուեցին հեռու, հեռու և կրկին վերադարձան։ Էլի աշուններ եկան իրանց վը-հատեցուցիչ քամիներով և ծառերի տերեւները լիզեցին, թռչուններն ահագին ու տխուր երամներով թողին ու հեռացան դեղնած դաշտերից. կռունկները վշտոտ կղղոցով սեւ ցելերի վրայ հատիկներ մուրալով երկնքի երեսից

անցան, բայց Սուսանի որդին չը կար ու չը կար։ Մենակ էր Սուսանն իր խրճիթում, մենակ ու մոռացուած. Նրան մխիթարիչ ու ընկեր մնացել էր իրանց ծեր շունը, որ իր տիրուհու պէս այնքան բաներ էր տեսել և նրա պէս կարծես սպասում էր մէկին։ Երբ գարնանը բակի խնձորենու վրայ առաջին կոկոնները բացւում էին, Սուսանը նայում էր ուշադրութեամբ ծառի ճիւղերին և դառնում իր ոտների տակ թաւալող շանը։

— Բօղար, խնձորենին ծաղկել է, շուտով նա կը գայ, այնպէս չէ՞։

Եւ Բօղարը օրօրում էր իր պոչը, շեշտակի նայում տիրուհու աչքերին ասես ի նշան համաձայնութեան։ Անցնում էր գարունը, անցնում էր ամառը, էլի վրայ էին հասնում աշնանային ցրտերը, խնձորենին մերկանում էր տերևներից և տխրութեամբ օրօրում իր կատարը ցուրտ հովերի առաջ, Սուսանը նայում էր վշտով և կրկին դառնում իր շանը.

— Բօղար, չ՚եկաւ, չ՚եկաւ բէքաղդը, գարնանը կը գայ, այնպէս չէ՞։

Եւ շունը կրկին օրօրում էր իր պոչը և պաուան սպասում էր յուսով նոր գարնանը, որ խնձորենին ծաղկի, որ թռչունները վերադառնան և նրանց հետ միասին Սաքօն յայտնուի։

Նա սպասում էր և Սաքօի համար կամաց-կամաց պատրաստում էր փափուկ, շատ փափուկ անկողին։ Բուրդը հաւաքել էր տարիների ընթացքում և մասներով մաքրում էր ամեն օր, ապա կարում և անկողինը դնում էր ծալքը, յետոյ նրան թւում էր, թէ հարկաւոր է քանդել, նորէն փափկացնել, ցած էր բերում և վերսկսում տասն անգամ կրկնած աշխատանքը։

Դրա հետ միաժամանակ նա կատարում էր իր ուխտը սրբութեամբ. ամեն երեկոյ գնում էր եկեղեցի, վեց մոմը դողդոջուն ձեռքով կպցնում Տիրամօր պատկերի սևացած, այրուած շրջանակի վրայ, ձեռքերը տարածում էր դէպի վեր, դէպի երկինք և աղօթում, աղօթում։ Եւ ամեն երեկոյ աղօթքից յետոյ, երբ բոլոր ժամաւորները դուրս էին գնում, նա դառնում էր տէրտէրին.

— Սաքօն կը գա՞յ, այնպէս չէ՞, տէրտէր.

— Հա՛, որդի, ի հարկէ կը գայ, քո այնքան արցունքը, աղօթքները...

— Բերանդ տաճար է, տէրտէր ջան, տաճար, բերնիդ մեռնեմ, ասա՛, ասա՛, այսպէս ասա՛, դու որ ասում ես, Տիրամէրն էլ ժպտում է, յոյսը սրտիս մէջ վարդի պէս բացւում է։

— Հապա, որդի, Տիրամէրը ո՞ւմ խնդիրն է

թողել անկատար, երկնքի դռները Նրա բարեխօսութեան առաջ միշտ բաց են։

Եւ Սուսանը յուսով ու հանդստացած տուն էր վերադառնում, ուր Նրան սպասում էր Բողարը, որ կաղկանձելով փաթաթւում էր տիրուհու ոտներին։ Սուսանը, հաւատացած էր, որ որդին կը գայ, անպատճառ կը գայ, ինչպէս կարող էր Տիրամայրը խաբել Նրան, նա այնպէս ժպտով, այնպէս քաղցր է նայում վերից, երբ Սուսանը մոմերը վառում է և աղօթել սկսում։ Ի՞նչպէս կարող է նա չը լսել մի մօր աղաչանք, որ այնքան տառապել է, այնպէս տանջուել, այնքան լացել, մրմնջացել։ Ինչո՞ւ պէտք է Տիրամէրը այնքան ցաւեր միայն Նրան բաժին տայ. մէկ էլ ինչ դժուար է Նրա համար կատարել մի մօր այսքան աղաչանքը. որ նա կամենայ, որ նա մի քաղցր աչք ձգի, բաւական է, մնացածը հեշտ է, Սուսանի որդին ինքն իրան կը գայ ողջ և առողջ։

Եւ ամիսներ ու տարիներ էին անցնում Սուսանի գլխով, որդին չը կար ու չը կար, բայց նա չէր յուսահատւում, Տիրամէրը ժըպտում էր և նա հաւատացած էր, որ Սաքօն կը գայ։

— Տիրամօր փէշիցն եմ բռնել, ասում էր նա յաճախ իր հարևաններին, Տիրամօր փէ-

շի՞ց… չորս տարի է, նա ինձ ամեն օր ժըպտում է… Նա ինձ խոստանում է… Տիրամօր ժպի՞տը…

Հարևանները լսում էին և խորհրդաւոր ձևով գլուխներն օրորում կրկնելով՝

— Խե՞ղճ կին, խե՞ղճ կին:

Սուսանը սպասում էր… Նա յաճախ երևակայում էր այն օրը, այն վայրկեանը, երբ գաւակը կը գայ… Նախ բակի դուռը ճռռում է բարձր, յետոյ Թրը՞խկ, ծածկւում է… շունը, այս խելօք Բողարը, վազում է կատաղած, բայց յանկարծ ձայնը կտրում է, շներն ախր չեն մոռանում տէրերին՝ այնպէս չէ՞, Բողար, դու խօմ չե՞ս մոռացել Սաքօիս, դառնում էր նա շանը. կենդանին նայում էր խելացի աչքերով և կարծես ուզում էր ասել, հա, ի հարկէ չեմ մոռացել: Երևակայական պատկերը շարունակւում էր, շունը լռում է, Թաւալւում է գետնին, փաթաթւում է նրա ոտներին, կաղկանձում ուրախութիւնից: Ինքը՝ Սուսանը, այդ ժամանակ նստած է սրահում, դէ ծեր է, աչքերը լաւ չեն տեսնում, համ էլ որդին փոխուել է, քանի՞ տարի է… Նայում է և չի ճանաչում. ահա նա մօտենում է, մօր ոտները դողդողում են, փորձում է վերկենալ, բայց չի կարողանում, բարձրանում է՝ ընկնում, վեր է կենում, դարձեալ ընկնում, ա-

ռաչ է ձգւում բոլոր ուժով, ոյժ է գործ դը-նում և ձեռքերը տարածած փաթաթւում է նրա պարանոցով.

— Ա՜խ քոռանամ ես... դու ես, Սարօ ջան... դու ես... դէ հիմա թողիր ինձ, եկա՛ր... Ե՞րբ եկար... ախր ես մեղք եմ... Տիրամէրն ասաց կը գաս, և եկար, դէ հիմա թողիր ինձ... և արցունքները թափւում են և Սու-սանը երջանիկ է...

Օրական մի քանի անգամ այս սփոփիչ պատկերը գալիս է, անցնում նրա աչքի ա-ռաջից. նա ինքն իրան տեսնում է գրկախառ-նուած որդու հետ, լալիս է և արցունքները զովացուցիչ են։

Եւ ի՜նչ լաւ է, լաւ է այդ բոլորը...

Մի ժամանակ նրա համար երդումներից գերագոյնը իր որդու արևն էր, որդու գլուխն էր. վաղուց է, որ նա այդ թողել է, այդ ա-րևը այժմ շատ է հեռու, շատ է թանկ, որ-պէս զի մայրը յանձն առնի հեշտութեամբ «բերան բերել» ամեն անգամ. այժմ նա երդ-ւում է որդու գալուստով.

— Որդուս գալուստը վկայ... և նա արտա-սանում այդ երեք բառը այնպիսի շեշտով, այնպիսի հաւատով. այդ երդումը նրա սրբու-թիւն սրբոցն է, նրա կեանքի սիւնն է, նրա-նով է ապրում, շնչում, հաւատում. նայում է

դռանը և սպասում այն Թրխկոցին, որ նուի-րական գալուստը պիտի աւետէ։

Տարիներն անցնում են տարիների յետեւից, խնձորենին ծաղկում է ու մերկանում, տարափոխիկ Թռչունները գնում են ու գալիս, Սաքօն չը կայ, բայց Սուսանը շարունակում է աղօթել, շարունակում է հաւատալ ու երգուել.

— Որդուս գալուստը վկա՜յ...

Հարեւանները լսում են, գլուխներն օրօրում։

— Խե՜ղճ կին, խե՜ղճ կին։

Եւ Տիրամէրը ժամում ժպտում է, յուսատու, պայծառ ժպտով. Սուսանն իրաւունք ունի կրկնել՝

— Որդուս գալուստը վկա՜յ...

## III.

Այն գիշե՜րը... ա՜խ այս աշնանային գիշերները ինչո՞ւ իրանց խաւար ծալքերում բերում են միշտ այնքան սեւ, այնպէս անորոշ, խեղդող զգացմունք։ Դրսից լսում է մանրամաղ անձրեւի կրկտոցը, և կտուրներից կաթկաթում է ջուրը անվերջ, յուսահատեցուցիչ միակերպութեամբ՝ ճլը՜փ, ճլը՜փ, ճլը՜փ... դրսում, մութ փողոցներում անց ու դարձը վաղուց դադարել է. այդպիսի չար ժամին ո՞ր ադամորդին դուրսը կը մնայ։

Սուսանն անքուն է դեռ. Նա նստած է և մտածում է իր Սաքոի մասին. Ո՞ւր է նա այժմ, ո՞ր չոլում, ո՞ր ձորում, ո՞ր այրի մէջ, կամ ժայռի տակ կծկուած: Սարերում այժմ ինչպէս ցուրտ է. նա էլ երևի թրջուած է, կրակ չունի, ի՜նչպէս վառի, նրանք կրակ չեն անում, այն թափառականները, որ վառեն, լաւ չէ, ասում են... հիմա ի՜նչպէս մրսում է իր Սաքոն, այսպիսի՜ գիշեր...

— Օ՜, քոռանամ ես, որդի, հոգիս դուրս գայ քեզ համար. ո՞վ սուրբ Տիրամէր, քե՛զ եմ ապաւինել, դու բարեխօս եղիր:

— Ո՞վ գիտէ, գուցէ Սաքոն սարերում չէ, շարունակում է մտածել Սուսանը, գուցէ հէնց գալիս է, չար գիշեր է, բայց նա կարող է գալ, տղամարդ է, այն էլ սարերի տղամարդ, որ ուզի, կը գայ:

Անցեալ օրը ինքը թափառական գնչուին ֆալ բացել տուեց, նա ասաց. «Սարերին թառող արծիւը այս օրերս ցած կը սլանայ»:

— Յետո՞յ:

— Յետո՞յ... գնչուն նայեց իր եղունգին, մնաց մտածկոտ, կմկմաց, յետո՞յ... շարունակեց նա, յետոյ նորէն վեր կը բարձրանայ:

Վերջին խօսքերը լաւ չէին, մտածում է Սուսանը. «Սարերում թառող արծիւը ցած կը սլանայ», այդ լաւ է, «յետոյ վեր կը բարձ-

բանայ», ի՞նչ կը լինէր, որ անիծուածը վերջին խօսքերը չ'ասէր. ուրեմն Սաքօն կը գայ, էլի կ'երթայ, բացատրում էր Սուսանը։

— Հա, հա, արի, արծիւս, արի՛, Թառլանս, ցած արի մէկ տեսնեմ, որ ողջ, առողջ ես, մէկ համբուրեմ սիրուն ճակատդ, մէկ երեսս երեսիդ քսեմ, մէկ գլուխդ կրծքիս սղմեմ, էս քոռացած աչքերովս մէկ կուշտ կուշտ նայեմ քե՛զ, ու էլի գնա, Թո՛ղ Տիրամէրը քեզ պահի, որդի, Թէկուզ սարերի վրայ, ձորերի մէջ. դէ որ գնում ես, ես սեւաւորս ի՞նչ կարող եմ անել, դու խօ արծիւ ես, գնչուն ասաց, արծիւ բալա։

Դրսում շարունակւում է քար լռութիւնը. շներն էլ չեն հաչում, նրանք անձրեւի տակ տզկուած՝ քաշուել են զանազան ծակ ու ծուկ տեղ, ոտ ու գլուխ իրար խառնած, կծիկ դարձած՝ մրափում են այս դէզի տակ, այն դռան առաջ։ Եւ անձրեւը շարունակւում է մաղուել, և ջրերի ձայնը լսւում է միակերպ, անվերջ՝ ճլը՜փ, ճլը՜փ, ճլը՜փ... Զար, վատ գիշեր է, բայց Սուսանն էլի սպասում է իր որդուն, գնչուն ասաց՝ «արծիւը ցած կը սլանայ, էլի վեր կը բարձրանայ»...

— Թող ցած սլանայ և էլի վեր բարձրանայ, գոնէ տեսնեմ, Թէ ազատ է ցաւից, չուից, գոնէ...

— Թը՜րխկ, Թը՜րխկ, Թը՜րխկ...

Բակի դուռն են թակում, Բօղարը հափաց և նետուեց դէպի այն կողմը:

— Թը՜րխկ, Թը՜րխկ...

Սուսանը ցնցուեց ու դողաց բոլոր մարմնով, բայց ինքն էլ չիմանալով ինչու, մի վայրկեան մեխուած մնաց իր տեղում անշարժ և ամբողջապէս լսողութիւն դարձած, բերանաբաց, շնչակտուր. նա լսում էր, թէ ինչպէս շունը կատաղաբար չանգռում է դուռը և ինչպէս դրսից խփում են.

— Թը՜րխկ, Թը՜րխկ...

Այս անգամ նա վեր թռաւ տեղից, երերալով վազեց տան դուռը բանալու, այդ սովորական գործն այժմ նրան չի յաջողւում, մի բան է պատահել փակին և սողնակը յետ չի գնում. նա քաշքշում է, թափ է տալիս, ի զուր, իսկ շունը դրսում հաչում է կատաղաբար և դուռը թակում են դրսից.

— Թը՜րխկ, Թը՜րխկ...

Վերջապէս նա դուռը բացեց և դուրս եկաւ խրճիթից, նա բակումն է, անձրևը թափւում է գլխին, բայց նա դողդողալով, հևալով, ցեխերի միջից երերալով, տնքալով վազում է դէպի բակի դուռը. սաստիկ շտապելուց նրա ոտները խառնւում են զգեստի ծալքերին և երեսի վրայ ընկնում է ցեխերի մէջ. Թըր-

չում է իսպառ, այդ էլ նրա փոյթը չէ, նա վեր է կենում և դարձեալ վազում. ահա և բակի դուռը։

— Սուս, սուս, Բօղար. նա՛ է, նա՛ է, լկուես դու, սո՜ւս, թող որ դուռը բանամ։ Եւ դարձեալ դուռը չի բացւում, ձեռները դողում են, սիրտը թռթռում է՝ ասես կրծքից դուրս փախչելու համար, վերջապէս ճռճռալով դուռը բացուեց, այժմ խաւարի մէջ նրա առաջ կանգնած է մի մութ մարդկային ստուեր, հազիւ հազ նկատելի։

— Ո՞վ է... ո՞վ ես դու...

— Ես... ես Աստուծու մարդ եմ... անվրնաս ու անպէտք. դողում եմ ցրտից, թըրջուած եմ, հեռուից եմ գալիս... ուշացայ, անձրևի տակ մնացի, մութը վրայ հասաւ սարերում, նոր հասայ, ես անպէտք մարդ եմ. Աստծու արարած... Տէ՛ս, ես դողում եմ, մի տեղ, մի կրակ, մի ճար, Տիրամօր սիրուն...

— Տիրամօր սիրուն, կրկնեց Սուսանը մեքենայաբար, մի վայրկեան լռեց, յուսահատ զայրոյթով կրծոտեց շրթունքները մրմնջալով.

— Նա չի՜, նա չի՜, օ՜, անողորմ մարդ։

— Չար գիշեր է, շարունակեց անծանօթը, խեղճին ո՜վ տեղ կը տայ, քանի՜ դուռ եմ թակել, բացող չը կայ, փախենում են, ես

ոնպէտք մարդ եմ, էլի վախենում են, դէ ես
էլ Աստծու ստեղծածն եմ։

— Աստծու ստեղծածը... հա, ադամորդի-
ներն Աստըծու ստեղծածներն են, ասաց Սու-
սանը, բայց մտածում էր ուրիշ բան և քիչ
մնաց ասէր՝ անողորմ, անաստուած մարդ,
ու անպէտք ես, բայց ոչ անվնաս, տէ՛ս, թէ
ինձ ինչքան վնաս տուիր, սրտիս թելը կըտ-
րուեց, ոսկերս դողում են, ես թուլանում, ես
մեռնում եմ... ո՞ւմ էի սպասում, ով դուրս
կաւ. մրսո՞ւմ ես, ջհանդամը թէ մրսում ես.
թրջուա՞ծ ես, էն լա՛ւ է որ թրջուած ես. քո
տեղն է, դու ինձ տանջեցիր, սարերում մէկը
այ, քեզանից լաւ է, նա էլ է թրջուած, նա
լ է մրսում և նա էս չար ժամին ո՛չ ոքի
ուար չի թակի։ Սուսանը մտածում էր այս
ոլորը, ուզում էր ասել բարձրաձայն, ճչալով,
ւզում էր դուռն էլ շրխկալով ծածկել ճամ-
որդի երեսին, թողնել, որ նա դողայ դրսում,
այց չը կարողացաւ, մտածածը չասուեց, ծը-
ոտները փակուեցին, մի առժամանակ մնաց
ուռ։

— Ղարիբի տէր եմ, դու էլ ղարիբ ես,
երս արի, ասաց նա վերջապէս։

— Տիրամէրը հասնի ղարիբին։

— Հա՛, Տիրամէրը հասնի ղարիբին. սուս,
օղար, սուս, մի գայրացիր, ի՞նչ անենք, Աս-

ածու ստեղծածն է, խեղճ է, անճար է. Տի-
րամէր, բոլոր անճարներին, բոլոր տառապեալ-
ներին հասիր, յետոյ Նրան, մրմնջում էր պա-
ռաւը ցեխերի միջից դանդաղութեամբ քայ-
լելով և օտարականը հետևում էր Նրան։

Ներս մտան. ձիթէ ճրագը պլպլում էր
պառաւը դարձաւ, նայեց օտարականին։ Ծեր
մարդ էր, սպիտակ մազերով ու միրուքով
խղճուկ զգեստները ողջ թրջուած՝ ծլանքներից
ջուրը կաթկաթում էր։ Նա դողում էր ցրտից
ամբողջ մարմնով։ Նրա մի ուսից կախուած
էր մի պարկ, կիսով չափ լի հացով, իսկ միւ-
ուսից մի երկար բան, որ սայլի էր նմանում
Սուսանը նայում էր ուշադրութեամբ.

— Աշո՞ւղ ես, հարցրեց նա։

— Չէ, մէրիկ, աշուղ չեմ, այլ գլրար, ե
թափառում եմ գիւղից գիւղ, դռնից դուռ
գզում եմ բուրդ ու բամբակ, ով տալիս է
այս էլ աշուղութիւն է, մէրիկ, տես ես զար
կում եմ այս լարին, նա ցոյց տուեց իր գոր
ծիքը. և նրա հաստ լարը լաց է լինում ի
հարուածների տակ, և լալով բուրդ է գզու
այդ լացի գնով, սև օրով ես ապրում եմ. Ի՞
անեմ, մէրիկ, չիւանները արնակոլոլ եղա
մեր վերան աշխարհում, ես եմ մնացել, ծե
օրերիս, սև օրերիս դռնէ դուռ թափառակա

Անպէտք եմ, մէրիկ, անպէտք, Աստուած հոգիս էլ չի առնում, որ ազատուեմ։

— Սուս, սուս, ողորմելի, Աստծու դէմ մի խօսիր. Նրա ստեղծած արարածների մէջ անպէտքը չը կայ. երբ նա կամեցել է քեզ աշխարհ ձգել, լուռ, պապանձուիր ու քաշիր ճակատագիրդ։ Դէ, հան այդ պարկդ, դէն դիր մէջքիդ գործիքները, լարն ու աղեղը, մօտեցիր Թոնրին, տաքացիր, շորերդ չորացրու։ Անճարին մի ճար միշտ կը լինի, Տիրամէրը վկայ, Թող նա հասնի բոլոր ղարիբ-ղուրբաթներին, յետոյ նրան, նրան, էն սարերի արծւին.

«Ե՞րբ կը գա՜յ...» վերջին խօսքերը նա արտասանեց ինքն իրան։

— Շէն մնաս, մէ՛րիկ, շէն մնաս, Թող Աստուած քո սրտի բոլոր ուխտը կատարի, օջաղիդ՝ կրակ, տաշտիդ հացն անպակաս անի։

Օտարականը վար դրեց իր պարկը, ցած բերեց ուսից գործիքները, մօտեցաւ Թոնրին, կծկուեց ու մնջեց։ Դրսում անձրեւը շարունակւում էր, ջուրը կաթկթում էր միակերպ անվերջ ծլրփոցով, խաւար էր ու ցուրտ. Սուսանն անքուն՝ դեռ երկար ժամանակ շարունակում էր մտածել նրա մասին, որ սարերում, այրերում մրսում, դողում է այս չար գիշերին։

— Դու հասնես, Տիրամէր, դու բարեխօս լինիս, մրմնջում էր նա, և սիրտը ճմլւում էր ցաւից։

IV.

Լուսացաւ. անձրևը դադարեց. բացուեց աշնանային մի ցուրտ ու պայծառ օր։ Մարգիկ դուրս սողացին բնակարաններից։ Սուսանի հիւրը նոյնպէս պատրաստւում էր դուրս ընկնել իր գիշերային ապաստարանից։ Նա դանդաղութեամբ վերցրեց իր պարկը, կախեց ուսից, առաւ նաև բուրդ գզելու գործիքը և դարձաւ Սուսանին.

— Շէն մնաս, մէրիկ, օջաղդ վառ մնայ։

— Գնո՞ւմ ես։

— Հա, գնում եմ ցնցոտիներս ու անպէտք գլուխս երկրէ երկիր, գիւղէ գիւղ, դռնէ դուռ քաշ տալու, մինչև մի տեղ շանսատակ լինեմ ու մաշուած, տրորուած ոսկորներս հանգիստ առնեն։ Եւ մինչ ստարականը խօսում էր, պառաւը մտածում էր, տեսնես սա չի՞ տեսել նրան, էն սարերի արծուին։

— Լսի՛ր, դու շա՞տ ես ման եկել։

— Շա՜տ, խիստ շատ։

— Սարերում, ձորերում։

— Սարերում, ձորերում։

Պառաւը գլուխը քաշ ձգեց ու լռեց։

— Ինչո՞ւ ես հարցնում, մէրիկ:

— Է՜հ, հէնց էնպէս, տեսնում եմ, որ շատ տանջուած ես:

— Հա՛, մէրիկ, տանջանքը իմ եղբայրն է, մենք միասին ծնուեցինք, այժմ էլ անբաժան ենք:

— Տանջանքը քո եղբայրն է, էհ՜. խեղճ մարդ, ես էլ նրա պէս մի քոյր ունեմ, ասում էր պառաւն ինքն իրան: Նա մտածկոտ էր, կարծես և՛ ուզում էր մի բան հարցնել և՛ վախենում էր պատասխանից: Օտարականը երեւի այդ նկատում էր և սպասում:

— Լսի՛ր, դու սարերում արծիւ տեսե՞լ ես, հարցրեց Սուսանը: Նրան թուաց, որ այս օտարականն էլ պիտի հասկանայ, որ արծիւը նա է, Սաքօն է: Տիրեց լռութիւն, նրանք նայում էին իրար ուշադրութեամբ, օտարականը չը հասկացաւ տարօրինակ հարցը. Սուսանն այդ նկատեց և կարծես արդարանալու համար շարունակեց.

— Գնչուն ասաց՝ «Սարերի արծիւը ցած կը սլանայ, էլի վեր կը բարձրանայ», սպասեցի՝ ցած չը սլացաւ, ինչո՞ւ:

Օտարականն այժմ նայում էր աւելի զարմացած, հարցն աւելի քան օտարոտի էր:

— Բան չեմ հասկանում, մէրիկ, ասաց նա, ես արծիւ չեմ տեսել. սև օր շատ եմ տեսել,

խեղճ ու կրակ գզրար եմ, քո չարկի տակ աղ ու հաց կերայ, թէ բուրդ ունես, բեր գզեմ, իմ ցաւը հոգամ։

Պառաւի աչքերը փայլեցին. Նրա գլխով կարծես մի լուսաւոր միտք անցաւ. ո՞րդու անկողի՞նը, այդ ի՞նչպէս է, որ նա մոռացել է։

— Բուրդ, հա՛, բուրդ ունեմ, ի՞նչ լաւ ասացիր, ողորմի հօրդ, գզելու բուրդ, որ փափուկ լինի, էնպէս չէ՞, որ գզեն, բուրդը փափուկ է լինում, անկողինն էլ լաւ. մատներովս եմ քրքրել, բայց այդ քիչ է։

Եւ նա ծալքից ցած բերեց որդու անկողինը, քանդեց, բուրդը դուրս թափեց գզրարի առաջ.

— Ա՛յ, գզի՛ր, զարկ, լաւ զարկ լարիդ. Թող փափկի։

Օտարականը գործիքը ցած բերեց ուսից, հացի պարկն էլ մի կողմ դրեց, ծունկ չոքեց և սկսեց զարկել իր գործիքի հաստ լարին։ Բուրդը գզւում էր ամպերի պէս քուլա քուլա բարձրանում, իսկ լարն ասես լալիս, հեծում էր նրա հարուածների տակ։

— Լա՛ց, լաց ընկեր, մռմռում էր նա, ցաւով ենք ծնւում, լացով վաստակում, արիւնով գերեզման մտնում. լա՛ց, լաց իմ խե՛ղճ ընկեր. մեր աշխարհում ո՞վ չի լալիս, սար ու քարն

էլ է տնքում։ Եւ լարը հեծեծում էր և բուրդը գգւում բարդ, բարդ բարձրանում։

Սուսանը լռութեամբ և հիացմունքով նայում էր։ Գործը շարունակւում էր, գզրարն այս անգամ և՛ զարկում էր և՛ երգում, կարծես իր լարի հետ մէկտեղ հեծեծում էր ու լալիս. նա ասում էր.

«Գարահիսար լերան կրծքին նա էլ ընկաւ
վիրաւոր,
Կուծքը պատռած, սիրտը խոցուած չար
թշնամու գնդակով.
Ժէռոտ լերան լերկ կատարից վար սլացիր
սև արծիւ,
Թևերդ բաց, լայն թևերդ ու չիւանին
հով արա։
Խոցուած սրտից մուգ արիւնը կաթիլ կաթիլ կը ծորայ,
Ա՜խ չիւանի կեանքն է հոսում ցաւոտ կըրծքի լայն վէրքից.
Ժէռոտ լերան լերկ կատարից վար սլացիր
սև արծիւ,
Թևերդ բաց, լայն թևերդ ու չիւանին
հով արա»։

Սուսանը լսում էր սկզբում ուշադրութեամբ, բայց կամաց-կամաց նա կարծես մի մեծ սարսափի առաջ աչքերը չռեց ու գունատուեց.

— Այդ ի՞նչ ես երգում... այ մարդ.

Օտարականը գլուխը բարձրացրեց, գործը թողեց, նայում էր, զարմացած այս կնոջ յուզմունքի վրայ և կարծես խօսք չէր գտնում պատասխանելու:

— Սո՛ւս, սուս, անողորմ, շարունակեց Սուսանը, թող այդ սև արծուի երգը, ես սեր չեմ ուզում, գնչուն այդպէս չ'ասաց, վեր կաց շուտով հեռացիր, Աստուած քեզ հետ, երգիր քո սև արծիւն ուրիշ տեղ, ես վախենում եմ քեզանից, վախենում եմ քո երգից. ես դողում եմ քո շրթունքներից, նրանց շարժումներից, փակիր բերանդ, աղաչում եմ, քեզանից կախուած չէ՞, պապանձուիր, թող սև արծիւը սարի կատարին մնայ... Ջիւա՜ն... արիւնաքա՜մ... Տիրամէ՜ր, Տիրամէ՜ր, ես վախենում եմ այս ողորմելուց, դու ի՞նչ կ'ասես, եաման Տիրամէր... գնա, գնա:

Օտարականը շփոթուած՝ շարունակում էր նայել.

— Ինչո՞ւ, մէրիկ, ի՞նչ արեցի, չէ՞ դու ասացիր, որ բուրդ գզեմ, ի՞նչ վատ բան ասացի, մեռնում եմ ինձ համար: Սուսանը լսել չէր ուզում:

— Գնա՛, գնա՛, գնա՛, ի սէր Աստուծոյ գնա՛, դու բէխէր մարդ ես, քո բերանից մահ է թափւում, ես դողում եմ, գնա՜...

Օտարականն այս անգամ վերցրեց գործիքն ու պարկը, ձգեց ուսերին և վճռական քայլուածքով դուրս եկաւ խրճիթից։ Նա արդէն բակումն էր, արդէն մօտ էր դուռը բանալու և փողոց դուրս գալու, երբ Սուսանը վազէ վազ նրան հասաւ, կախուեց փէշից, աչքերը չռած, դողդողալով ու շնչակտուր ճչաց։

— Կա՛ց, կա՛ց, չեմ կարող, չեմ կարող, ասա, աղաչում եմ, ասա՛ ինձ, ո՞վ է այն լեռնալանջի վիրաւորը.

— Տէր Աստուած, այդ հին բան է, շատ հին. ամենքը գիտեն, հին երգ է, ամենքն են երգում։

— Հի՞ն է... Սուսանը կարծես մի փոքր հանգստացաւ, որ «բանը» այնպէս հին է։

— Հին է, մէրիկ, քանի՜ տարի է ինչ երգում են ամեն տեղ։

— Ո՞վ է, ո՞վ է այն ջիւան վիրաւորը։

— Չը գիտե՞ս, արար-աշխարհը գիտէ Գարահիսարի բանը, եաման բան էր. վէրան մնայ Գարահիսարը, քանի՜սն էին...

— Ո՞վ է ջիւանը քեզ ասում եմ, անողո՜րմ...

— Մի՞թէ չը գիտես, Սաքօն է։

Սաքօ՜ն... ուո՜ւհ, անաստուած, նզովք քեզ. այդ ի՞նչ արիր, նզովք քո շրթունքներին, քո եկած ճանապարհին, քո ծնողին... սուտ է, սուտ է, Տիրամէրը կայ, աղօթքս, մօմերը,

սուտ ես խօսում, չար սատանան ես դու, դուրս, դուրս, դուրս... բայց չէ, կա՛ց, կա՛ց, աղաչում եմ, սուտ էր, այնպէս չէ՞, դու սուտ ասացիր... լո՜ւռ է, լո՜ւռ է, անողորմը, դէ դուրս, դուրս, բէխէր ոտքդ կտրուէր, դու եկել ես ինձ տանջելու, դեւերի բաժին դառնայ քո հոգին, դու սուտ ես ասում, դո՜ւրս...

Օտարականը կարծելով՝ որ կինը գժուեց, գլուխը կորցրած դուրս փախաւ փողոց առանց յետ նայելու, իսկ Սուսանը շարունակում էր ճչալ և երկինք աղաղակել։ Երբ նրա ձայնի վրայ հարևանները չորս կողմից հաւաքուեցին, Սուսանը դեռ վազվզում էր բակում խելագարի պէս, կուրծքը բաց արած, չորացած ստինքները բռնած ցոյց էր տալիս երկնքին.

— Նայիր վերից կապուտաւոր Տէր, նայիր էս չորացած աղբիւրներին, քանիսին կերակրեցի սրանցով, քանիսին իմ միս ու արիւնը տուի, մեծացրի, էլ չը կան, չը կան, ոչ մէկը չը կայ... Մէկ Սաքօն է, Սաքօ՜ն, էն սարերի արծիւը, էն էլ... ի՞նչ ասաց անիրաւը... ճի՞շտ է, դու չը տեսա՞ր... Սաքօ՜ն, սարը մթնե՞ց, արծիւը սև կապեց, ճի՞շտ է... բա դու ի՞նչ ասիր, ի՞նչ արիր, մայր եմ, չէ մայր էի, էլ մայր չեմ, ութը ծնո՜ւնդ, ութը երկունք, հազար ցաւ, հազար խոց սևաւոր սրտիս...

ուռո՜ւհ... Եւ նա չարդուած ընկաւ խնձորենու տակ, ծեր գլուխը կախուեց կրծքին, արցունքը թափուեց, թափուեց, իսկ վերևից ծառի վերջին, դեղնած տերևները մէկիկ մէկիկ մաղւում էին նրա գլխին և ճիւղերը մերկ ու դողդոջուն օրօրւում էին աշնանային սառն քամու առաջ:

V

Սուսանը հիւանդ է, Սուսանը մեռնում է...

— Հին բան է որդի, հին բան, ասում էր նրա գլխավերևը նստած ծերունի քահանան, որ եկել էր հիւանդին վերջին մխիթարութիւնն ասելու, վերջին հաղորդութիւնը տալու:

— Հի՞ն բան է, կրկնում էր մեռնողը, Տիրամէրն էլ գիտէ՞ր, տէրտէր ջան:

— Աշխարհ գիտէր, որդի, քեզանից բացի ամէնքը գիտէին:

— Դո՞ւ էլ գիտէիր:

— Դէ որդի, թէ քեզ էլ ասէինք ի՞նչ օգուտ, ցաւդ դրանով չէր թեթևանայ. այնքան մայրեր լաց եղան, այնքան սրտեր փրշրուեցին, այնքան գլուխներ սև կապեցին, է՜հ, ի՞նչ անենք, մեր ճակատագիրն է:

— Մե՛ր ճակատագիրն է, որ էսպէս արունարցունք քամենք, մղկտա՜նք... Թող առաջուց ասէիր ինձ, թէ մեր ճակատագիրն է. քանի՜

տարի է, մաշեցի ժամի դուռը գնալ գալով, մատներս տրորեցի մոմ վառելով, Տիրամէրը ժպտում էր, ժպտում, իսկ դու հիմա ես ասում մեր ճակատագիրն է։

— Դէ ի՞նչ ասէի, որդի, աղօթում էիր, դրանից ի՞նչ վնաս, աղօթքը սուրբ բան է, հաւատում էիր, հաւատը քաղցր բան է, ես ի՞նչպէս քո և Աստծու մէջ ընկնէի. երևի Նա ուզում էր, որ դու չ՚իմանաս «էն բանը»։

— Տիրամէրը խաբե՜ց, նա խոմ կարո՞ղ էր երազով ինձ յայտնել, կը գար երազիս ու կ՚ասէր՝ «Սև կապիր Սուսան, սև կապիր, արեդ խաւարեց, օջաղդ մարե՜ց», բայց նա այդ չ՚ասաց, նա խաբե՜ց, ժպտաց ու խաբե՜ց։

— Օ՜, մի՛ ասա այդ, որդի, լսիր ինձ, ամենքս էլ մահկանացու ենք, հանդերձեալ կեանք կայ, հաշիւ ու համար ունենք տալու, դու էլ, դէ տարիքդ անցած է, ճաշակուիր որդի, ասա՝ մեղայ Աստուծոյ։

Պառաւը գլուխը տարուբերեց որպէս մերժման անհամաձայնութեան նշան.

— Չէ՛, չէ՛, Տիրամէրը խաբե՜ց, ես խռով եմ ժամից, պատարագից, Տիրամօրից, երկընքից, թող այսուհետև դժոխքի բոցերին բաժին դառնամ։

— Մի՛ ասիր այդ, որդի, մի՛ ասիր, հոգուդ մեղք մի անիր։

— Ես հոգի չունեմ, իմ հոգին մոխիր է դարձած դարդի կրակից:

Տասներորդ անգամն էր քահանան կրկնում իր առաջարկութիւնը, տասներորդ անգամը նա ձեռքի հաղորդութիւնը մօտեցնում էր նրա շրթունքներին և Սուսանը միշտ մերժում էր, նա խռով էր Աստծուց, Տիրամորից... արդէն ամիսներ էր, որ նա էլ եկեղեցի չէր գնացել. սարսափելի դոյժից յետոյ նա մի անգամ, մի վերջին անգամ երերալով գնաց, կանգնեց Տիրամոր պատկերի առաջ, առանց մոմի, առանց աղօթքի և բոլոր ձայնով ճչաց.

— Դու ինձ խաբեցիր, Տիրամէ՞ր:

Ժամաւորները յետ նայեցին, ամենքը կարծեցին թէ նա խելագար է: Սուսանն առանց ուշք դարձնելու իր շուրջը, դուրս եկաւ ժամից, գնաց, փակուեց իր տանը, մենակ ու սգաւոր:

Զատկին քահանան եկաւ տունն օրհնելու, մխիթարութիւն խօսելու, մերժեց. այժմ էլ հիւանդ ընկած անկողնում, նա մեռնում է և չի ուզում հաղորդուել: Հարևանուհիները սոսկում են այդ անաստուածութիւնից, նրանք հաւաքուած՝ համոզում, խնդրում, աղաչում են, ի զո՜ւր, Սուսանն անդրդուելի է, ծնօտները փակ և դէմքը վճռական:

— Չէ, չեմ ուզում, գիտմամբ չեմ ուզում,

որ հոգիս սատանայի բաժին դառնայ․ ես կը կանգնեմ Աստծու դահի առաջ և Տիրամօրից գանգատ կ'անեմ և յետոյ այնպիսի բաներ կ'ասեմ, այնպիսի բանե՞ր։ Ա՛յ էս չորացած ստինքներս ցոյց կը տամ ու կ'ասեմ, ի՞նչ արիր, Տէ՞ր, մեռանք, փոթոթուեցինք վարում․ ճչացինք, աղերսեցինք, ձայներս աստղերին հասաւ և դու մեզ չը հասար․ հիմա տար ինձ կպրի կարասը, ես ի՞նչ, ես մի կտոր բոց եմ, ձգիր ինձ կրակի մէջ, բոցը բոցին ի՞նչ կ'անի․ հա՛, կպրի կարասը, ես այնտեղ կը պլպըլամ, կը վառուեմ ու կ'սպասեմ, որ ինձ նըման սևաւոր բոլոր մայրերը բոց դառած հասնեն ինձ և մենք ամենքս միասին հրդեհ կազմենք, այնպիսի հրդեհ, որպիսին վարումն է, վէրան, սև վաթանում, թող երկինքն էլ վառուի նրա պէս, թող երկինքն էլ մոխիր դառնայ, տար, տար ինձ կպրի կարասը, ես բոց եմ, մի կտոր կրակ։ Ա՛յ այսպէս կ'ասեմ․

— Որդի, աղաչում եմ, ասաց լացակամած քահանան, այդ ի՞նչ ես ասում, տես, էս ծեր տեղովս ես քեզ աղերսում եմ, մի՛ անիր այդ, քեզ համար ես էլ պատասխանատու եմ Աստծու առաջ։

— Պատասխանատո՞ւ ես, դու էլ սաս Տիրամէրը խաբե՞ց․ մայր էր, սիրտ պիտի ունենար, բայց խաբեց․ ինքը երջանիկ է, ինքը